### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8 ՕԳՈՍՏՈՍ . 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении**




## Բովանդակություն

# Содержание



# ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՓՈՐՁՎԱԾ ՄԵԹՈԴ

Հասարակական պրոգրեսի ավանգարդում ընթացող կոմունիստական կուսակցությունը իր շարքերում միավորում է մեր ժողովրդի ամենագործունյա, ամենաակտիվ ուժերը: Կուսակցության անդամները անձնուրացաբար աշխատում են ամեն մի տեղամասում, համառաբար որոնում են առավել վստահելի ու հուսալի միջոցներ՝ լուծելու համար մեր մեծ ու բարդ խնդիրները, չեն հաշտվում քարացածության ու լճացման, աշխատանքի իր դարն ապրած եղանակների հետ: Կուսակցության կյանքի և գործունեության այժմյան էտապում առանձնապես նկատելի է կուսակցական մասսաների ստեղծագործական ակտիվությունն այն պայքարում, որ մղվում է կոմունիստական շինարարության մեջ կուսակցության նախատեսած գլխավոր գծի կենսագործման համար: Իրենց ժողովներում, կուսակցական կոմիտեների նիստերում կոմունիստները հանգամանորեն վերլուծում են կուսակցական ու տնտեսական աշխատանքի վիճակը, նշում են իրական նվաճումները, քննադատության են ենթարկում թերությունները ու զանցառումները, շատ առաջարկություններ են մտցնում արտադրության ռեզերվները լավագույն կերպով օգտագործելու, կուսակցական ղեկավարության ձևերն ու մեթոդները կատարելագործելու ուղղությամբ, համառաբար աշխատում են դրանք պրակտիկայում կենսագործելու համար:

Կուսակցական մասսաների ակտիվությունն աճում է ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների բարերար ազդեցությամբ: Այն մթնոլորտը, որն այժմ առաջացել է կուսակցական միջավայրում՝ կուսակցական որոշումների ազդեցության ներքո, լավ է բնութագրել «Ստրոյինդուստրիա» տրեստի (քաղ. Կեմերովո) կուսկոմի քարտուղար ընկ. Կարյուխինը՝ շրջանային կոնֆերանսում ունեցած իր ելույթում: «XXIII համագումարից հետո,— հայտարարեց նա,— կուսկազմակերպություններում իրադրությունը ուրիշ տեսակ դարձավ: Կոմունիստների հարաբերություններում շիտակությունն ու փոխադարձ պահանջկոտությունը ավելի նկատելի դարձան: Կոմունիստի, նրա գործունեության, նրա կարծիքի նկատմամբ ավելի մեծ ուշադրությունը դրական ազդեցություն ունեցավ կուսակցության անդամների ակտիվության, կուսակցական կազմակերպությունների համախմբվածության ու մարտունակության վրա»:

Համագումարը, ինչպես հայտնի է, ընդգծեց կուսկազմակերպությունների կազմակերպական գործունեությունն է՛լ ավելի բարելավելու, կուսակցական

դեմոկրատիան զարգացնելու, գործարար, սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը ծավալելու անհրաժեշտությունը: ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասվում էր. «Անհրաժեշտ է ավելի մեծ ուշադրություն ու հարգանք ցուցաբերել դեպի կոմունիստների կարծիքն ու առաջարկները, պայմաններ ստեղծել լայն քննադատության ու ինքնաքննադատության համար, որպեսզի կուսկազմակերպությունը կարողանա ժամանակին ուղղել կուսակցության կանոնադրության պահանջներից շեղում թույլ տվող ամեն մի կոմունիստի, թույլ չտա, որ անեն աշխատանքում եղած թերությունները: Քննադատությունը ճնշողներին պետք է ամենախիստ պատասխանատվության ենթարկել»:

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը եղել է և մնում է կուսակցական կյանքի անբաժանելի գիծը: Այն հանդիսանում է կուսակցական աշխատանքի կատարելագործման միջոց, ՍՄԿԿ-ի գաղափարական ու կազմակերպական ամրապնդման, իր կազմակերպության համար և, ամբողջությամբ վերցրած, կուսակցության գործի համար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության բարձրացման բաղկացուցիչ մասը: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը օժանդակում են ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության հստակ կենսագործումը, ուղղակի և անմիջականորեն ազդում են կուսակցական ու պետական կարգապահությունն ամրապնդելու, կուսակցության ու կառավարության դիրեկտիվները կատարելու վրա:

Մեր կուսակցությունը ոչ միայն համախոհների, այլև համատեղ գործողների կուսակցություն է, իսկ գործողների միասնությունը պահանջում է ամուր, գիտակցական կարգապահություն, բոլոր կոմունիստների, որ պոստում էլ գտնվեն նրանք, բարձր ակտիվություն և պատասխանատվություն: Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում ու կոնֆերանսներում սուր քննադատության ենթարկվեցին այն կուսակցական կոմիտեները, բյուրոները, քարտուղարները, սովետական, տնտեսական և մյուս մարմինները, որոնք հաշտվել են թափթփվածության, անկուլտուրականության հետ, պայքար չեն մղում հակահասարակական երևույթների դեմ, տարվում են ամեն տեսակ նիստեր ու խորհրդակցություններ անցկացնելով և, միևնույն ժամանակ, թույլ վերահսկողություն են իրականացնում կոնկրետ մարդկանց գործունեության նկատմամբ, որոնք ինչպես հարկն է չեն կարգավորել կատարման ստուգումը:

Որտեղ էլ որ արված լինի քննադատական դիտողությունը՝ հաշվետու-ընտրական, թե սովորական ժողովում, կուսակցական կոմիտեի բյուրոյում թե պլենումում, անհրաժեշտ է պատշաճ կերպով արձագանքել քննադատությանը: Սխալների ու վրիպումների բացահայտմանը պետք է հետևի դրանց վերացման ուղղությամբ գործնական աշխատանքը: Ճիշտ են վարվում այն կազմակերպությունները, որոնք ամփոփել են հաշվետվությունների ու ընտրությունների ընթացքում արտահայտված բոլոր քննադատական դիտողությունները ու առաջարկությունները և դրանց կատարումը վերցրել են իրենց սիստեմատիկ վերահսկողության տակ: Բելոռուսիայի, Մոլդավիայի և Տաջիկստանի կոմկուսակցությունների կենտկոմներում, կուսակցության Պրիմորյեի երկրկոմում, Բրյանսկի, Կալինինի, Ռոստովի և կուսակցության մի շարք այլ մարզկոմներում, շատ սկզբնական կազմակերպություններում կանոնավորապես անդրադառնում են ժողովներում, կոնֆերանսներում և պլենումներում մասնակցած ընկերների դիտողությունների ու առաջարկությունների կատար-



ման ստուգմանը, որովհետև հասկանում են, որ դիտողություններն ու առաջարկությունները մեծ արժեք են ներկայացնում աշխատանքի կատարելագործման համար: Ժուռնալի այս համարում ինֆորմացիա է հրապարակվում այն մասին, որ մի շարք մարզկոմներում, երկրկոմներում, ազգային հանրապետությունների կենտկոմներում սիստեմատիկ բնույթ է կրում պլենումներում, ակտիվի ժողովներում, խորհրդակցություններում արտահայտվող քննադատական դիտողությունների քննարկումը բյուրոների կամ քարտուղարության նիստերում: Յուրաքանչյուր դիտողության և առաջարկության մասին տեղեկություն է հաղորդվում մարզային, երկրամասային և հանրապետական համապատասխան գերատեսչություններին և կազմակերպություններին, որոնց հանձնարարվում է որոշակի ժամկետում միջոցներ ձեռք առնել դրանց իրագործման ուղղությամբ: Սահմանված ժամկետն անցնելուց հետո գերատեսչություններն ու կազմակերպությունները արդյունքների մասին զեկուցում են կուսակցական կոմիտեին:

Վերջին ժամանակներս շատ կուսակցական կոմիտեներ սկսել են ավելի հաճախ լսել կոմունիստ-ղեկավարների հաշվետվություններն այն մասին, թե ինչպես են նրանք կազմակերպում արտադրության ռեզերվներն օգտագործելու վերաբերյալ ներքևից եկող ցանկությունների, խորհուրդների, առաջարկությունների կենսագործումը, ինչպես են կատարվում պետական պլաններն ու պարտավորությունները: Սա ղեկավար կադրերին կարգապահ է դարձնում, նրանց դաստիարակում է հարգալից վերաբերմունքի ոգով աշխատավոր մասսաների կարծիքի ու հարցումների նկատմամբ: Անհրաժեշտ է այսուհետև ևս օգտագործել քննադատությունն ու ինքնաքննադատությունը որպես կադրերի դաստիարակման, կոլեկտիվի, կուսակցության, հասարակության հանդեպ նրանց պատասխանատվության զգացումը բարձրացնելու փորձված մեթոդի:

Ետհամագումարյան ժամանակաշրջանը բնութագրվում է նրանով, որ կուսակցության մարմինները ավելի ու ավելի են գործում որպես հիրավի կոլեկտիվ մարմիններ: Նկատելիորեն բարձրացել է կոմունիստների դերը իրենց կազմակերպություններում, կուսակցական կոմիտեների անդամների դերը կյանքի առաջադրած հարցերի լուծման գործում, իրենց կազմակերպությունների ամբողջ գործունեության մեջ: Նրանք մասնակցում են գործերի վիճակի ուսումնասիրությանը, առաջարկությունների ու հանձնարարականների մշակմանը, որոշումների կատարման կազմակերպմանը: Որոշ կոմիտեներ, պլենումների քննարկմանը քաղաքական ու տնտեսական աշխատանքի կարևոր հարցեր դնելով, մինչև պլենումը նյութերը նախապես քննարկում են սկզբնական կազմակերպություններում, պարզում կուսակցական լայն մասսաների կարծիքը այդ նյութերի մասին: Այսպիսով, ժողովներում և պլենումներում դրվող զեկուցումները դառնում են ավելի հանգամանալից, պարունակում են աշխատանքի քննադատական վերլուծությունը և դրանով իսկ առաջացնում են կարծիքների աշխույժ փոխանակություն: Կուսակցական կազմակերպությունները, հենվելով կոմունիստների լայն շրջանների փորձի և կարծիքի վրա, հնարավորություն են ստանում բարելավելու իրենց գործունեությունը:

Քննադատությանը ճիշտ արձագանքելը կուսակցական աշխատանքի, կոմունիստների ակտիվության աճի հետագա կատարելագործման պարտադիր պայմանն է: Հնարավորություն տալ կոմունիստին արտահայտվել, ուշադրությամբ լսել նրան՝ շատ կարևոր է: Բայց պակաս կարևոր չէ, որ թերություն-

ները ու դրանց պատճառները ոչ միայն բացահայտվեն, այլև վերացվեն: Միայն այն բանի հետևողական կենսագործումը, ինչը արժեքավոր ու օգտակար է կոմունիստների առաջարկություններում, ընդունակ է նրանց մեջ պահպանել ստեղծագործական ոգին, զարգացնել նրանց նախաձեռնությունը, օգնել ձեռք բերելու հաջողություններ: Այդ մասին կարելի է շատ օրինակներ բերել: Ահա դրանցից մեկը:

Լենինականի տեքստիլ կոմբինատը պետական պլանը կատարել չէր կարողանում, աշխատում էր ոչ շահութաբեր: Շատ արտադրական թերություններ առաջանում էին այն պատճառով, որ կոմբինատի կուսկոմը պատշաճ պահանջկոտություն չէր դրսևորում տնտեսական կադրերի նկատմամբ, չէր խորանում արտադրության մեջ, թույլ էր հենվում արտադրամասերի կուսակցական կազմակերպությունների և կուսակցական խմբերի վրա: Կոմունիստներն իրենց ժողովում այդ բանի համար քննադատեցին կուսկոմին: Նրանց դիտողություններն ու առաջարկությունները կուսկոմը հաշվի առավ: Նա էական կերպով փոխեց իր գործունեության ոճն ու մեթոդները. հրաժարվեց ճանախակի որոշումներ ընդունելուց և իր ուժերն ու բոլոր կոմունիստների ուժերը կենտրոնացրեց առաջընթացին խոչընդոտող նեղ տեղերը գործնականապես վերացնելու վրա: Կուսկոմը ուժեղացրեց վերահսկողությունը տնտեսական գործունեության վրա, սկսեց ավելի մեծ չափով հենվել արտադրամասային կուսկազմակերպությունների ու կուսխմբերի, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների վրա: Թերությունները վերացնելու ուղղությամբ կուսկազմակերպության, ամբողջ կոլեկտիվի համերաշխ աշխատանքի շնորհիվ կոմբինատը դուրս եկավ առաջավոր ձեռնարկությունների շարքը:

Բայց, դժբախտաբար, այլ կարգի օրինակներ էլ կան:Խարկովի մարզային կուսակցական կոնֆերանսում այսպիսի փաստ բերվեց: Շևչենկոյի շրջանում Մարտի 8-ի անվան կոլտնտեսությունը երկար ժամանակ գլխավորում էր ընկ. Սուխոմլինը: Նա կոպիտ կերպով խախտում էր օրինակելի արտելի կանոնադրությունը, շահախնդրական նպատակներով չարաշահում իր պաշտոնեական դիրքը: Դրա համար նա բազմիցս սուր քննադատության էր ենթարկվել կոմունիստների և անկուսակցականների կողմից: Գիտենալով այդ բանը, կուսակցության Շևչենկոյի շրջկոմը այնուամենայնիվ չափից դուրս հանդուրժողաբար էր վերաբերում զանցառու ղեկավարին: Ճիշտ է, վերջին երկու տարում շրջկոմը նրան հինգ անգամ խիստ նկատողություն է արել, իսկ անցյալ տարվա սեպտեմբերին նույնիսկ վտարեց ՍՄԿԿ շարքերից, բայց մեկ ամիս անց նորից վերականգնեց նրան կուսակցության մեջ, հայտարարելով հերթական նկատողությունը: Հասկանալի է, քննադատությանն այդպես արձագանքելը գործերի բարելավմանը չի նպաստում:

Այդ օրինակները մեկ անգամ ևս հաստատում են, որ քննադատությունը կարող է արդյունք տալ միայն այնտեղ, որտեղ հոգ են տանում նրա գործունեության մասին: Կյանքը վկայում է, որ այնտեղ, որտեղ պայքար չեն մղում բացահայտված թերությունները վերացնելու համար, ըստ էության քննադատությունը դառնում է ձևականություն, և այնտեղ կուսակցական աշխատանքի արդյունավետության իսկական բարձրացում չկա: Կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կազմակերպությունները պարտավոր են գործուն միջոցներ ձեռնարկել՝ վերացնելու հայտնաբերված թերություններն ու զանցառումները:



Գործարար կուսակցական քննադատության համար որպես ամբիոն են հանդիսանում, առաջին հերթին, կուսակցական ժողովներն ու ընտրովի կուսակցական մարմինների նիստերը: Այստեղ կոմունիստները փոխանակում են իրենց նկատառումները արտադրական ու հասարակական կյանքի զանազան հարցերի վերաբերյալ, առանձին աշխատողներին մատնանշում են նրանց սխալները և հենց այստեղ էլ միջոցներ են նախատեսվում գործերը բարելավելու համար: Հարկավոր է ասել, որ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ժողովների ու պլենումների դերը նկատելիորեն աճել է կուսկազմակերպությունների կյանքում: Ավելի բազմատեսակ են դարձել օրակարգերը, կոմունիստների քննարկմանն են մտցվում արտադրական ու ներկուսակցական աշխատանքի, մարդկանց գաղափարական դաստիարակության վերաբերյալ հրատապ հարցեր: Ժողովներում ու պլենումներում քննադատություն ու ինքնաքննադատություն ծավալելով, կուսակցական կազմակերպությունները տնտեսությունը ղեկավարելու և մարդկանց դաստիարակելու ուղղությամբ ծավալած իրենց ամբողջ գործունեությանը հաղորդում են հիրավի մարտական, հարձակողական բնույթ: Նրանք մասսաներին պայքարի են հանում ժողովրդատնտեսական պլանները անպայման կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի որակը բարելավելու համար, ամրապնդում են կուսակցական և պետական կարգապահությունը, վճռական հակահարված են տալիս բուրժուական պրոպագանդայի մեքենայություններին և նրանց, ովքեր ժամանակ առ ժամանակ ենթարկվում են այդ պրոպագանդային:

Արդի պայմաններում, երբ կուսակցության ու երկրի առաջ վիթխարի կարևորության քաղաքական ու տնտեսական խնդիրներ են կանգնած, կուսակցությունը ամեն կերպ զարգացնում է քննադատությունը՝ կադրերի՝ գաղափարական կոփվածությունը բարձրացնելու, յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու դաստիարակելու քաղաքականապես, որ նա զգոն, անհաշտ լինել ամեն տեսակ խորթ ազդեցությունների նկատմամբ: Միևնույն ժամանակ անհրաժեշտ է ամենայն խնամքով պարզել ինչպես բանավոր, այնպես էլ տպագիր քննադատական ելույթների բուն իսկ բնույթը, բովանդակությունը: Ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Մոսկվայի քաղաքային կազմակերպության XIX կոնֆերանսում արտասանած իր ճառում նշեց, որ կուսակցությունը պաշտպանում է կուսակցական, սկզբունքային, բայց ոչ քաղքենիական քննադատությունը: Քննադատության արժանիքը որոշվում է ոչ թե արտահայտությունների սրությամբ, այլ ճշմարտացիությամբ, ապացուցականությամբ, արծարծված հարցի նշանակությամբ, այն օգուտով, որ նա բերում է: Կուսակցությունը կենսականորեն շահագրգռված է այն բանում, որ բոլոր կոմունիստները ճիշտ, լենինաբար օգտվեն քննադատության զենքից: Քննադատությունը, իր ժամանակին մատնանշում էր Վ. Ի. Լենինը, պետք է լինի «ընկերական, շիտակ, դիպլոմատությունից, մանր հաշիվներից զերծ» (Երկեր, հատ. 12, էջ 454):

Քննադատության կուսակցական ըմբռնմանը հակառակ այնպիսի փաստեր են լինում, երբ այս կամ այն աշխատողի հասցեին ժողովում կամ թերթում արված դիտողություններից հետո անպայման դրվում է նրան պաշտոնից հանելու հարցը, առանց բոլոր հանգամանքները հաշվի առնելու: Այդպիսի մոտեցումը ոչ միայն չի նպաստում քննադատության զարգացմանը, այլ, ընդ-

հակառակը, կարող է կասեցնել այն, կարող է թուլացնել կադրերին, այլ ոչ թե նպաստել նրանց աճին: Անհրաժեշտ լինում է, իհարկե, քննադատությունից հետո մարդկանց հանել և պատասխանատվության կանչել: Բայց դա չի կարելի ընդհանուր կանոն դարձնել: Չէ որ հաճախ քննադատության են ենթարկվում բարեխիղճ մարդիկ, որոնք թույլ են տվել այս կամ այն վրիպումը, և պահանջվում է, որ նրանք վերացնեն թերությունները ու սխալները, սկսեն ավելի լավ աշխատել, կատարելագործվել:

Հայտնի է, որ մեզ մոտ ավելի ու ավելի է հաստատվում վստահության, կադրերին խնամքով վերաբերվելու իրադրություն: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը թույլ է տալիս ավելի լրիվ և ավելի օբյեկտիվորեն գնահատել առանձին աշխատողների գործունեության ուժեղ և թույլ կողմերը, օգնում է նրանց տիրապետել աշխատանքի լենինյան ոճին: Այս կամ այն աշխատողի արժանիքների, սխալների ու զանցանքների մասին շիտակ, սրտաբաց խոսակցությունը անգնահատելի նշանակություն ունի նրա ճիշտ դաստիարակման համար: Կյանքը ցույց է տալիս, թե որքան կարևոր է աշխատող ընտրելիս, օրինակ, գործարանում և սովխոզում վարպետի, հերթափոխի պետի, բրիգադիրի, ֆերմայի վարիչի և այլ պաշտոններում աշխատող ընդունելիս, հարցը վճռել կոմունիստների, աշխատավորների կոլեկտիվների կարծիքը հաշվի առնելով: Տվյալ դեպքում քննադատությունն ու ինքնաքննադատությունը անմիջականորեն շաղկապվում է կուսակցության կազմակերպությունների կազմակերպական գործունեության հետ, ծառայում է կադրերի ճիշտ ընտրության ու դասավորման գործին:

Կոմունիստական մասսաները խոր շահագրգռվածություն են դրսևորում կուսակցական աշխատանքը և, մասնավորապես, կադրերի հետ տարվող աշխատանքը է՛լ ավելի բարելավելու գործում: Քննադատության ու ինքնաքննադատության ըստ ամենայնի զարգացումը կնպաստի այդ խնդրի հաջող լուծմանը: Դրա համար հարկավոր է, որ կուսակցական կոմիտեները, կուսակցության բյուրոները, կուսակցական կազմակերպությունների քարտուղարները, կուսխմբերի կազմակերպիչները քննադատության ու ինքնաքննադատության զարգացման հարցերը պարբերաբար կոմունիստների քննարկմանը դնեն, զրուցեն նրանց հետ այդ հարցերի մասին: Եվ, իհարկե, հարկավոր է վճռականապես պայքարել քննադատությունը ճնշելու դեմ, ինչ ձևով էլ դա դրսևորվի: Միանգամայն ակներև է, որ եթե կուսակցական կազմակերպությունը հաշտվել է քննադատությունը հալածողների հետ, ապա դրանով իսկ նա անխուսափելիորեն թուլացնում է իրեն, նվազեցնում է իր գործունեության արդյունավետությունը:

Քննադատության նկատմամբ ունեցած վերաբերմունքով է որոշվում յուրաքանչյուր կոմունիստի, ղեկավարի քաղաքական հասունությունն ու սկզբունքայնությունը: Կուսակցական կազմակերպությունները չպետք է անուշադրության մատնեն նրանց, ովքեր արհամարհում են շարքային մարդկանց կարծիքները, իսկ առավել ևս նրանց, ովքեր փորձում են դատաստան տեսնել քննադատության համար: Արժանի, հիմնավորված քննադատությունից որևէ աշխատողի պաշտպանելու «բարի» մտադրությունը, որպես կանոն, հասցնում է այնպիսի բացասական երևույթների, ինչպես կուսակցական կյանքի կանոնադրական նորմաների խախտումն է, անառողջ իրադրության առաջացումը:

Մինչև վերջին ժամանակներս «Մոսօբլստրոյ» № 1 տրեստի մեքենայացված աշխատանքների վարչությունում կարելի էր դիտել այսպիսի պատկեր: Վարչության պետ ընկ. Շուլգան հաշվի չէր նստում կոլեկտիվի կարծիքի հետ, կոպտում էր ենթականերին, իսկ նրանց, ովքեր փորձում էին որևէ բանում առարկել նրան կամ քննադատական դիտողություններ անել, սպառնում էր աշխատանքից հեռացումով, առանձին աշխատողների նույնիսկ հեռացնում էր: Իսկ տրեստի կուսկազմակերպությունը ոչինչ չէր անում եռանդոտ ադմինիստրատորին զսպելու համար: Միայն վերադաս կուսակցական մարմինների միջամտությունից հետո ընկ. Շուլգան պատժվեց՝ քննադատությունը ճնշելու համար ազատվեց զբաղեցրած պաշտոնից:

Այս կամ այն կուսկազմակերպության մարտունակությունը որոշելու համար առաջնահերթ նշանակություն ունի այն, թե ինչպես է նա պաշտպանում ներքևից եկող քննադատությունը, ինչպես է վերաբերվում նրանց, ովքեր փորձում են ճնշել այն: Կոմունիստների և անկուսակցականների կարծիքների անտեսման դեմ վճռական պայքար մղելով, կուսկազմակերպությունը նոր լիցք է ստանում, բարձրացնում է իր դերը տնտեսությունը ղեկավարելու և մարդկանց դաստիարակելու գործում:

Կուսակցական կազմակերպությունները պետք է հոգ տանեն այն մասին, որպեսզի այսուհետև ևս բարձրանա բանվորական ժողովների դերը, աշխատավորների կոլեկտիվներում զարգանա քննադատությունը: Բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների ընդհանուր ժողովներում քննարկվում են արտադրական գործունեության, դաստիարակչական աշխատանքի, աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման, կոլեկտիվի կուտակած արժեքավոր փորձի ամփոփման վերաբերյալ բոլոր հիմնական հարցերը: Սովետական աշխատավորները, արտադրության, երկրի իսկական տերերը հոգով ցավում են իրենց արտադրամասի, իրենց ձեռնարկության, իրենց կոլտնտեսության ու սովխոզի համար: Նրանք իրենց ժողովներում շատ արժեքավոր առաջարկություններ են մտցնում, քննադատական դիտողություններ անում, որոնք ուղղված են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը: Եվ նրանց արտահայտությունները արժանի են ամենասևեռուն ուշադրության: Պետք է կանոն դարձնել, որ մինիստրություններն ու գերատեսչությունները, ձեռնարկությունների ղեկավարները ամփոփեն բանվորական ժողովներում արված առաջարկությունները, դրանցից գործնական հետևություններ անեն և այդ մասին պարբերաբար ինֆորմացիա տան համապատասխան կոլեկտիվներին: Կուսակցական կազմակերպության պարտականությունն է վերահսկողություն իրականացնել, որ տնտեսական, սովետական և մյուս մարմինները կոնկրետ միջոցներ ձեռնարկեն:

Դրական, կոնստրուկտիվ դեր է կատարում այն քննադատությունը, որ պարունակում են կուսակցական և սովետական մարմիններում, թերթերի ու ժուռնալների խմբագրություններում ստացված աշխատավորների նամակները, դիմումները և գանգատները: Իհարկե, քննադատությունը այդպիսի դեր կատարել կարող է, եթե նամակներն ու դիմումները քննվեն ամենաուշադիր կերպով: ՍՄԿԿ Կենտկոմը «Նամակները քննելու և աշխատավորների ընդունելությունը կազմակերպելու ուղղությամբ աշխատանքի բարելավման մասին» որոշման մեջ ընդգծվում է, որ նամակների առթիվ տարվող աշխատանքն

այժմ կուսակցական կազմակերպություններից խոր, վերլուծական մոտեցում է պահանջում։ Կուսկազմակերպությունները պատրաստվում են հասնել այն բանին, որ նամակների, թղթակցությունների, մամուլի ելույթների նկատմամբ ապահովվի ուշադիր վերաբերմունք, որ անշեղորեն կատարվի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը քաղաքացիների առաջարկությունների, դիմումների ու գանգատների քննարկման կարգի մասին, ստույգ կերպով պահպանվեն քննարկումների համար սահմանված ժամկետները, վճռականապես արմատախիլ անելով քաշքշուկն ու բյուրոկրատիզմն այդ գործում։ Առանձնապես հարկավոր է նշել բազմատիրաժ և պատի թերթերի մեծ դերը, որոնք հրատարակվում են ձեռնարկություններում ու հիմնարկներում։ Նպատակահարմար է առանձնապես կարևոր նամակներն ու թղթակցությունները կոլեկտիվների քննարկմանը դնել։

Կուսակցական կազմակերպությունները չեն կարող հաջողությամբ աշխատել, առաջ ընթանալ՝ չքննադատելով սխալներն ու զանցառումները, այն ամենը, ինչը արգելակում է մեր ուղին։ Կոմունիստական կուսակցությունը հաստատուն ուղղություն է վերցրել՝ ամեն կերպ զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, դրա մեջ տեսնելով բոլոր տեղամասերում աշխատանքի բարելավման հուսալի միջոցը։

«Партийная жизнь», № 12,
*հունիս, 1968 թ.*

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

ԹԱՄԱԶՅԱՆ Ա. Խ.

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

*Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու արդի դարաշրջանը, որն սկսվեց Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակով, մարդկության պատմության մեջ կմտնի որպես խոր, հեղափոխական վերափոխությունների դարաշրջան։ Այդ վերափոխությունների պրոցեսը ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը՝ էկոնոմիկան, քաղաքականությունը, գաղափարախոսությունը, մշակույթը։ Պատահական չէ, որ հեղափոխական վերափոխությունների բնույթի, ուղղության և բովանդակության հարցերը տարբեր կուսակցությունների միջև սուր վիճաբանությունների առարկա են։ Հատկապես հեղափոխության պրոբլեմը գտնվում է ժամանակակից գաղափարական պայքարի կենտրոնում և, բնական է, որ բուրժուական սոցիոլոգիան, առաջին հերթին, հարվածն ուղղում է հեղափոխության մարքս-լենինյան տեսության դեմ։*

*Հեղափոխությունը, Լենինի արտահայտությամբ, իմաստուն, դժվարին և բարդ գիտություն է։ Միջազգային բանվոր դասակարգը, աշխարհի հեղափոխական ուժերը պայքարի պրակտիկ փորձի հիման վրա ավելի խոր ու լիակատար են տիրապետում այդ գիտությանը։ Լենինյան գաղափարների ստեղծագործական ուսումնասիրությունն առաջնահերթ նշանակություն ունի համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման ներկա էտապի օրինաչափություններն ու առանձնահատկությունները հասկանալու, պայքարի ամենից արդյունավետ ձևեր ու մեթոդներ մշակելու համար։*

*Մարքսիզմի հիմնադիրները պրոլետարիատի սոցիալական հեղափոխությունը դիտում էին որպես բարդ և հակասական միջազգային պրոցես, ենթադրելով, որ սոցիալիստական փուլը զարգացած կապիտալիստական երկրներում կարող է միաժամանակ հաղթանակել։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ամենևին չէին գտնում, որ այդ ակտով անմիջապես կլուծվեն հեղափոխական խնդիրների բոլոր կողմերը։ Ընդհակառակը, նրանք նշում էին, որ պրոլետարական հեղափոխությունը պետք է սովորի իր սեփական փորձի վրա, որ տասնամյակներ*

կպահանջվեն մինչև բանվոր դասակարգը ստեղծի նոր, սոցիալիստական հասարակարգ, որ համաշխարհային հեղափոխության ընթացքում հնարավոր են պատերազմներ մետրոպոլիաների և գաղութային երկրների միջև և այլն։ Մարքսիզմի հիմնադիրները ցույց տվեցին, որ հեղափոխությունը պետք է շարունակվի այնքան ժամանակ, մինչև բոլոր ունևոր դասակարգերը հեռացվեն գերիշխանությունից, և պրոլետարիատը նվաճի պետական իշխանությունը։

Հետազոտելով իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի տնտեսական և քաղաքական անհամաչափ զարգացման օրենքի գործողությունը, ապացուցելով սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հնարավորությունը սկզբում մեկ, առանձին վերցրած երկրում, Վ. Ի. Լենինը եկավ այն հետևության, որ համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման ուղին ավելի բարդ է ու դժվարին, քան կարող էր լինել նախորդ դարում։ Համաշխարհային հեղափոխությունը, նշում էր Լենինը, շատ տարիներ կշարունակվի, կպահանջի մեծ ջանքեր, որովհետև իմպերիալիզմի դարաշրջանում տնտեսության համաշխարհային բնույթը չի բացառում առանձին երկրների տնտեսական ու քաղաքական զարգացման մակարդակների միջև եղած խոր տարբերությունները։ Բացի դրանից, ամեն մի երկիր ունի իր պատմական, ազգային առանձնահատկությունները, իր տրադիցիաները, սովորույթները և այլն։ Սկըսվելով տնտեսական, քաղաքական, կուլտուրական կյանքի տարբեր պայմաններում, պրոլետարական հեղափոխությունն առանձին երկրներում անհավասարաչափ է հասունանում։ Ավելին, ամեն մի երկրում այն ընթանում է յուրովի, պայքարի տարբեր ձևերով ու մեթոդներով։ «Համաշխարհային հեղափոխությունը,— գրում էր Լենինը,— այնպես հարթ չի կառուցված, որպեսզի ամենուրեք և բոլոր երկրներում ընթանա միևնույն ուղիով... Ամեն մի երկրում հարկավոր է անցնել քաղաքական որոշակի էտապներ» (Երկեր, հ. 28, էջ 142)։ Այդ էտապներն անհրաժեշտ են, որովհետև առանձին երկրների սոցիալ-տնտեսական ու քաղաքական կյանքի բազմազանությունը չի կարող իր կնիքը չդնել համաշխարհային ազատագրական շարժման բնույթի, ձևերի և ուղիների վրա։ Լենինը սովորեցնում էր տեսնել այն խոր, շարժման մեջ գոյություն ունեցող ներքին կապը, որը բոլոր հեղափոխական ուժերը միավորում է գլխավոր ուժի՝ միջազգային պրոլետարիատի շուրջը։

Աշխարհի հեղափոխական վերափոխումների համար մղվող պայքարում միջազգային պրոլետարիատի հեգեմոնիան համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման կարևոր օրինաչափությունն է։ Միջազգային բանվոր դասակարգը կանգնած է համաշխարհային հեղափոխական պրոցեսի կենտրոնում, կազմում է զարգացած կապիտալիստական երկրների բնակչության մեծամասնությունը, նյութական արտադրության մեջ վճռական ուժն է, առավել հետևողական է արտահայտում ողջ ազգի շահերը՝ իր շուրջը համախմբելով աշխատավորների լայն զանգվածներին, հակամոնոպոլիստական բոլոր ուժերին։

Միջազգային բանվոր դասակարգի հզորությունը միայն նրա քանակական կազմի մեջ չէ, այլ, առաջին հերթին, նրա գիտակցականության, կազմակերպվածության և համախմբվածության։ Հայտնի է, որ Երկրորդ ինտերնացիոնալի տեսաբաններ Կ. Կաուցկին, Օտ. Բաուերը, Էդ. Բեռնշտեյնը և ուրիշներ գտնում էին, որ քանի դեռ արդյունաբերական պրոլետարիատը բոլոր երկրներում բնակչության փոքրամասնությունն է կազմում, ապա անհնար է սոցիալիստական հեղափոխության իրականացումը, որ այդ պայմաններում



բանվոր դասակարգի սոցիալիզմի ձգտումն ավելի շուտ ենթադրություն է, քան արժանահավատ փաստ։

Միջազգային բանվոր դասակարգի հեղափոխական շարժման պրակտիկան հերքեց օպորտունիստների հակամարքսիստական այդ դրույթները և ցույց տվեց, որ մինչև այժմ պատմության մեջ չի եղել հեղափոխություն, լինի դա բուրժուական, թե սոցիալիստական, երբ հեղափոխությունն իրականացնող դասակարգը քաղաքական իշխանությունը գրավելիս բնակչության մեջ մեծամասնություն կազմեր։ Երբ բուրժուազիան հաղթահարեց ֆեոդալական կարգը և հաստատեց իր դիկտատուրան, կազմում էր բնակչության փոքրամասնությունը։ Նա հաղթեց շնորհիվ գյուղացիության և բանվորական մասսաների հետ ունեցած դաշինքի։

Սոցիալիզմը կապիտալիզմից տարբերվում է նաև նրանով, որ բանվոր դասակարգը սոցիալիստական հեղափոխությունը իրականացնելուց և քաղաքական իշխանությունը գրավելուց հետո չի կարող մնալ բնակչության փոքրամասնությունը։ Սոցիալիստական հիմունքներով վերակառուցելով կապիտալիստական տնտեսությունը, բանվոր դասակարգն աճում է և՛ քաղաքականապես, և՛ քանակապես։ Այդ ՍՍՀՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ապացուցվեց սոցիալիստական շինարարության բուն փորձով։ Քանի որ իմպերիալիզմի դարաշրջանում «մաքուր» սոցիալական հեղափոխություններ չեն կարող լինել, ուստի, բանվոր դասակարգը բուրժուազիայի դեմ մղվող պայքարում ի դեմս քաղաքի և գյուղի կիսապրոլետարական աշխատավորների, ունի այնպիսի հուսալի դաշնակիցներ, որոնց հետ մեկտեղ նա կազմում է երկրի ազգաբնակչության մեծամասնությունը։ «Անվիճելի է,—գրում էր Լենինը,— որ պրոլետարիատի հեղափոխական շարժումը կախված է թե՛ այդ բանվորների թվից, թե՛ նրանց համակենտրոնացումից, թե՛ նրանց զարգացման աստիճանից և այլն...» (Երկեր, հ. 1, էջ 395)։

Միջազգային բանվոր դասակարգի հեգեմոնիան ազատագրական, հակաիմպերիալիստական շարժմանը կարող է տալ հետևողական բնույթ, ապահովել մարդկության անցումը սոցիալիզմին։

Համաշխարհային հեղափոխական պրոցեսն անընդհատ զարգանում է, հարստանում, ներգրավելով սոցիալական նոր ուժեր։ Համաշխարհային հեղափոխական պրոցեսի օրենքները պատմական զարգացման ամեն մի էտապում դրսևորվում են յուրահատուկ ձևով, ներառնում սոցիալական նոր երևույթներ։

Վ. Ի. Լենինը հետհոկտեմբերյան ժամանակաշրջանում համաշխարհային հեղափոխական պրոցեսի գլխավոր տենդենցը տեսնում էր նրանում, որ մի երկրում հաղթանակած սոցիալիզմը, որը դեռ չէր կարող որոշել համաշխարհային քաղաքականության ընթացքի ուղղությունը, կվերածվի միջազգային սիստեմի և որոշակիորեն կներգործի համաշխարհային զարգացման ընթացքի վրա։ Հաղթանակած սոցիալիզմի երկիրը համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման վրա, ամենից առաջ, ներգործում է իր տնտեսական քաղաքականությամբ։

Համաշխարհային հեղափոխական պրոցեսում սոցիալիստական երկրների դերի վերաբերյալ լենինյան գաղափարները հետագա ստեղծագործական զարգացում գտան միջազգային կոմունիստական շարժման ծրագրային փաստաթղթերում և ՍՄԿԿ ծրագրում, որտեղ ընդգծված է, որ միջազգային բան-

վոր դասակարգի հեղափոխական շարժումը և սոցիալիզմի համաշխարհային սիստեմը որոշում են համաշխարհային ազատագրական շարժման ողջ ընթացքը: Արդիականության գլխավոր ուղղությունը որոշում են սոցիալիզմի համագործակցության երկրները:

Հետհոկտեմբերյան շրջանում համաշխարհային հեղափոխական պրոցեսի օրինաչափություններին բնորոշ են զարգացման երեք փուլ: Առաջին երկու փուլերում սոցիալիստական հասարակարգը, դուրս գալով մի երկրի շրջանակներից, վերածվեց միջազգային սիստեմի: Երրորդ փուլում խաղաղության ու առաջադիմության համար ժողովուրդների մղած պայքարի առաջատար ուժը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, վերածվում է հասարակության զարգացման վճռական գործոնի: Համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը որևէ մեկի կամ կուսակցության սուբյեկտիվ գործողությունների արդյունք չէ: Այն հասունացած օբյեկտիվ պայմանների արտահայտություն է, որտեղ վճռական դեր են խաղում նաև սուբյեկտիվ գործոնները: Հասարակության հեղափոխական պրոցեսի զարգացման դիալեկտիկան ենթադրում է սոցիալական բազմաթիվ արգելքների, հակասությունների հաղթահարում: Հեղափոխական պրոցեսի տենդենցը վերընթաց է, առաջադիմական: Նրա գլխավոր բազան, շարժիչ ուժերի ավանգարդը՝ սոցիալիստական հեղափոխության հաղթանակած երկրներն են:

Հակադրվելով իմպերիալիզմին ու ռեակցիային, սոցիալիզմի համագործակցության երկրները վահան են ծառայում հեղափոխական շարժման մյուս ջոկատների համար, պաշտպանում նրանց արդարացի պայքարը: Այժմ սոցիալիզմի շինարարության ուղին բռնած ամեն մի նոր երկիր դրա համար ունի բոլոր նպաստավոր պայմանները, կարող է հաղթահարել ավելի քիչ դժվարություններ ու զրկանքներ, խուսափել որոշ սխալներից, շրջահայեցությամբ կիրառել նոր հասարակարգի կառուցման կուտակված փորձը:

Համաշխարհային հեղափոխական պրոցեսի մարքս-լենինյան տեսությունը միշտ ընդգծել է, որ առաջավոր ուժերի մաքսիմալ համախմբումը միջազգային բանվորական շարժման կենսական անհրաժեշտությունն է: XIX դարում կապիտալիզմի դեմ պայքարող հեղափոխական ուժերի համախմբման թափը զգալիորեն թույլ էր. դեռևս ցածր էր միջազգային պրոլետարիատի գիտակցությունը և կազմակերպվածությունը: Բացակայում էր համագործակցությունը (թեկուզ մեկ երկրի սահմաններում) պրոլետարիատի և գյուղացիության միջև: Պրոլետարիատի դասակարգային պայքարը չմիացվեց գյուղացիների ու կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումներին: Չնայած հեղափոխական բոլոր ուժերի համախմբման համար օբյեկտիվ հիմք կար, բայց մինչև Հոկտեմբեր այդ ուժերն ինտերնացիոնալ համերաշխության միայն առաջին հիմնաքարերն էին դրել:

Պրոլետարական և ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման միասնությունը, ամենից առաջ, դրսևորվեց ցարիզմի ու ռուսական իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում: Բոլշևիկների կուսակցությունը, ասված է ՍՄԿԿ ծրագրում, հեղափոխական մի հոսանքի մեջ միավորեց սոցիալիզմի համար մղվող բանվոր դասակարգի, հողի համար՝ գյուղացիության, Ռուսաստանի ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը, խաղաղության համաժողովրդական շարժումը և այդ ուժերն ուղղեց կապիտալիզմի տապալմանը:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ սոցիալիզմ կա-



ռուցող երկրի աշխատավորների, կապիտալիստական աշխարհի պրոլետարիատի դասակարգային պայքարի և գաղութային ու կախյալ երկրների ազգային-ազատագրական շարժման միջև տեղծվեց միասնական հակաիմպերիալիստական ճակատ և նոր վերելք ապրեց համաշխարհային հեղափոխական պրոցեսը: Հեղափոխական պրոցեսի բազմազանությունը իմպերիալիզմի սիստեմի անխուսափելի արդյունքն է, որն ընդգրկում է սոցիալ-քաղաքական կացության տարբեր աստիճանների վրա գտնվող երկրները: «Սոցիալական հեղափոխությունը,— գրում է Լենինը,— չի կարող այլ կերպ տեղի ունենալ, քան իբրև մի դարաշրջան, որը միացնում է պրոլետարիատի քաղաքացիական կռիվը բուրժուազիայի դեմ առաջավոր երկրներում և մի ամբողջ շարք դեմոկրատական ու հեղափոխական, այդ թվում ազգային-ազատագրական շարժումներ, չզարգացած, հետամնաց ու ճնշված ազգերի մեջ» (Երկեր, հ. 23, էջ 67):

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը արագացրեց համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը, ընդլայնեց հասարակական շարժման ոլորտը, բազմաթիվ ազգեր ու ժողովուրդներ ներգրավեց սոցիալական առաջադիմության համար մղվող համամարդկային պայքարի մեջ: Հեղափոխական պրոցեսի զարգացման այդ էտապում ստեղծվեցին սոցիալիստական հեղափոխության իրականացման նոր հնարավորություններ, զարգացման նոր ձևեր: Բարենպաստ գործոնները հնարավորություն են ընձեռում, որ յուրաքանչյուր երկիր, անկախ իր տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման մակարդակից, անցնի սոցիալիզմին: Հեղափոխության զարգացման նոր ձևերը պայմանավորված են համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյությամբ, երբ գաղութային լուծը թոթափած երկրներին հնարավորություն է ընձեռվում կանգնել զարգացման ոչ-կապիտալիստական ուղու վրա:

Մեր երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո, ինչպես ուսուցանում էր Լենինը, հնարավոր է նախակապիտալիստական հասարակական հարաբերություններից անցում կատարել սոցիալիզմին, շրջանցելով զարգացման կապիտալիստական ստադիան: Հեղափոխական պրոցեսի այդ օրինաչափությունը դրսևորվեց Սովետական Միությունում, որտեղ Միջին Ասիայի, Հեռավոր Արևելքի, Հյուսիսային Կովկասի շատ ժողովուրդներ, առաջավոր ազգերի ու հանրապետությունների օգնությամբ, նահապետական, կիսաֆեոդալական ու ֆեոդալական հարաբերություններից միանգամից անցան սոցիալիզմին և պատմական կարճ ժամանակամիջոցում վերացրին դարավոր հետամնացությունը, դարձան սովետական բազմազգ ժողովուրդների միության իրավահավասար անդամներ:

Ոչ-կապիտալիստական զարգացման օրինակ էր նաև Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը: Այժմ, երբ ստեղծվել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, երբ միջազգային ասպարեզում փոխվել է դասակարգային ուժերի հարաբերակցությունը, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման օրինաչափության դրսևորման համար ավելի նպաստավոր պայմաններ կան: Այսպես, Ասիայի, Աֆրիկայի մի շարք ժողովուրդներ, գաղութարարների լուծը տապալելուց հետո, բռնել են զարգացման ոչ-կապիտալիստական ուղին, որն ապահովվում է բանվոր դասակարգի, ժողովրդական մասսաների համար դեմոկրատական շարժման պայքարով և համապատասխանում ազգի բացարձակ մեծամասնության շահերին: Սոցիա-

լիզմի համաշխարհային սիստեմի եղբայրական օգնության շնորհիվ այդ ուղին բռնած երկրներում անհրաժեշտ տնտեսական, քաղաքական ու կուլտուրական նախադրյալներ է ստեղծվում սոցիալիզմին անցնելու համար։ Հետևաբար, սոցիալիզմի ու ազգային-ազատագրական շարժման ուժերի դաշինքը իմպերիալիզմի դեմ ազատության, ազգային անկախության ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի հաջողության կարևոր նախադրյալն է, հեղափոխության պրոցեսի գործոններից մեկը։

Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը համաշխարհային հեղափոխության առաջացման ու զարգացման ուղին չի կապում պետությունների միջև մղվող պատերազմի հետ։ Սոցիալիստական հեղափոխությունը ժողովուրդների միջև կայուն խաղաղության ճանապարհ է բացում, վերացնում պատերազմ ծնող պատճառները, պատերազմով շահագրգռված դասակարգերին զրկում իշխանությունից, ստեղծում այնպիսի հասարակարգ, որի նպատակը խաղաղությունն է։ Համաշխարհային հեղափոխական պրոցեսի դարբնոցում ձևավորվում և կոփվում են այն ուժերը, որոնք ներկա պայմաններում իրենց հեղափոխական պայքարով կարող են կանխել համաշխարհային նոր պատերազմի առաջացումը։

Արդի դարաշրջանում համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման կարևոր առանձնահատկությունը երկու հակադիր սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում զարգանալն է։ Ներկայումս սոցիալիստական երկրների ու հեղափոխական պրոցեսի մյուս բոլոր ուժերի մարտական դաշինքը միջազգային քաղաքականության կարևորագույն գործոնն է։ Իմպերիալիզմն այլևս չի գերիշխում համաշխարհային ասպարեզում։ Այժմ ժողովուրդները բավականաչափ հզոր են, ակտիվ։ Կոորդինացված գործողություններով նրանք թույլ չեն տա սանձազերծելու համաշխարհային նոր պատերազմ։ Այստեղից բխում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման նոր օրինաչափություն՝ ոչ թե պատերազմով հարուցված հեղափոխություն, այլ սոցիալիստական հեղափոխությամբ պայմանավորված խաղաղություն։ Այդ նշանակում է, որ միջազգային բանվոր դասակարգի և ազգային-ազատագրության համար պայքարող բոլոր ուժերի վսեմ նպատակները կարող են կենսագործվել առանց համաշխարհային պատերազմի։ Այժմ դրա համար ավելի նպաստավոր պայմաններ կան, քան երբևէ։ Սոցիալիզմը այլ նպատակներ չունի, քան հոգատարությունը ժողովրդի շահերի նկատմամբ, որը պայքարում է պատերազմի՝ աշխատավոր մարդկանց կործանման այդ մեծագույն չարիքի դեմ։ Նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը կանխելու պայքարն այժմ դարձել է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման խնդիրների հաջող լուծման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման կարևոր օրինաչափություններից մեկը։

Համաշխարհային հեղափոխական պրոցեսը նույնանման հեղափոխությունների հասարակ թվաբանական գումար չէ։ Մեկ միասնական համաշխարհային հեղափոխական պրոցեսի մեջ միաձուլվում են սոցիալիստական, բանվորական, ազգային-ազատագրական, հակաիմպերիալիստական, ժողովրդա-դեմոկրատական հեղափոխությունները, գյուղացիական զանգվածային շարժումները, ազգային ճնշման դեմ ուղղված համադեմոկրատական շարժումները, որոնք խարխլել ու քայքայել են կապիտալիզմը։ Վերջինս ներքուստ, ճակատից և թիկունքից հարվածող այդ բոլոր ուժերը համախմբվում են համաշխարհային հեղափոխական պրոցեսի առանցքը կազմող երեք խոշոր ուժերի



շուրջը։ Դրանք են՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, կապիտալիստական երկրների բանվորական և ճնշված ու զարգացող երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները։

Արդիականության հեղափոխական ուժերից յուրաքանչյուրը գործում է յուրահատուկ պայմաններում, իր առջև ծառացած խնդիրները լուծում սեփական մեթոդներով ու միջոցներով։ Սակայն նրանց շահերը նույնն են, նրանք ունեն մեկ ընդհանուր թշնամի՝ իմպերիալիզմը։ Հետևաբար հակաիմպերիալիստական պայքարի յուրաքանչյուր ոլորտում ձեռք բերված հաջողությունն առաջ է մղում ամբողջ հեղափոխական ճակատը։ Այդ է հեղափոխական բոլոր ուժերի փոխգործողության, փոխօգնության, համագործակցության օբյեկտիվ հիմքը։ Հեղափոխական ուժերի ավանգարդը, համաշխարհային հեղափոխական պրոցեսի միասնության գաղափարի դրոշակակիրը միջազգային կոմունիստական շարժումն է, որը դարձել է արդի դարաշրջանի ամենաազդեցիկ քաղաքական ուժը, հասարակական առաջադիմության կարևոր գործոնը։ Առանց միջազգային բանվոր դասակարգի հեղափոխական շարժումը չէր կարող լինել կոմունիստական շարժում, որովհետև իր քաղաքական էությամբ և կազմով կուսակցությունը ներկայացնում է այս կամ այն դասակարգի ամենաակտիվ և գիտակից մասը։ Բայց կոմունիստական կուսակցությունները պասիվ չեն հեղափոխական այդ ուժերի նկատմամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումներում նշվում է, որ հեղափոխական ուժերի հաջողությունները, ամենից առաջ, պայմանավորված են կոմունիստական և բանվորական կուսակցությունների համախմբվածությամբ ու գործողությունների միասնությամբ։ Միայն հանդես գալով որպես միասնական միջազգային շարժում, համաշխարհային կոմունիզմը կկարողանա հասնել իր մեծ նպատակներին։ Համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ու համագործակցության ամրապնդման մասին է վկայում եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչների Բուդապեշտի կոնսուլտատիվ հանդիպումը, որտեղ որոշվեց այս տարվա նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին Մոսկվայում հրավիրել միջազգային կոմունիստական ու բանվորական կուսակցությունների նոր խորհրդակցություն։

Միջազգային կոմունիստական շարժման աննախընթաց վերելքը սուբյեկտիվ ցանկությունների արդյունք չէ։ Կոմունիստական կուսակցությունները կյանքի են կոչվել հասարակության զարգացման խոր, օբյեկտիվ պատճառներով, ամենից առաջ, բանվոր դասակարգի ու հեղափոխական ուժերի շահերով ու պահանջմունքներով։ Այստեղից էլ համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը, հեղափոխական ուժերի հաջողությունները պայմանավորված են, առաջին հերթին, միջազգային կոմունիստական շարժման բոլոր ջոկատների միասնական գործողությամբ ու նրանց համագործակցությամբ։ Անցած կեսդարյա ուղին ցույց է տալիս, որ բանվոր դասակարգի հեղափոխական շարժման, ինչպես նաև ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի ղեկավարությունը ներկայումս հիմնականում անցնում է կոմունիստների ձեռքը։ Ճիշտ է, այժմ ոչ-սոցիալիստական երկրներում գոյություն ունեն սոցիալիստական, կաթոլիկական և այլ կուսակցություններ, ռեակցիոն արհմիութենական կազմակերպություններ, որոնք իրենց ետևից են տանում զգալի թվով աշխատավորների, մթագնում նրանց դասակարգային ինքնագիտակցությունը, բայց այդ կուսակցություններն ու կազմակերպու-

թյունները կորցրել են իրենց ստրատեգիական դիրքերը համաշխարհային ազատագրական շարժման մեջ։

Այսպես, 1951 թ. ստեղծված սոցիալիստական ինտերնացիոնալը, որն ըստ նրա ջատագովների ու կազմակերպիչների պետք է լիներ միջազգային կազմակերպություն, մնաց որպես «Եվրոպական ակումբ» և խոր ճգնաժամ ապրեց։ Ինչպես նշվում է սոցինտերնի քարտուղարության 1961—1963 թթ. հաշվետվության մեջ, չեն գործում սոցինտերնի «Լատինո-ամերիկյան քարտուղարությունը» և «Ասիական սոցիալիստական կոնֆերանսը» կոլեկտիվ կազմակերպությունները, լույս չեն տեսնում նրանց ինֆորմացիոն բյուլետենները։ Դեռ ավելին, եթե համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացմանը զուգընթաց կոմունիստական կուսակցությունների անդամների թիվը 1928—1966 թթ. ընթացքում մեծացել է 29,4 անգամ, ապա սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների անդամներինը՝ միայն 2 անգամ։

Եթե Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով Եվրոպայի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները, պաշտոնապես իրենց կապերը խզելով մարքսիզմից, սկսեցին գլորվել հակակոմունիզմի գիրկը, ապա երկրորդ համաշխարհային պատերազմից հետո նրանք հրաժարվեցին նաև սոցիալիզմից։ Մի կողմից, հեղափոխական ուժերի հաջողությունները, մյուս կողմից՝ սոցիալ-դեմոկրատիզմի ճգնաժամը, մասսաների շրջանում ավելի բարձրացրին կոմկուսակցությունների հեղինակությունը, նրանց ունեցած ազդեցությունը։ Դրա փայլուն վկայություններից մեկը արհմիությունների, տեղական ինքնավարության օրգանների և պառլամենտների ընտրությունների ընթացքում կոմունիստների հեղինակության անընդհատ աճն է։

Համաշխարհային ազատագրական շարժման մեջ կոմունիստների հաջողություններն արդյունք են այն բանի, որ նրանք հետևողականորեն հանդես են գալիս դասակարգային մարտերի վճռական տեղամասերում։

Միջազգային բանվոր դասակարգի, ժողովուրդների ազգային անկախության համար պայքարող և մյուս հեղափոխական ուժերի հաջողությունները սոցիալիստական երկրների և միջազգային կոմունիստական շարժման միասնության ու համախմբվածության արդյունք են։ «Այդ համախմբվածությունը,— նշվում է կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1957 թ. Դեկլարացիայում,— ավելի լայն համախմբվածության միջուկն է, բանվոր դասակարգի գործի հաղթանակի ամենահիմնական երաշխիքը»։ Հետևաբար, մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա կոմունիստական կուսակցությունների գործողությունների միասնությունը և համախմբվածությունը համաշխարհային հեղափոխական պրոցեսի վճռական ուժն է, նրա զարգացման օրինաչափություններից մեկը։

Մենք նշեցինք համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման մի քանի օրինաչափություններ, որոնք բխում են սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունից։ Համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման օրինաչափությունների բացահայտումը լենինյան հանճարի արգասիքն է, անգնահատելի ներդրում՝ սոցիալիստական հեղափոխության տեսության ստեղծագործական զարգացման ու հարստացման գործում։

---

ԹԱՄՐԱԶՈՎԱ ԻԶԱԲԵԼԱ

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԸ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը, փշրելով ազգային ճնշման դարավոր շղթաները, արմատական հեղաշրջում կատարեց Ռուսաստանի ժողովուրդների կյանքում։ Սովետական իշխանության գոյության ողջ պատմությունը հաստատեց ազգային հարցի լենինյան ուսմունքի ուժն ու կենսունակությունը. այն անգնահատելի դեր խաղաց սովետական ժողովուրդների եղբայրացման գործում։

Ռուսաստանի ծայրամասերում սովետական կարգեր հաստատելուց հետո անհրաժեշտ էր ստեղծել ռեալ նախապայմաններ երբեմնի ճնշված ու հետամնաց ժողովուրդների իրական անհավասարությունը վերացնելու համար։ Լենինը գտնում էր, որ ռուս ժողովուրդը միայն այդ ճանապարհով կկարողանա նվաճել ճնշված ժողովուրդների վստահությունը։ Այս առնչությամբ մեծ նշանակություն ունեցան ազգային հարցի վերաբերյալ կուսակցության X համագումարի (1921 թ. մարտ) որոշումները։ Համագումարի բանաձևում շեշտվում էր, որ անհրաժեշտ է արագացնել ազգային ծայրամասերի ժողովուրդների տնտեսական, կուլտուրական և քաղաքական վերածնունդը, օգնել նրանց հասնելու կենտրոնական Ռուսաստանին։

Անդրկովկասում սովետական կարգերի հաստատմամբ սկսվեց տարբեր ազգերի ու ժողովուրդների լենինյան համագործակցությունը, որի շնորհիվ պատմության գիրկն անցան անցյալի ազգամիջյան ընդհարումների ու նացիոնալիզմի հետ կապված տխուր հուշերը։ Անշեղորեն առաջնորդվելով 1921 թ. ապրիլի 14-ին գրված Լենինի նամակի դրույթներով, Անդրկովկասի կոմունիստները կարճ ժամանակամիջոցում հաստատեցին մինչ այդ չտեսնված խաղաղություն ու եղբայրություն վրացիների, հայերի, ադրբեջանցիների ու մյուս ժողովուրդների միջև։

Լենինը խորհուրդ էր տալիս Անդրկովկասի կոմունիստներին մանր բուրժուազիայի, մտավորականության և մանավանդ գյուղացիության նկատմամբ առավել զգուշություն, մեղմություն ու զիջողականություն ցուցաբերել (տե՛ս հ. 32, էջ 403)։

Լենինը դնում էր նաև երկրամասի ողջ արտադրաուժերի զարգացման հարցը։ Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս. Մ. Կիրովի, Ա. Ֆ. Մյասնիկյանի, Մ. Գ. Ցխակայայի, Շ. Զ. Էլիավայի, Ն. Ն. Նարիմանովի, Մ. Դ. Օրախելաշվիլու, Գ. Մ. Մուսաբեկովի ղե-

կավարությամբ, երկրամասի բոլոր կոմունիստների ուժերը մոբիլիզացրին
հանուն սովետական իշխանության ամրապնդման, ազգային խաղաղության
ստեղծման, Անդրկովկասի աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման,
Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի քաղաքական, տնտեսական և կուլտու-
րական վերածննդին։

ՌԿ(բ)Կ Կենտկոմի Անդրկովկասի բյուրոն կուսակցության ականավոր
գործիչ Գ. Կ. Օրջոնիկիձեի գլխավորությամբ, նկատի առնելով յուրաքանչյուր
հանրապետության առանձնահատկությունները, կենսագործում էր լենինյան
տակտիկան։

Անդրկովկասյան հանրապետություններում, 1921 թ. վերջին, 1922 թ.
սկզբին, հեղկոմների փոխարեն սովետական իշխանության օրգանների ստեղ-
ծումը, սահմանադրության ընդունումը՝ սոցիալիստական հիմունքներով
ստեղծված ազգային պետականության զարգացման համար, նոր, կարևորա-
գույն փուլ դարձան։ ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի, ապա Անդրկով-
կասի երկրամասային կոմիտեի ղեկավարությամբ, Անդրկովկասի կոմունիս-
տական կազմակերպությունները հանուն ազգերի խաղաղության պրոպա-
գանդիստական, ագիտացիոն լայն աշխատանք ծավալեցին, շաղկապելով այն
երկրամասի ժողովուրդների քաղաքական, տնտեսական և կուլտուրական
մակարդակի բարձրացմանն ուղղված կոմունիստական կազմակերպություն-
ների պրակտիկ գործունեության հետ։

Տնտեսության արագ վերականգնումն ու սոցիալիստական շինարարու-
թյան ծավալումը գլխավոր խնդիրն էր։ Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի
տնտեսական զարգացման շահերը պահանջում էին հանրապետությունների
ջանքերի միավորում, որն Անդրկովկասի ժողովուրդների եղբայրական դաշին-
քի հաստատման առհավատչյան էր։ Դրա համար, առաջին հերթին, հարկավոր
էր միավորել ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերը՝ երկաթուղի-
ներն ու արտաքին առևտուրը. այդ իրականացվեց 1921 թ. ապրիլ, հունիս
ամիսներին, իսկ մայիսի 2-ին Կենտկոմի Կովկասյան բյուրոյի պլենումի որոշ-
մամբ վերացվեցին մաքսերը։

1921 թ. մայիսի 6-ին աշխատանքի և պաշտպանության խորհուրդը որո-
շեց՝ «Անդրկովկասյան հանրապետություններում ՌՍՖՍՀ արտաքին առևտրի
ժողովրդական կոմիսարիատի ներկայացուցչությանը հատկացնել մեկ միլիոն
ռուբլի (ոսկով)՝ առևտրական և արժույթային գործառնությունների համար»[1]։

1922 թ. հունիսի 2-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի պլենումը
քննարկեց «Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի միջև արտաքին առևտրի
դաշնագրի հարցը» և «Անդրկովկասյան հանրապետություններում արտաքին
առևտրի միավորման, արտաքին առևտրի միասնական կոլեգիայի ստեղծման
հարցը»[2] և որոշում ընդունեց։

Անդրֆեդերացիայի ստեղծմանը դիմադրում էր վրացական ուկլոնիստ-
ների խմբակը։ Ահա թե ինչու ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի ընդ-
լայնված պլենումը (2—3 հուլիսի 1921 թ.) այդ հարցի մասին Ս. Օրջոնիկիձեի
տված զեկուցման հիման վրա դատապարտեց վրացական նացիոնալ ուկլո-
նիստների վարքագիծը։ Այդ առթիվ ընդունված որոշումը պարտավորեցնում
էր Անդրկովկասի հանրապետությունների կոմունիստներին՝ հետևողական

1 ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ ԿԿԱ, ֆ. 19, ԱՇԽ, արձ. 211, թ. 4։
2 Նույն տեղը, ֆ. 64, ց. 2, գ. 1, թ. 64։



պայքար մղել նացիոնալիզմի դրսևորումների դեմ և աշխատավոր զանգված-
ներին դաստիարակել պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։ Այդ իսկ
պլենումը մի ծավալուն որոշմամբ հանձնարարեց հանրապետությունների
կուսկենտկոմներին միջոցառումներ մշակել տնտեսական շինարարության հա-
ջող ընթացքն ապահովելու և աշխատավորական բոլոր խավերին այդ շինա-
րարության ոլորտում գլխովին ներգրավելու նպատակով։

Նկատի առնելով իմպերիալիստական պետությունների կողմից սպառ-
նացող վտանգը, պլենումն ընդգծեց Անդրկովկասի սովետական հանրապետու-
թյունների ռազմական ու տնտեսական փոխադարձ աջակցության բացարձակ
անհրաժեշտությունը, գտավ, որ հարկավոր է կամավոր հիմունքներով ռազ-
մական, առևտրական և տնտեսա-ֆինանսական համաձայնագրեր կնքել
Անդրկովկասյան հանրապետությունների և ՌՍՖՍՀ-ի միջև[1]։

1920—1921 թթ. ընթացքում ռազմա- տնտեսական դաշինքներ կնքվեցին
ՌՍՖՍՀ և Անդրկովկասի երեք հանրապետությունների միջև[2]։ Այդ պայմա-
նագրերով սովետական հանրապետությունների միջև ռազմա-դիվանագիտա-
կան և տնտեսական համագործակցության միասնական ամուր սիստեմ էր
ստեղծվում։

Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները կարճ ժամանա-
կամիջոցում ակտիվ գործունեություն ծավալեցին տեղերում և ցանկալի ար-
դյունքների հասան։ Երեք հանրապետությունների աշխատավորական հոծ
զանգվածները իրոք համախմբվեցին կոմունիստական կուսակցության ին-
տերնացիոնալիզմի դրոշի ներքո։ Շատ ճիշտ վարվեցին երկրամասի կոմու-
նիստական կազմակերպությունները, երբ սովետական կարգերի հաստատու-
մից անմիջապես հետո ողջ ուժերը կենտրոնացրին ազգային հարցի արմա-
տական լուծման վրա, որն Անդրկովկասում սովետական իշխանության հե-
տագա զարգացման գրավականն էր։ 1921 թ. օգոստոսին ՌԿ(բ)Կ Կենտկոմի
Կովկասյան բյուրոյի պլենումը հաստատեց Անդրկովկասի հանրապետություն-
ների տնտեսական բյուրո ստեղծելու վերաբերյալ տնտեսական խորհրդակցու-
թյան որոշումը և այն Անդրկովկասի կոմունիստական բոլոր կազմակերպու-
թյունների կուսակցական դիրեկտիվը դարձրեց[3]։

1921 թ. օրվա հրատապ հարցերից էր՝ Անդրկովկասյան հանրապետու-
թյունների քաղաքական միավորումը։ Նոյեմբերի 3-ին Բաքվում կայացավ
ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի պլենումը, որին ներկա էին Անդր-
կովկասի, Վրաստանի կոմկուսակցության Կենտկոմի անդամները։ Պլենումը
քննարկեց Անդրկովկասյան հանրապետությունների քաղաքական միավոր-
ման հարցը։ Անդրկովկասյան հանրապետությունների ֆեդերացիայի մասին
զեկուցեց Ս. Օրջոնիկիձեն, իսկ դաշնագրի նախագծի վերաբերյալ՝ Շ. Էլիավան։
Միաձայն որոշում ընդունելով Անդրկովկասյան հանրապետությունների ֆե-
դերատիվ միավորման վերաբերյալ, պլենումը նշեց, որ քաղաքական միա-
վորումը հնարավորություն կընձեռի տնտեսական և կուլտուրական սերտ կա-
պեր ստեղծել հանրապետությունների միջև[4]։

1 ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ ԿԿԱ, ֆ. 64, ց. 2, գ. 146, թ. 84—87։
2 «Документы внешней политики СССР», Госполитиздат, стр. 222.
3 Տե՛ս ՄԼԻ ԿԿԱ, ֆ. 64, ց. 2, գ. 1, թ. 142։
4 «Образование СССР», сб. документов. 1917—1924 гг. М.—Л., 1945, стр. 280.

Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմունիստները բացատրական մեծ աշխատանք ծավալեցին Անդրկովկասի աշխատավորների շրջանում։ Վրաստանի կոմկուսակցության Թիֆլիսի կոմիտեն 1921 թ. հունվարի 26-ի իր դիմումում Սովետական Վրաստանի բանվորներին, գյուղացիներին, կարմիրբանակայիններին կոչ արեց համախմբվել Անդրկովկասի աշխատավորության հետ՝ ընդդեմ իմպերիալիստական գիշատիչների։

1921 թ. նոյեմբերին Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի և Երևանի կուսակցական կազմակերպության միացյալ ժողովը հատուկ բանաձև ընդունեց, ուր միահամուռ հավանություն էր տրվում Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծման վերաբերյալ կուսակցության վերադաս օրգանների որոշմանը։

1921 թ. դեկտեմբերի 2-ին Բաքվի աշխատավորների դեպուտատների սովետը, լսելով Ս. Մ. Կիրովի զեկուցումը, հավանություն տվեց ֆեդերացիայի ստեղծմանը[1]։

Այդ օրերին Թիֆլիսի ծխախոտի ֆաբրիկայի բանվորների ընդհանուր ժողովը, քննարկելով ֆեդերացիայի ստեղծման հարցը, բանաձև ընդունեց, որտեղ «ֆեդերացիայի ստեղծումը քաղաքական տեսանկյունից ճիշտ ու ժամանակին էր համարվում, իսկ տնտեսական տեսակետից՝ խիստ անհրաժեշտ»[2]։

1921 թ. նոյեմբերի 29-ին կայացավ Բաթումի ձեռնարկությունների ու երկաթուղային հանգույցի բանվորների միտինգը, ուր նրանք ողջունեցին ֆեդերացիայի ստեղծումը։ Այդպիսի միտինգներ տեղի ունեցան Ադրբեջանում ու Հայաստանում։ Ֆեդերացիայի գաղափարը ջերմ հավանություն գտավ Անդրկովկասի աշխատավորական լայն մասսաների շրջաններում, իսկ սովետների ընտրությունները մի անգամ ևս դա հավաստեցին։

ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն, Վ. Ի. Լենինը լիովին հավանություն տալով Կովկասյան բյուրոյի գծին Անդրկովկասյան հանրապետությունների քաղաքական միավորման հարցում, միաժամանակ նշեցին, որ որոշումն իրագործելիս պետք է խուսափել անհարկի շտապողականությունից։ ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոն, ղեկավարվելով ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի 1921 թ. նոյեմբերի 28-ի որոշմամբ, նախապատրաստեց Անդրֆեդերացիայի կազմավորումը։ 1922 թ. հունվարի վերջին և փետրվարի սկզբին տեղի ունեցան Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի կոմունիստական կուսակցության համագումարները, որտեղ կոմունիստները հավանություն տվեցին Անդրֆեդերացիայի ստեղծման վերաբերյալ ընդունած վերադաս որոշմանը։

Վրաստանի կոմկուսի առաջին համագումարը ևս ձայների բացարձակ մեծամասնությամբ հավանություն տվեց Անդրֆեդերացիայի կազմավորման որոշմանը և խիստ դատապարտեց նացիոնալ ուկլոնիստների բռնած դիրքը[3]։

1922 թ. փետրվարի 18-ին Անդրկովկասի կոմունիստական կազմակերպության I համագումարը ճիշտ համարեց Կովկասյան բյուրոյի քաղաքական գիծը և միահամուռ հավանություն տվեց Անդրֆեդերացիայի ստեղծման նրա վարած կուրսին։ Համագումարը կոմունիստական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ սիստեմատիկ ու համառ պայքար մղել հանուն Անդրկովկասի և Ռուսաստանի աշխատավորների փոխադարձ վստահության ու եղ-

1 Տե՛ս ՄԼԻ ԿԿԱ, ֆ. 64, ց. 2, գ. 106, թ. 13։

2 ՄԼԻ Վրաց. ֆիլիալի արխիվ, ֆ. 18, գ. 13, թ. 27։

3 Տե՛ս ՄԼԻ ԿԿԱ, ֆ. 85, ց. 18, գ. 11, թ. 6։



բայրական համագործակցության։ ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի հաշվետվության առթիվ ընդունած բանաձևում համագումարը հանձնարարեց երկրամասային նորընտիր կոմիտեին՝ վճռական պայքար մղել նացիոնալիստական թեքումների և տենդենցների դեմ կուսակցության մեջ, արագացնել Անդրկովկասի համաքաղաքային կենտրոնի միավորման ստեղծումը, առանց որի անհնար են նրա տնտեսական հզորության վերելքի համար գործադրվող ջանքերը[1]։

ՌԿ(բ)Կ Կենտկոմն անդրադարձավ նացիոնալ ուկլոնիստների բողոքին և 1922 թ. ապրիլի 5-ին կրկին հաստատեց Անդրֆեդերացիայի ստեղծման անհրաժեշտությունը և պարտավորեցրեց երկրամասի հանրապետությունների կոմկուսակցություններին՝ ապահովել այդ որոշման անհապաղ կենսագործումը։ Անդրկովկասի սովետների I համագումարը, որը կայացավ Բաքվում, 1922 թ. դեկտեմբերին, սահմանադիր ժողովի նշանակություն ստացավ. այն կազմավորեց Անդրկովկասի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետությունը։ Անդրֆեդերացիան ո՛չ միայն ամրապնդեց ժողովուրդների ազգային կայուն խաղաղությունը, բարեկամությունն ու եղբայրությունը, այլև նպաստեց սոցիալիստական շինարարության համակողմանի զարգացմանը, երեք հանրապետությունների տնտեսական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Ֆեդերացիան միաժամանակ այդ հանրապետություններին անվտանգություն էր ապահովում։

Զարմանալի չէ, որ ամեն երանգի նացիոնալիստները Անդրկովկասում, թե նրա սահմաններից դուրս, կատաղի վայնասուն բարձրացրին Անդրֆեդերացիայի դեմ։ Այդ վկայում էր, որ նացիոնալիզմը երկրամասի ժողովուրդների կատաղի թշնամին է և Անդրֆեդերացիայի ստեղծմամբ վերջնական պարտություն կրեց։ Այդ օրերին «Правда Грузии» թերթը բոլոր կեղծ մարգարեներին արժանի պատասխան տվեց. «...դադարեցրեք ձեր քաղաքական խաղերը մասսաների շրջանում, չէ՛ որ աշխատավորները ձեզ հետ չեն, այլ ձեր դեմ... Վերջերս տեղի ունեցած բազմամարդ միտինգներում ու ժողովներում անկուսակցական բանվորական լայն մասսան մեծ խանդավառությամբ ու միահամուռությամբ հավանություն տվեց Անդրկովկասյան հանրապետությունների միության վերաբերյալ կոմունիստական կուսակցության որոշմանը... Ձեր նացիոնալիստական կատաղի կերպարանքը մի՛ թաքցրեք ժողովրդի եռևում, այս է մեր բարի խորհուրդը մեր «բարի բարեկամներին» (№ 223, 27 նոյեմբերի, 1921 թ.)։ Այդ տարիներին Անդրկովկասյան հանրապետությունների կուսակցական-սովետական կազմակերպությունների քաղաքական ու պրակտիկ գործունեությունն ուղղված էր ազգային խաղաղության ամրապնդմանը, ժողովուրդների միջև կուլտուրական-տնտեսական անհավասարության վերացմանը, կուլտուրայի և տնտեսության վերելքին։

Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծման, նրա հետագա ամրապնդման գործում մեծ դեր կատարեցին Լենինի զինակիցներն ու աշակերտները— Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ս. Մ. Կիրովը, Ա. Ֆ. Մյասնիկյանը, Մ. Գ. Ցխակայան, Մ. Դ. Օրախելաշվիլին, Ն. Ն. Նարիմանովը, Շ. Զ. Էլիավան, Մ. Ի. Կախիանին, Գ. Մ. Մուսաբեկովը, Ս. Լ. Լուկաշինը և ուրիշներ։ 1923 թ. մարտին Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կոմունիստական կուսակցությունների համա-

1 Տե՛ս Стенографический отчет I съезда Коммунистических организаций Закавказья. Изд. III, ЦК РКП(б), Тифлис, 1922, стр. 98—101.

գումարները հավանություն տվեցին Անդրֆեդերացիայի ստեղծմանը։ Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների II համագումարը (1923 թ. մարտի 19—23) հաստատեց Անդրերկրկոմի քաղաքական գիծը ազգային հարցում։

Սոցիալիստական շինարարության հետագա զարգացման խնդիրները պահանջում էին սերտ կապեր հաստատել Անդրկովկասյան և սովետական ծայրամասային այլ հանրապետությունների ու ՌՍՖՍՀ-ի հետ։ 1922 թ. օգոստոսի 10-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմում հատուկ հանձնաժողով կազմվեց, որը պետք է զբաղվեր սովետական հանրապետությունների փոխհարաբերությունների հարցով։ 1922 թ. աշնանը ՌԿ(բ)Կ Կենտկոմը և կոմկուսի ազգային հանրապետությունների կենտկոմները ՍՍՀՄ կազմակերպման նպատակով նախապատրաստական աշխատանքներ ծավալեցին։ Լենինն անսահման ուշադրությամբ էր հետևում սովետների համագումարի նախապատրաստմանը։ Նա 1922 թ. սեպտեմբերի 27-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներին ուղարկած նամակում դեմ արտահայտվեց Ստալինի կազմած «ավտոնոմիզացիայի» վերաբերյալ թեզիսներին։ Թեզիսները քննարկելիս, Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսի կենտկոմները սկզբում հավանություն տվեցին նախագծին։ 1922 թ. սեպտեմբերի 15-ին Վրաստանի կոմկուսի Կենտկոմի նիստում, ձայների մեծամասնությամբ, հետևյալ որոշումն ընդունվեց. «Ընկեր Ստալինի թեզիսների հիման վրա ավտոնոմիզացման եղանակով անկախ հանրապետությունների միավորման առաջարկությունը վաղաժամ համարել։ Տնտեսական ջանքերի և ընդհանուր քաղաքականության միավորումն անհրաժեշտ ենք գտնում, պահպանելով, սակայն, անկախության բոլոր ատրիբուտները» [1]։

Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմը կողմնակից էր անկախ հանրապետությունների միջև պայմանագրային հարաբերությունների պահպանմանը։ Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմը չքննարկեց նախագիծը։

Ավտոնոմիզացիայի նախագիծն իր հիմքում հակասում էր ժողովուրդների լիիրավ հավասարության վրա հիմնված բազմազգ սովետական պետության ստեղծման լենինյան սկզբունքին և իրականում սահմանափակում սովետական ազգային հանրապետությունների սուվերեն իրավունքները։ Բնական է, որ այդ ամենը կարող էր անվստահություն առաջացնել ժողովուրդների միջև, ուժեղացնել վելիկոռուսական շովինիզմը, որը Լենինը մեծ վտանգ էր համարում մեր երկրի ժողովուրդների եղբայրական միավորման ճանապարհին։ Լենինն սկզբունքորեն այլ որոշում առաջարկեց—լիիրավ-հավասարության հիման վրա՝ բոլոր սովետական հանրապետությունների, ինչպես և ՌՍՖՍՀ կամավոր միավորում Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պետական նոր կազմում։

Լենինի ցուցումները ՌԿ(բ)Կ Կենտկոմի հանձնաժողովի նոր նախագծի հիմքը դարձան, որն ընդունվեց ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումում 1922 թ. հոկտեմբերին։ 1922 թ. հոկտեմբերի 18-ին Անդրերկրկոմի պլենումը միաձայն համաձայնվեց անշեղ իրագործել Անդրֆեդերացիան ՍՍՀՄ կազմի մեջ մտցնելու վերաբերյալ ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի որոշումը։ Պլենումի որոշման համաձայն, հիշյալ որոշումները լուսաբանելու նպատակով, մեծ կամպանիա

---

1 Борьба за упрочение советской власти в Грузии. сб. документов и материалов. (1921—25 гг., Тбилиси, стр. 116—117).



սկսվեց Անդրկովկասի աշխատավորական մասսաների շրջանում։ 1922 թ. հոկտեմբերի 19-ին Վրաստանի Կ(բ)Կ Թիֆլիսի կոմիտեի պլենումը և Թիֆլիսի կազմակերպության համաքաղաքային կուսակցական ժողովը միաձայն հավանություն տվեցին ՌԿ(բ)Կ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի որոշմանը և Անդրերկրկոմի գծին՝ Անդրֆեդերացիայի միջոցով Վրաստանը ՍՍՀՄ կազմի մեջ մտցնելու մասին։ 1922 թ. հոկտեմբերի 21-ին տեղի ունեցավ Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմի պլենումը, որը որոշեց. «Սովետական հանրապետությունների ֆեդերացիայի վերաբերյալ ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի որոշումն ընդունել ի գիտություն և անշեղ ղեկավարություն» [1]։

Կոմկուսի Կենտկոմի պլենումը միաժամանակ որոշում ընդունեց՝ միջնորդել ՌԿ(բ)Կ Կենտկոմի առջև Վրաստանը առանձին Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեջ մտցնելու համար [2]։ Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ա. Ֆ. Մյասնիկյանը, Մ. Ի. Կախիանին և ներկա գտնվող ուրիշ ընկերներ փորձեցին Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմի անդամներին բացատրել նրանց դիրքի վնասակարությունը։ Եվ, այնուամենայնիվ, 12 անդամներից 9-ը քվեարկեցին Վրաստանը առանձին ՍՍՀՄ մեջ մտցնելու համար՝ ՌԿ(բ)Կ Կենտկոմի առաջ կրկնակի միջամտության օգտին, հրաժարվելով գոյություն ունեցող Անդրկովկասյան ֆեդերացիայից [3]։ Բայց կոմունիստների ճնշող մասի կողմից հավանություն չգտնելով, պլենումի աշխատանքի երկրորդ օրը (հոկտեմբերի 22-ին) Վրաստանի Կենտկոմը հրապարակով հայտնեց Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմի նախագահության անդամների հրաժարականի մասին [4]։ 12 անդամներից 9-ը հրաժարական տվին, որն ընդունվեց Անդրերկրկոմի կողմից։

1922 թ. նոյեմբերի 11—12-ին կայացած Անդրկովկասյան կոմկուսակցությունների II կոնֆերանսը, լսելով Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման մասին Օրջոնիկիձեի զեկուցումը, հավանություն տվեց Անդրերկրկոմի գծին։ Ընդգծելով ՌԿ(բ)Կ Անդրկովկասի կոմունիստների II կոնֆերանսի նշանակությունը, «Заря востока» թերթը գրում էր. «Կոմունիստական մեծ կուսակցությունը նացիոնալիստական և մարդատյացության փլատակների վրա, հենց այստեղ, Անդրկովկասում կանգնեցրեց Անդրկովկասի ժողովուրդների եղբայրության և աշխատավորների համերաշխության շենքը...» (№ 122, 11 նոյեմբերի, 1922 թ.)։

Անդրկովկասի աշխատավորներն իրենց ժողովներում որոշում ընդունեցին, պահանջելով, որ Անդրկովկասի հանրապետությունները Անդրֆեդերացիայի միջոցով մտնեն ՍՍՀՄ կազմի մեջ։ Այսպես, Զաքաթալայի սովետների գավառային համագումարը, 1922 թ. նոյեմբերի 29-ի և 30-ի նիստերում, ջերմորեն ողջունեց բոլոր սովետական հանրապետությունների միավորումը և Անդրֆեդերացիայի ստեղծումը՝ որպես երկրամասի ժողովուրդների եղբայրության հետագա ամրապնդման հիմք։ 1922 թ. նոյեմբերի 26-ին այդպիսի որոշում ընդունեցին Թուշի գավառային սովետների համագումարը, նոյեմբերի 28-ին՝ Երևանի գավառային սովետը, դեկտեմբերի 4-ին՝ Թիֆլիսի քաղսովետի պլենումը։ Այսպիսով, Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի աշխատավորները ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում մի անգամ ևս

---

1 ՄԼԻ ԿԿԱ, ֆ. 17, ց. б/н, գ. 280, թ. 1։

2 Տե՛ս նույն տեղում։

3 Տե՛ս ՄԼԻ Վրաց. ֆիլիալի արխիվ, ֆ. 14, ց. 1, գ. 2, թ. 285։

4 Տե՛ս ՄԼԻ ԿԿԱ, ֆ. 17, ց. б/н, գ. 280, թ. 3։

կրկնեցին իրենց ցանկությունը՝ ՍՍՀՄ կազմի մեջ մտնելու՝ որպես Անդրկովկասի հանրապետությունների մի միասնական ընտանիք։

Լենինն ուսուցանում էր, որ իսկական ինտերնացիոնալիզմը դրսևորվում է անցյալում ճնշված ժողովուրդների նկատմամբ ցուցաբերվող ծայրահեղ զգուշությամբ, պատրաստակամությամբ, զիջողականությամբ։ 1922 թ. դեկտեմբերին սովետների առաջին համագումարում դեկլարացիա ընդունվեց և պայմանագիր կնքվեց ՍՍՀՄ կազմավորման վերաբերյալ։ ՍՍՀՄ կազմավորումը ապահովում էր բոլոր ազգությունների բազմակողմանի զարգացումը, սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունն իմպերիալիստական հարձակումներից։

Անդրֆեդերացիայի միջոցով Անդրկովկասյան հանրապետությունների ՍՍՀՄ կազմի մեջ մտնելը Անդրերկրկոմի ընդունած ճիշտ որոշումներից մեկն էր, որն Անդրկովկասի ժողովուրդների կյանքում պատմական մեծ նշանակություն ունեցավ։

Կոմունիստական կազմակերպությունների քաղաքական, կազմակերպական և պրակտիկ ծավալուն գործունեությունը հնարավորություն ընձեռեց ապահովել ազգային կայուն խաղաղությունը, աշխատավորների ինտերնացիոնալ համախմբվածությունը, Անդրկովկասի բոլոր ժողովուրդների տնտեսության ու կուլտուրայի վերականգնումն ու զարգացումը։

Այս ամենը Արևելքի ճնշված ժողովուրդներին ցույց տվեց, որ միայն սովետական իշխանությունը կարողացավ պատմական համեմատաբար կարճ ժամանակաշրջանում սոցիալիստական ամուր հիմքերի վրա ցեմենտել ժողովուրդների բարեկամությունը և վերջ տալ ամեն տեսակ ազգամիջյան խռովություններին։ Անդրկովկասը հանդիսացավ ազգային հարցի լենինյան լուծման մի վառ ապացույց ողջ աշխարհի առջև։

ԱԴՈՅԱՆ Ա. Գ.

# ՊՐՈԳՐԵՍԻ, ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՀՈՒՆՈՎ

(ՍՍՀՄ յոթերորդ գումարման Գերագույն սովետի 1968 թ. չորրորդ սեսիայի առթիվ)

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության անկապտելի ու պատմական նշանակություն ունեցող հասույթներից են նաև ՍՍՀՄ-ում կնոջ վերջնական ազատագրումը, ամուսնա-ընտանեկան նոր հարաբերությունների արմատավորումն ու բարգավաճումը։ Համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում կնոջ և տղամարդու ամուսնա-ընտանեկան կապերի հիմքում դրվեցին վեհ գաղափարներով տոգորված սոցիալիստական սկզբունքներ։

Բոլոր ժողովուրդների ազատագրական մաքառումներում կանայք խոշոր դե՛ր են խաղացել։ Առանց նրանց մասնակցության,— ասում էր Լենինը,— մեր հեղափոխությունը հազիվ թե հաղթեր։ Իրականում ընտանիքի պատմության հենքը որոշ առումով իգական սեռի անլուր տառապանքների և ոգորումների թելերից էր հյուսված։ Մինչև այսօր կապիտալիստական երկրներում փաստորեն կանայք իրավազուրկ են, կեղեքված ու նվաստացած։ Ահա թե ինչու նրանց պայքարը հանուն էմանսիպացիայի տակավին շարունակվում է։

Սակայն բուրժուական աշխարհի դարավոր պատմությունը վկայում է, որ կանանց լիակատար ազատագրումը հնարավոր է միմիայն սոցիալիզմի հաղթության պայմաններում։ Կապիտալիստական առաջավոր երկրների կանայք մեկ դարից ավելի համառ պայքարել են իրենց իրավահավասարության համար։ Եվ ի՞նչ. ոչ մի երկրում այդ հարցը արմատապես չի լուծվել։ Միայն սոցիալիզմի երկրներում է, որ այն հանվել է հասարակական կյանքի օրակարգից, որովհետև մեկընդմիշտ լուծվել է։

Բանն այն է, որ բուրժուազիայի տիրապետության օրոք կանանց շարժումը ևս իր վրա կրում է նրա գաղափարաբանության դրոշմը։ Կանանց ազատագրությանը նվիրված շատ մունետիկներ, ըստ էության, թույլ սեռի աշխարհում հանդիսացել են այդ իսկ բուրժուազիայի պատգամախոսները՝ անկախ իրենց սուբյեկտիվ երազանքներից։

Անկասկած, իրավացի էր Լենինը, երբ ասում էր, որ սեռերի լիակատար հավասար իրավունք մինչև այսօր չի տվել և ո՛չ մի, նույնիսկ ամենապրոգրեսիվ հանրապետական, դեմոկրատական, բուրժուական պետություն։ Կնոջ լիա-

կատար ազատագրման և տղամարդու հետ նրա իրական հավասարության համար հարկավոր է, որ տնտեսությունը լինի հանրային, և կինը մասնակցի արտադրողական աշխատանքին։ Այս դեպքում միայն կինը կունենա այնպիսի վիճակ, որպիսին տղամարդն ունի։ Այս ճշմարտությունն արևի լույսի պես պարզ դարձավ, երբ պատմությունը թևակոխեց սովետների հաղթության դարաշրջանը։ Որ կանանց վիթխարի ջանքերը հանուն իրենց ազատության խիստ աննշան և ոչ էական արդյունքներ են տվել բուրժուական աշխարհում, դա կարելի է տեսնել պատմական թեկուզ մի հպանցիկ ակնարկով։

## ՊԱՏԱՌԻԿՆԵՐ ՀԱՐՑԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Տակավին անցյալ դարի կեսերին կանանց ազատագրական առաջընթաց ոգորումներին համընթաց և ի հակակշիռ, Արևմուտքում ծայր առավ ֆեմինիստական (կանանց) շարժումը, որի կազմակերպիչներն ու տեսաբանները հավատացած էին, թե մնալով կապիտալիստական կարգերի շրջանակներում, կարող են իգական սեռի ներկայացուցիչներին լիովին ազատել ճնշումից ու կեղեքումից։ Ֆեմինիզմի քարոզչական ու պրակտիկ գործունեությունն ամենուր ելնում էր էվոլյուցիոն ճանապարհով հասարակական կյանքում կանանց վիճակը բարեփոխելու մտածելակերպից։ Նրա ազդեցիկ գործիչների համոզմամբ, կանանց նվաստացուցիչ տառապանքների գլխավոր արմատը հարկ է որոնել մարդկանց բարոյա-հոգեբանական արատավոր հակումների ու սովորույթների, այլ ոչ սեփականության բուրժուական համակարգում։

Այսուամենայնիվ, նախորդ հարյուրամյակում այդ շարժման ներկայացուցիչները սայլը տեղից առաջ մղելու նպատակով շատ ջանքեր վատնեցին, թեև մեծ արդյունքի չհասան։ Միջազգային բանվորական շարժման պրակտիկան շուտով հերքեց, ըստ էության, բուրժուական այդ մոլորությունները, ապացուցելով, որ կանանց ազատագրումը կարող է հաղթանակով պսակվել, որչափով համընկնում է պրոլետարիատի դասակարգային ազատագրական կռվին։ Արևմուտքում դանդաղ ծավալվող ֆեմինիստական գործելակերպի որոշ ջատագովներ ևս ժամանակին նկատեցին, որ իգական սեռի ազատության հարցը հարյուրավոր անտեսանելի թելերով կապված է ողջ հասարակական կյանքի սոցիալ-տնտեսական հիմքերին։ Ոմանք էլ պարզապես նշմարեցին, որ կնոջ ազատագրման շեփորականչերը շոշափելի արդյունք չեն տալիս, որովհետև այդ շարժումը ներքուստ թերարյուն էր, հարցը՝ անլուծելի։

Ֆեմինիզմի ճգնաժամը ցայտուն դրսևորվեց նրա կարկառուն գաղափարախոսներից մեկի՝ շվեդուհի Էլլեն Քեյի աղմուկ հանած մի քանի աշխատություններում[1], որոնք համակված էին բարեշրջման գաղափարներով, թեև նա առավել նուրբ, համեմատաբար լուրջ ու համակողմանի էր արծարծում կնոջ ազատագրման կենսական խնդիրները։ Իր աշխատություններում Քեյը ներկայանում է որպես նորարար և զտարյուն էվոլյուցիոնիստ, որի կարծիքով ամուսնությունը հասարակական կյանքի երբևէ հարուցած ամենաբարդ, նրբագույն և ամենաբովանդակալի երևույթներից է։ Մարդկային գոյության այլ իրողությունների պես ամուսնական հաստատությունը ևս ենթակա է աստիճանական կատարելագործման ունիվերսալ օրենքին։ Բանականության օգնությամբ կարելի է հաղթահարել սեռի պահպանման ասպարեզում ծագող

[1] *Эллен Кей,* Век ребенка, М., 1906. Любовь и брак, П., 1807. Личность и красота, СПБ. Очерки. М., 1907.



հակասությունները, ասում է Քեյը։ Այդ միջոցով, ժամանակի հասարակական ընդհանուր պրոգրեսի թելադրանքով, վաղ թե ուշ կանհետանան նաև սիրո ոլորտում իշխող կաշկանդիչ սահմանափակումները։

Իսկ ինչպիսի՞ դեղատոմս էր տալիս Քեյը բուրժուական հիվանդ ընտանիքին. «Հարցի գիտական իմացությամբ և անտիկ աշխարհի մարդու մարմնի ուժին ու գեղեցկությանը երկրպագելով», որպես թե հնարավոր է կանխել ամուսնական «պալատի» փլուզումը։ Քեյի կարծիքով, հասարակության առաջխաղացման համար, մանկածնությունից բացի՝ կնոջ որևէ այլ գործունեություն վնասակար է։ Իսկ եթե պահպանվում է կնոջ այդ «սրբազան» դերը, ապա ազնվանում է ցեղը, և անշեղ կիրառվում բնական ընտրության օրենքը։ Ահա թե որն էր ֆեմինիզմի ականավոր տեսաբան Քեյի նպատակակետը։

Ինչպե՞ս, ի՞նչ եղանակով կամ մեթոդով հասնել այդ նպատակին։ Ֆեմինիստներն ի վերջո ձգտում էին կնոջը վերադարձնել ամուսնու ընտանեկան օջախը՝ որպես դրա պահապան և զավակների հարգարժան մայր, որպեսզի նա չդառնա հասարակական գործիչ, չխախտի անցյալի աշխատանքի բաժանումը սեռերի միջև, շարունակի մնալ ընտանեկան «պալատի» սիրարժան թագուհի։ Այլ կերպ ասած, հասարակությունը տղամարդու ասպարեզն է, իսկ տունը՝ կնոջ։ Ակներև է, որ այդպես խորհող մարդիկ անտեսում էին այն իրականությունը, ուր կապիտալիզմը վաղուց կնոջը ներգրավել էր տնտեսական-հասարակական կյանքի տարբեր ոլորտները և միաժամանակ նրան զամել ընտանեկան մահճին ու տնային խոհանոցին։

Հիրավի, այն ըմբռնումը, որը ճգնում էր կանանց ազատագրումն անջատել աշխատանքի ազատագրումից, այն վերածել իբրև առանձին և ինքնակա հարց՝ կանխավ խնդիրը դարձնում էր անլուծելի, որովհետև այն զերծ էր սոցիալ-պատմական կռվաններից։ Քեյը գոհ չէր, որ արտատնային գործունեությունն ի վերջո կոչված է բավարարելու կնոջ ստեղծագործական, քաղաքացիական, նյութական և հոգեկան անկախության ձգտումները, որոնք երբևէ կարող են դառնալ նրա գլխավոր նպատակակետը։ Կինը մայր է և միայն մայր,— պնդում էր Քեյը,— նրա կատարած մյուս գործերն աղարտում են կնոջ բնատուր հատկությունները, մարդկությանը մղելով դեպի կործանում։ Ո՛չ թե հասարակական անձնավորություն, այլ միայն մանուկների մայր։ Ո՛չ թե քաղաքացի և հասարակության լիիրավ անձ, այլ նոր դարի սպարտուհի։ Սա էր ֆեմինիզմի սևեռուն գաղափարը։ Չկարողանալով հասկանալ կանանց ազատագրական ձգտումների բուն շարժառիթները, ֆեմինիստները կարծում էին, թե «արարչական ակտով» է սահմանված կնոջ տառապանքը։ Ուստի և պատահական չէ, որ նրանցից շատերը կանանց վշտերի սփոփման լավագույն միջոցը Սուրբ գրքի ընթերցումը և կրոնական դաստիարակությունն էին համարում։

Հակառակ ընտանիքի դարավոր առաջընթացի գլխավոր նկրտումի Քեյը կարծում էր, թե ընտանեկան հավատարմությունը կոչված է ոչնչացնելու մարդու անհատականությունը։ Բացառելով հասարակական կոլեկտիվի խոշորագույն դերը մատաղ սերնդի դաստիարակության բնագավառում, նա չկարողացավ գնահատել նաև սեռերի փոխհարաբերությունների ոլորտում տեղ գտած ամուսնական հավատարմությունն իբրև մեծագույն բարոյական պրոգրես։ Հետևաբար, տարօրինակ չէ, երբ ֆեմինիզմի երևելի ազդարարը գրում էր, թե ժուժկալությունը և ասկետությունն ընտանեկան կյանքում կործանարար են հասարակության համար։ Մինչդեռ սովետական ընտանիքի կեսդարյա զար-

ցացումը կատարելապես հերքել է տիպիկ բուրժուական այդ բանդագուշանքը։

Դեռևս մեր դարասկզբին հայտնի դարձավ ֆեմինիստական շարժման կատարյալ ֆիասկոն Արևմուտքում, քանի որ նրա էությունն ու նպատակները կապիտալիզմին ճամակերպվելն էր և ոչ նրա տապալումը։ Ահա թե ինչու տարիների ընթացքում այդ շարժումը լիովին փարեց բուրժուական կարգերի պաշտպանության դրոշին, հրաժեշտ տալով ազատության և հավասարության վերաբերյալ երբեմնի իր հեղափոխական կոչերին։ Ուստի, իրավ էր ականավոր կոմունիստ ու կանանց ազատագրական պայքարի կարկառուն վետերան Կլարա Ցետկինը, երբ ասում էր, որ պատմական ասպարեզ իջնելիս ֆեմինիստները առաջադիմական էին և որոշ երկրներում ժամանակի ոգու համաձայն նրանց ելույթներն ուղեկցվում էին հեղափոխական գործողություններով ու ժեստերով։ Բայց դա չպետք է հիմք ծառայի շփոթելու կանանց շարժման երկու հիմնական հոսանքները՝ բուրժուական և պրոլետարական։

Հայ իրականության մեջ ևս անցյալ դարի երկրորդ կեսին ծայր առավ ֆեմինիստական շարժումը, որում ակներև են հակասական և իրենց հիմքում խիստ բուրժուական հայացքներն ու ձգտումները։ Գրիգոր Զոհրապի նման առաջավոր գրող և հասարակական գործիչը Քեյի պես այն հայացքն էր դավանում, որ կինը պետք է հետևի իր բնական կոչմանը, նա այս աշխարհում ոչ այլ ինչ է, քան մի անիծյալ տարր, որի միակ դերը մայր ու կին լինելն է։

Իր վեպերում և հրապարակախոսական հոդվածներում հայոց ֆեմինիզմի երևելի ներկայացուցիչ Սրբուհի Տյուսաբը միանգամայն իրավացի էր, երբ կնոջ ազատությունը խարսխում էր նրա հանրօգուտ աշխատանքի վրա, կոչ անելով հայուհիներին՝ դուրս գալ ընտանիքի սահմաններից և սեփական քրտինքով կյանքի միջոցներ հայթայթել։ Խրախույս կարդալով հարուստ հայուհիներին, նա խորհուրդ էր տալիս մշտապես կարեկցել աղքատներին, համոզված լինելով, որ ազգի վերածնունդը և փրկությունը կարող է գլուխ գալ բարոյական կատարելագործմամբ։ Հորդորելով հայ կանանց՝ չարհամարհել աշխատանքն ու աղքատությունը, Տյուսաբը թշվառ ընկերուհիներին ուսուցում էր՝ փառավորվել զրկանքներով, ինչպես հարուստն է փառավորված իր վայելքներով։ Աղքատները կյանքի դառնությունը կարող են մեղմել միայն աշխատանքով և այդ ճանապարհով բարելավել իրենց հասարակական վիճակը, մուտք գործեն լայնածավալ ազատության ասպարեզ, որտեղ մարդկության վիճակն անխտիր կազնվանա ու կբարձրանա (տե՛ս «Մեղու Հայաստանի», № 16, 1882 թ., Թիֆլիս)։

Ծառանալով խավարի, տգիտության և անսեր ընտանիքի դեմ, հայ ֆեմինիստներն իրենց եվրոպական համախոհների պես իգական սեռի ազատագրումը հնարավոր էին համարում կրթության, բարոյական դաստիարակության և լավագույն դեպքում՝ նրանց վարձու աշխատանքի կոչելով։ Այլ կերպ ասած, ֆեմինիստական շարժումն իր էությամբ ոչ այլ ինչ էր, եթե ոչ բարեփոխության, կապիտալիզմի ամենակուլ երախից ժամանակից շուտ դուրս ցատկելու հուսահատական մի ճիչ։ Սա չի նշանակում, իհարկե, թե հայ իրականության մեջ ևս այդ ջանքերը դրական դեր չխաղացին կանանց ազատագրման առաջընթացում։

Ռուսական ֆեմինիստական շարժման յուրահատկությունն այն էր, որ նրա դեմ գրեթե սկզբից ևեթ հաջող պայքար ծավալեց ՌՍԴԲԿ, որի շնորհիվ ռուսական հեղափոխական շարժման վերելքը ֆեմինիստական շարժման վայրէջքի գլխավոր պատճառը դարձավ։ Կանանց ազատագրական ձգտումնե-



րը Ռուսաստանում դեռ անցյալ դարի վերջին համընկան պրոլետարական քաղաքական կռվի ընթացքին։ Բանվոր դասակարգի հերոսական պայքարում ցարական Ռուսաստանի կանայք ինքնազոհության բազում օրինակներ տվին. նրանք ամենուր քաղաքական մարտերի առաջաբեմում էին։ Լենինի գլխավորած բոլշևիկյան կուսակցությունը Հոկտեմբերյան հեղափոխության բոցերի մեջ նետվեց՝ անձնազոհ և տաղանդավոր կին գործիչների մի փայլուն սերնդով։

## ՍԱՐՆ Ի ՎԵՐ

«Աստվածային էրոսի» պաշտամունքն է եղել և այսօր էլ մնում է, այսպես կոչված, ազատ սիրո բուրժուական հասկացողության բուն հիմքը։ Եվ ամենևին պատահական չէ, որ «ազատ սիրո» այդ քարոզն ավելի քան մեկ դար լուսատտիկի պես հմայում էր կանանց շարժման միլիոնավոր մասնակիցների։ Սակայն պրոլետարական շարժման ղեկավարները, հանձինս Լենինի, ժամանակին նշեցին, որ «ազատ սիրո» բուրժուական քարոզն իրականում զերծ է մեծ սիրո զգացմունքից և ինքնին ամուսնական անհավատարմության օրինականացումն է։ Կյանքը և համաշխարհային գրականությունը հազարավոր օրինակներով ապացուցել են լենինյան այդ մտքի ճշմարտացիությունը։

Ինեսա Արմանդին գրած նամակներում նա պարզորոշ ասաց, թե մենք, կոմունիստներս, ժխտում ենք «ազատ սիրո» բուրժուական ըմբռնումը, որն ընտանիքի ոլորտից բացառում է սիրո լրջությունը, մանկածնությունը և անվերապահ ազատություն է տալիս ադյուլտերին։ Սիրո ազատության բուրժուական այդ գռեհիկ հասկացությանն ու պրակտիկային Լենինը հակադրեց՝ «քաղաքացիական ամուսնություն սիրով հանդերձ»։ Այո՛, նա կշտամբելով Արմանդին, որը չէր զանազանում սիրո բուրժուական և պրոլետարական ըմբռնումները, խորհուրդ էր տալիս գրվող բրոշյուրում «քաղքենիական-ինտելիգենտական-գյուղացիական, գռեհիկ, սիրազուրկ ամուսնությանը հակադրել պրոլետարական-քաղաքացիական ամուսնությունը սիրով հանդերձ» (հ. 35, էջ 184—190)։

Հիրավի, կանգնելով իշխանության գլուխ, պրոլետարիատը շարունակում է հար և անվերջ զարգացնել ու կատարելագործել իր ընտանեկան հաստատությունը, որն սկզբնավորվել է բուրժուական հարաբերությունների գերիշխանության պայմաններում։ Ելնելով պատմության մատերիալիստական հասկացողությունից, մարքսիստները միշտ նշել են, որ մենամուսնական ընտանիքի բարձրագույն ձևը՝ սոցիալիստական ընտանիքը, չի առաջացել ինչ-որ մի դատարկ տարածության մեջ, այլ խարսխված է բուրժուական կարգերում կազմավորվող պրոլետարական ընտանիքի հենասյուներին։ Մարքսիստներն ընտանիքի հարցն ուսումնասիրում են մեկնելով ոչ թե նրա վերացական հասկացությունից, այլ առկա էմպիրիկ փաստերից։ Քննադատելով ընտանիքի պրոբլեմի բուրժուական ասպեկտը, Լենինը բազմիցս ընդգծել է, որ հասարակական այդ հաստատությունը փոփոխական է իր ձևերով։ Նա ամբողջ սովետական ամուսնա-ընտանեկան հարաբերությունների կարգավորման օրենքների հիմքում դրեց մարքսիստական այն ծրագրային ըմբռնումը, թե մասնավոր սեփականության սկզբունքը «զարգացման իր բարձրագույն աստիճանին հակասում է ընտանիքի սկզբունքին»։

Այստեղ պետք է որոնել ընտանիքի ու սիրո պրոբլեմները հետազոտող բուրժուական տեսաբանների սխալների ու մոլորությունների աղբյուրը։ Բոլոր

նրանք, ովքեր որոնում են կատարյալ մենամուսնություն մասնավոր սեփականության հիմքերի վրա՝ ձախողում են, որովհետև չեն ըմբռնում այն խսկությունը, որ ամուսինների, զավակների ու ծնողների, հարազատների փոխհարաբերությունների միջև եղած տմարդության միակ ու անսասան հիմքը մասնավոր սեփականությունն է։ Ահա թե ինչու աշխարհում գոյություն ունեցող ընտանետիպերից բարձրագույնը սովետականն է, որի ոլորտում առաջին պլանի վրա է դրված ընտանիքի սպառողական և ոչ թե տնտեսական ֆունկցիան։ Ամուսնաընտանեկան իր հաստատությունն խարսխելով հանրային սեփականության հիմքերի վրա, հաղթանակած պրոլետարիատը շարունակում է կատարելագործել այդ հարաբերությունները, նպատակ ունենալով մեկընդմիշտ վերացնել սեփականատիրության հետքերն ընտանեկան կյանքից։

Չնայած այն հանգամանքին, որ բուրժուական հեղափոխություններից դարեր են անցել, բայց այսօր էլ կապիտալիստական աշխարհի ընտանեկան բարքերը մնում են դրամական կեղտաջրով ցողված։ Գնալով ավելի նուրբ մեթոդներով և եղանակներով է շահագործվում կանանց ու պատանիների աշխատանքը։ Երբեմնի ակնբախ իրավական անհավասարությունը սեռերի միջև այժմ արտահայտվում է միևնույն աշխատանքի համար կանանց անհամեմատ պակաս վճարով, նրանց աշխատանքի ու ապրուստի անմխիթար պայմաններով, ընտանեկան հարաբերություններում ամուսնու գերիշխանության պահպանմամբ, կանանց մարմնի ծպտյալ և բացահայտ վաճառքով, ապահարզանի արգելումով կամ դրա կիրառումն ի չիք դարձնելով, դեռահասների շահագործմամբ և այլն, և այլն։

Բնորոշ է, որ այժմ Ավստրիայում, որտեղ կինն իրավունք ունի ընտրվելու պառլամենտի դեպուտատ, ամուսինն իրավունք ունի խափանելու կնոջ այդ քայլը. առանց ամուսնու համաձայնության կինը դեպուտատ լինել չի կարող։ Իսկ եթե կին-դեպուտատը առարկի ամուսնուն, վերջինս, 1811 թ. օրենքի համաձայն, իրավունք ունի ապահարզանել կնոջը։

Այսօր գործող ֆրանսիական քաղաքացիական կոդեքսի 213 և 216 հոդվածների համաձայն, ընտանիքի գլխավորը տղամարդ ամուսինն է։ Իսկ 223-րդ հոդվածը կնոջն արտոնում է զբաղվել արտատնային գործունեությամբ, երբ ամուսինը չի առարկում. կնոջ անհամաձայնությունը տվյալ դեպքում իրավական ուժ չունի։ Ավելին, այդ կոդեքսի համաձայն, կնոջ ամուսնական դավաճանությունը համարվում է ոչ միայն իրավախախտում, որին հետևում է ամուսնալուծությունը, այլև հիմք է տալիս տղամարդուն քրեական պատժի ենթարկել դավաճան կնոջը և պահել կալանյալ՝ ուղղիչ տանը։ Իսկ եթե դավաճանում է ամուսինը, տուգանվում է այդ հանցանքի համար միայն այն դեպքում, եթե այդ արարքը կատարվել է սեփական տանը։

Երեք տարի առաջ հրապարակված անգլիական օրենքով, եթե ամուսինը կնոջից բաժանվում է դավաճանության պատճառով, ապա նա իրավունք ունի դատական պատասխանատվության կանչել նաև իր կնոջ հանցակցին, որից դատարանը բռնագանձում է «ամուսնական անհավատարմության պատճառած ծախսերը»։ Մինչդեռ, երբ կինն է ապահարզանում ամուսնուն դավաճանության պատճառով, ամուսնու հանցակիցը դատարան է կանչվում միայն վերջինիս հայեցողությամբ։

Իտալիայում, Իսպանիայում, Արգենտինայում, Բրազիլիայում և Հարավային Ամերիկայի մի շարք երկրներում մինչև օրս չկա ապահարզանի իրավունք։ Իսկ այն երկրներում ուր այդ իրավունքը կա, կիրառվում է առ առավել դրամական շահից ելնելով։ Փոխվել են երբեմնի իրավազրկության ու կեղեքման որոշ ձևեր, սակայն էությունը նույնն է մնացել, հատկապես կանանց համար։



Ավելորդ չի լինի վկայակոչել մի իրողություն, որը վառ լույս է սփռում ԱՄՆ-ի ընտանեկան բարքերի վրա։ 1966 թ. «Правда» թերթը 29-րդ համարում հրապարակեց սեփական թղթակից Բ. Ստրելնիկովի Երիցս խելակորույս աշխարհ ցնցող հոդվածը։ Ամերիկյան մամուլը դրամ վաստակելու մոլուցքից դրդված, ամիսներ շարունակ անդրադարձել է այդ նողկալի իրադարձությանը։ Երիտասարդ կոմպոզիտոր Ֆրեդ Հանթերը ամուսնացած էր Թեննեսի նահանգի անտառարդյունաբերողի այրի միլիոնատեր տիկին Բարբարայի հետ։ Վերջինս հիվանդ էր, սոսկալի խանդոտ և տասը տարի մեծ իր ամուսնուց։ Կոմպոզիտորը սիրում էր մի երիտասարդ պարուհու, որից զավակ ուներ։ Իր խոստման համաձայն, տիկին Բարբարան մեռնելիս ողջ ունեցվածքը կտակել էր Ֆրեդին, միայն մի պայմանով՝ եթե վերջինս համաձայներ ամորձատվել։ Կոմպոզիտորի համար դա ծանր հարված էր ու երազների կործանում... Նա խնդրեց եղբորն իր փոխարեն վիրահատության սեղանին պառկել՝ կտակված գումարի 15 տոկոսը ստանալու պայմանով։ Եղբայրը մերժեց, պահանջելով 30 տոկոս։ Ֆրեդը շուտով խելագարվեց... Այս և նման խելակորույս ողբերգությունները բնորոշ են ժամանակակից բուրժուական աշխարհին։

Բարոյալքված և հյուծված բուրժուական ընտանիքին Լենինը հակադրում էր քաղաքացիական ամուսնություն՝ հիմնված փոխադարձ սիրո կամավոր սկզբունքի վրա։ Ընդգծելով, որ միայն կոմունիզմն է անսասան հիմքեր ապահովում կատարյալ մենամուսնության ու մարդկանց զարգացման համար, նա Ցետկինի հետ ունեցած զրույցում հետևյալն է ասել.

> «Պատերազմների հետևանքներից և սկսված հեղափոխության մթնոլորտում կործանվում են գաղափարական հին արժեքները, կորցնելով իրենց կապողական ուժը։ Մինչդեռ նոր արժեքները դանդաղաբար և պայքարով են բյուրեղանում։ Մարդկանց, կնոջ և տղամարդու փոխհարաբերությունների վերաբերյալ եղած հայացքները հեղափոխականանում են, միաժամանակ հեղափոխականանում են նրանց կգացմունքները և մտքերը։ Անձնավորության ու կոլեկտիվի իրավունքների, ինչպես և անձնավորության պարտականությունների միջև հաստատվում են նոր եկրեր։ Դրա անհետացումն ու երկունքը հաճախ խիստ դանդաղ և հիվանդագին պրոցես է։ Այս ամենը վերաբերում է նաև սեռական ու ամուսնա-ընտանեկան հարաբերություններին։ Բուրժուական ամուսնության փլուզումը, նեխումն ու կեղտը, իր դժվար լուծարելիությամբ, ամուսնու պատությամբ և կնոջ ստրկությամբ, սեռական մորալի ու հարաբերությունների նողկալի կեղծությունը լավագույն մարդկանց խոր գարշանքի կգացմունքն են հարուցում» (Воспоминания о В. И. Ленине, т. 2, М., 1957, стр. 482)։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում արմատապես վերափոխեց ամուսնա-ընտանեկան հաստատությունը, այն կառուցելով սոցիալ-տնտեսական բոլորովին նոր հիմքի վրա։ Եվ ահա կես դար է, ինչ ամրանում ու կատարելագործվում է այդ հաստատությունը, որպես կառուցվող կոմունիստական աշխարհի կենսունակ հասարակական բջիջ, իբրև սեռերի փոխադարձ կապերի երբևէ գոյություն ունեցող բարձր հանրաձև, որում ներդաշնակված են մարդկանց անձնական ու հասարակական շահերը։

Լենինի ստորագրությամբ սովետական իշխանության հրապարակած երկու հիմնադիր դեկրետներով (1917 թ. դեկտեմբերի 18-ին և 19-ին) մեր երկրում սահմանվեցին քաղաքացիական ամուսնության և նոր ընտանիքի գոյության նախապայմաններ, միանգամայն նոր սկզբունքներով, որոնք հանգում են հետևյալին.

ա) ամուսնության պարտադիր օրինական ձևը համարվեց միայն քաղաքացիականը, իսկ եկեղեցականը՝ մասնավոր գործ, բ) ամուսնության բոլոր սահմանափակումները համարվեցին չեղյալ և մոնոգամիան ճանաչվեց որպես սովետական ամուսնության հիմք, գ) ամուսնացողների լիակատար իրավահավասարությունը դարձավ նրանց դաշինքի հիմքը, միաժամանակ հավասար իրավունքներ ապահովելով օրինական և «ապօրինի» զավակների համար, դ) ամուսնության ազատություն՝ կողմերի ցանկությամբ, ե) ծնողների պարտականությունների սահմանումը անչափահաս զավակների նկատմամբ և վերջիններիս իրավունքների երաշխավորությունը՝ մինչև աշխատունակ դառնալը, զ) ապահարզանի իրավունք երկուստեք։

Վ. Ի. Լենինի անմիջական մասնակցությամբ մշակված այս սկզբունքները այսօր էլ մնում են որպես սոցիալիստական ընտանիքի անկասելի հիմքերը։ Այս առումով սովետական ընտանիքի զարգացման առանձին փուլ նշանավորեց ՍՍՀՄ Գերագույն սովետի ընթացիկ տարվա հունիսյան սեսիան, որն ի թիվս կարևոր այլ հարցերի, քննարկեց ու հաստատեց «ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների՝ ամուսնության ու ընտանիքի օրենսդրության հիմունքները»։

Ինչպես իրավացիորեն նշեց սովետական պարբերական մամուլը, այդ նոր օրենսդրական ակտը վաղուց հասունացած պահանջ էր սովետական քաղաքացիների համար։ Եվ պատահական չէ, որ նրա հաստատման նախօրյակին շուրջ երկու ամիս այն դարձավ համաժողովրդական քննության առարկա։ Բնորոշն այն է, որ տասնյակ հազարավոր սովետական քաղաքացիներ իրենց առաջարկություններով, նամակներով ու հոդվածներով արտահայտեցին՝ մեծ հոգատարություն սովետական ընտանիքի ամրապնդման, սեռերի փոխադարձ հարաբերությունների կատարելագործման և մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության նկատմամբ։

Հանդիսանալով սոցիալիստական հասարակության հաստատուն բջիջը, սովետական ընտանիքը մեր դարի երկրորդ կեսում թևակոխեց բարգավաճման մի նոր փուլ, որի անցյալի նվաճումները օրինականացվեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի մատնանշված հունիսյան սեսիայի վճռով։ Օրենսդրական այդ կարևոր ակտն այսուհետև լինելու է մեր նոր ընտանիքի զարգացման գլխավոր ուղեցույցը։ Սույն թվականի հունիսի 30-ին հրապարակված այդ «Օրենսդրության հիմունքները» իրենց մեջ ընդգրկում են այն ողջ ռացիոնալը, որը կես դարի ընթացքում ծառայել է սովետական ընտանիքի կատարելագործմանը և զարգացմանը։

Որ սովետական ընտանիքը բարոյա-հասարակական իր էությամբ անհամեմատ բարձր է բուրժուական արդի ընտանիքից, դա խոստովանում են նույնիսկ բուրժուական մի շարք գաղափարախոսներ։ Ամերիկյան սոցիոլոգ է. Բոգարդուսը շեշտում է, թե ընտանեկան հաստատությունը, հատկապես այսօրվա ԱՄՆ-ում՝ խախուտ է։ Երբեք այնքան շատ օրինական ամուսնալուծություններ չեն եղել, ինչպես այժմ։ Ամենից շատ լուծարվում են հարուստների ընտանիքները, խոստովանում է նա։

Կարիք կա՞ հանգամանորեն շարադրելու այն ճշմարտությունը, որ անցած կես դարում (որն ընտանեկան կյանքի համար աննշան տևողություն է) սովետական ընտանիքի զարգացումը մշտապես խթանվել է աշխատավորության բարեկեցության աճի, նրա բնակարանային-կենցաղային պայմանների բարելավման և կուլտուրական հոգևոր կյանքի ծաղկման շնորհիվ։ Ո՞վ չգիտե, որ այն օրից ի վեր, երբ մայրության ու մանկության պաշտպանության, ինչպես և նոր սերնդի կրթության-դաստիարակության հոգսը դարձան համապետական՝ սովետական ընտանիքն սկսեց հին աշխարհի արատներից արագորեն ձերբազերծվել։ Պատմության մեջ առաջինը մեր երկրում հաջողվեց միլիոնավոր մայրերի արտադրահասարակական ֆունկցիաներն իրոք ներդաշնակել մարդկանց անձնական երջանկության ու վայելքների ձգտումներին։ Բարոյական վեհ գաղափարների, ծնողների փոխադարձ սիրո և հարգանքի, սեռերի կատարյալ իրավահավասարության ու փոխօգնության, նոր սերնդի խնամքի ու դաստիարակության պատասխանատվության հոգսով է տոգորված սովետական քաղաքացիների ամուսնա-ընտանեկան կյանքի կարգավորումը հետամտող նոր օրենքը։

Ամուսնության և ընտանիքի նոր օրենսդրությունը նպատակ ունի՝ ամեն կերպ նպաստել այն բանին, որպեսզի իսպառ վերանան ամուսինների, ինչպես և զավակների ու ծնողների միջև դեռևս առկա նյութական հաշվենկատության անցյալի մնացուկները, սեռերի անհավասարության փաստական հետքերը ու մատաղ սերնդի դաստիարակության բնագավառում մերթ աչքի զարնող վնասակար արատները։ Նոր Օրենքը կոչված է ավելի քան ամրապնդելու ամուսնա-ընտանեկան սովետական հաստատությունը և օգնելու մարդկանց պատվով կատարելու մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության կարևոր դերը։

Սահմանելով ամուսնության կոնկրետ պայմանները, նրանց անձնական իրավունքները, գույքային հարաբերությունների նորմերը, ալրուստային պարտականությունները միմյանց հանդեպ՝ Օրենքը հոդված առ հոդված սահմանում է քաղաքացիների պարտականությունների ու իրավունքների այն համակարգը, որի ճիշտ կիրառմամբ ավելի կհզորանա սովետական հասարակության բարոյական հիմքը։ Ամուսնության վերաբերյալ գրառված 10—15 հոդվածները լիովին մարմնացնում են կուսակցության և կառավարության այն մեծ հոգատարությունը, որը ցուցաբերում են նրանք սովետական քաղաքացիների բարօրության նկատմամբ։ Օրենքի նշված հոդվածները միաժամանակ կոչված են լիովին ապահովելու մատաղ սերնդի ֆիզիկական ու հոգևոր նորմալ զարգացումը, նրանց շահերի պաշտպանությունը։

Հետևողականորեն ներդաշնակելով սովետական քաղաքացու անձնական ազնիվ ձգտումները կոմունիզմի կառուցման վեհ խնդիրների հետ, նոր Օրենքը կոչված է առավել բարձր մակարդակով կարգավորելու ծնողների փոխադարձ, և ընտանիքի մյուս անդամների սոցիալ-տնտեսական ու բարոյա-կենցաղային հարաբերությունները։ «Օրենսդրության հիմունքները» տոգորված են այն մտահոգությամբ, որ սովետական քաղաքացիների ամուսնական և ընտանեկան կյանքը մշտապես հանդիսանա մարդկանց հասարակական գործունեության և կոմունիզմի քաղաքացու դաստիարակության առավել կայուն գոյաձևը։ Ոչ միայն դաստիարակությամբ, այլև անհրաժեշտության դեպ-

քում՝ հարկադրանքով մարդկանց ուսուցել ծնողական և որդիական իրավունքների ու պարտականությունների օրենքները չխախտելուն, որոնք նպատակ ունեն ամուսնա-ընտանեկան հարաբերություններն արդյունավետ կերպով ի սպաս դնել՝ նոր մարդու բազմակողմանի զարգացման, կոմունիզմի կատարյալ քաղաքացիներ պատրաստելու դժվարին և վեհ գործին։

Այստեղ հարկ է նշել «Օրենսդրության հիմունքների» 16—22 հոդվածների առանձնահատուկ նշանակությունը, հոդվածներ, որոնք պատշաճ հանգամանալիությամբ սահմանում են ներընտանեկան հարաբերությունների այն պեսպեսությունները, որոնց դրսևորման ընթացքում պետք է կանխվեն հնարավոր բախումները կամ վատթարագույն դեպքում՝ պատժեն օրինազանցներին, համոթ նրանց, ովքեր հակված են ոտնահարելու քաղաքացու օրինահաստատ իրավունքները։

ՍՍՀՄ Գերագույն սովետի հունիսյան նստաշրջանի հիշատակված օրենսդրական այս նոր ակտը, որն ինքնին մի պերճախոս վկայություն է սովետական ընտանիքի պրոգրեսիվ ընթացքի, մի անգամ ևս աշխարհին ի տես ցուցահանում է այն հումանիզմը, որով տոգորված է օրենքի յուրաքանչյուր հոդվածը, հօգուտ արդար և օրինակելի քաղաքացիների վարքագծի խրախուսման, ի վնաս բուրժուական ընչաքաղցության և դաժան էգոիզմի ոգով շաղախված հարաբերությունների մնացուկների։ Վեր է կասկածից, որ մեր հասարակության զարգացման ներկա փուլը նշանավորող այդ օրինական ակտը գալիս է մեծապես խթանելու կոմունիստական հասարակության առաջընթացը և արագացնելու նոր մարդու դաստիարակության բարդ գործը։

Ընտանիքն այն ոլորտն է, որում հին բարքերն ու սովորույթները դարբով են մնում։ Այս տեսակետից նայելով սովետական ընտանիքի կտրած հիսնամյա ճանապարհին, պետք է ասել, որ այն ընթացել և շարունակում է ընթանալ պրոգրեսի ու կատարելագործման հունով։

ՊԵՏՐՈՍՅԱՆ Տ. Վ.

Շախմատի աշխարհի երկակի չեմպիոն

# ՇԱԽՄԱՏԸ ԵՎ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

Ճշմարտության հարցը շախմատում ունի կարևոր նշանակություն։

Շախմատի մասին ստեղծելով մի ամբողջական տեսություն, որի հիմքում ընկած է այն դրույթը, թե շախմատային միտքը, շախմատային պարտիան ամբողջապես հիմնված է տրամաբանության վրա, Ստեյնիցը հատուկ նշանակություն է տալիս այն հարցին, թե որն է շախմատային սխալի էությունը։ Այս հարցին պատասխանել, նշանակում է՝ նախ բացահայտել շախմատային բուն ճշմարտությունը։ Շախմատային գրականության մեջ հաճախ են բերվում Ալյոխինի խոսքերը, որ շախմատային արվեստում ամենարժեքավորը՝ ճըշմարտության գեղեցկությունն է։

Որպեսզի ցույց տրվի, թե ինչպես է դրսևորվում ճշմարտությունը շախմատում, նշենք նրա բնույթի երկակի իմաստն արդի փիլիսոփայական գրականության մեջ։ Իմացաբանական տեսակետից ճշմարտությունը մտքերի համապատասխանությունն է օբյեկտիվ իրականությանը։ Սրանում է համապատասխանության տեսության էությունը, մի տեսություն, որն առաջադրվել է դեռևս հին աշխարհում, ցայտուն դրսևորվել Արիստոտելի մոտ և միևնույն ժամանակ դարձել ճշմարտության լուսաբանման ելակետը՝ դիալեկտիկական մատերիալիզմի իմացաբանության մեջ[1]։

Արդի բուրժուական փիլիսոփայության մեջ ճշմարտությունը հաճախ մեկնաբանվում է որպես համապատասխանություն, սակայն իբրև համապատասխանություն սուբյեկտիվ հոգեկան վերապրումներին, ծրագրերին, գործողություններին, ձգտումներին և այլն (տե՛ս մասնավորապես, Т. И. Хилл. Современные теории познания, М., изд. «Прогресс», 1965)։

Նման մեկնաբանությունը լինելով իդեալիստական, հիշատակված տեսության հետ մի ընդհանրություն ունի. երկու դեպքում խոսքը վերաբերում է մտքի համապատասխանության փաստական իրավիճակին, անկախ նրանից,

---

1 «Մետաֆիզիկայում» Արիստոտելը գրում է՝ «...իրավացի է նա, ով զատվածը համարում է զատված և միացածը՝ միացած. մոլորության մեջ է նա, ում կարծիքը հակադիր է իրական հանգամանքներին... Պետք է նկատի ունենալ, որ դու սպիտակ ես ոչ թե այն պատճառով, որ մենք քեզ իսկապես սպիտակ ենք համարում, այլ (հակառակը), որովհետև դու սպիտակ ես, մենք՝ այդ հաստատողներս, ճշմարիտ ենք» (Аристотель, Метафизика, М. А. Соцэкгиз, 1934, стр. 162)։

թե վերջինիս փիլիսոփայական ինչ իմաստավորում է տրվում: Ժամանակակից իմացաբանական հոսանքներում նման ճշմարտությունը կոչվում է փաստական կամ F (լատ. Factum—կատարվածը, փաստականը) ճշմարտություն: Միևնույն ժամանակ մենք հաճախ գործ ենք ունենում ճշմարտության մեկ այլ մեկնաբանման հետ, մեկնաբանություն, որի համաձայն մտքի ճշմարտությունը պայմանավորվում է տվյալ տրամաբանական համակարգի օրենքներով, նախադասության ձևական-տրամաբանական կառուցվածքով: Այսպիսի ճշմարտությունը կոչվում է տրամաբանական կամ L (հուն. logos—տրամաբանություն) ճշմարտություն: Ըստ էության վերջինս, որը գիտական շրջանառության մեջ է դրվել ժամանակակից փիլիսոփայության ոլորտում, դասական փիլիսոփայությունից հայտնի «կանոնավորություն» հասկացողությունն է[1]:

F ճշմարտության և L ճշմարտության տարբերությունը կարելի է մեկնաբանել նաև հետևյալ կերպ. F ճշմարտությունը որոշելու համար սկզբունքային նշանակություն ունի մեր մտքերի, նախադասությունների բովանդակությունը: Այդ ճշմարտությունը, այսպես ասած՝ բովանդակային կամ իմացաբանական է: Մինչդեռ L ճշմարտության համար որոշիչը մտքերի ձևն է: Այդ ճշմարտությունը ձևական բնույթ ունի:

Այսպիսի տարբերակումը որոշակի իմաստով պետք է համարել պայմանական: Նախ՝ այն պատճառով, որ L կամ տրամաբանական ճշմարտությունը, վերջին հաշվով, խարսխվում է բովանդակային, փաստական ճշմարտության վրա: Այն ինքնին նշանակություն ունի միայն որոշակի սահմաններում: Բացի այդ, նայած, թե ինչպիսի տեսանկյունից ենք մեկնաբանում ճշմարտությունը, փաստական ճշմարտությունը նույնպես կարելի է անվանել տրամաբանական: Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ Հեգելի հետ համաձայնելով, Լենինը ճշմարտության հարցը տրամաբանության հիմնական պրոբլեմն է համարում, ապա այդ դեպքում դիալեկտիկայի համակարգում պետք է խոսել փաստական և տրամաբանական ճշմարտության միասնության մասին, քանի որ, ինչպես Հեգելը, այնպես էլ Լենինը նկատի ունեն ճշմարտության բովանդակային ըմբռնումը՝ «Ոչ թե հոգեբանություն, ոչ թե ոգու ֆենոմենոլոգիա, այլ տրամաբանություն=ճշմարտության հարցը» (Երկեր, հ. 38, էջ 210):

Ճշմարտությունը շախմատում դրսևորվում է այն դեպքում, երբ խաղը տեղի է ունենում նախօրոք ամրագրված կանոնների համաձայն և հակառակը՝ ճշմարտությունը խախտվում է, երբ խախտվում է շախմատի այս կամ այն ձևական կանոնը: Այդ նշանակում է, որ շախմատային սխալ է կատարված: Քանի որ ճշմարտության հակադրությունը որոշակի իմաստով սխալն է, ուստի, դրա քննարկումը շախմատային գրականության մեջ հաճախ դրսևորվել է այն հարցի ձևով, թե որն է շախմատային սխալի էությունը: Պատահական չէ, որ Ստեյնիցը և Լասկերն առանձնահատուկ ուշադրություն են նվիրել շախմատային սխալի մեկնաբանմանը:

Շախմատում սխալի հետ գործ ունենք նախ այն դեպքում, երբ խախտում ենք նախապես ամրագրված որևէ կանոն: Ասենք, երբ արվում է այնպիսի

[1] «Նախադասությունը,— գրում է Լ. Վիտգենշտեյնը,— ճշմարտության իր պայմանների արտահայտությունն է» (Л. Витгенштейн. Логико-философский трактат, МЛ, 1958, стр. 57): Տե՛ս նաև „Semantics and the Philosophy of Language“, ed. by L. Linsky. The University of Illinois press at Urbana, 1952; Р. Карнап. Значение и необходимость, М., ИЛ; 1959, և այլն:



քայլ, որը չի նախատեսված շախմատային կանոնադրության համաձայն (օրինակ, սպիտակ դաշտից ձին կրկին տեղադրել սպիտակ դաշտի վրա): Իհարկե, այսպիսի սխալներ շախմատային պրակտիկայում վարպետների խաղում հազվադեպ են: Սակայն տեսականորեն դրանք չեն բացառվում:

Ինչպես շախմատային խաղի նախապես ամրագրված կանոնների պահպանումը ցույց է տալիս ճշմարտության դրսևորումը, այնպես էլ այդ կանոնների ամեն մի խախտումը՝ սխալն է կամ շեղումը շախմատախաղի ճշմարտությունից: Այնուհետև, ճշմարտությունը երևան է գալիս, երբ շախմատիստը կատարում է, այսպես կոչված՝ միակ հնարավոր քայլերը:

Հաղթել շախմատում, ըստ էության, նշանակում է՝ բացահայտել ճշմարտությունը: Համենայն դեպս, եթե մենք հարցին մոտենանք մատերիալիստական իմացաբանության տեսակետից, ապա հաղթությունն ու ճշմարտությունը շախմատում նույնն են, ինչպես մաթեմատիկական որևէ խնդրի լուծումը և այդ բնագավառում ճշմարտության բացահայտումը: Երբեմն շախմատում կարելի է հաղթել միակ հնարավոր քայլերի կատարումով, որովհետև ցանկացած այլ քայլերը հաղթանակ չեն ապահովի: Այսպիսով, երբ տեսականորեն ապացուցված է, որ հաղթանակ կբերեն միակ հնարավոր ճիշտ քայլերը, ապա դրանց կատարումն էլ հենց ճշմարտության յուրահատուկ դրսևորումն է: Եվ, հակառակը, շեղվելով միակ հնարավոր քայլերից, խախտում ենք ճշմարտության դրսևորումը:

Այս կապակցությամբ կարող են ծագել հետևյալ հարցերը. ինչպիսի՞ն է ճշմարտությունը, արդյոք այն տրամաբանակա՞ն է, թե՞ փաստական: Կարելի է որոշակի պնդել, թե քանի որ միակ հնարավոր քայլերը բխում են որոշակի ձևական կանոնների պահպանումից, ապա նման ճշմարտությունը տրամաբանական, L ճշմարտություն է: Պատահական չէ, որ նման դեպքերում հաճախ ընդունված է ասել՝ տեսականորեն հնարավոր է հաղթանակ կամ ոչ ոքի, կամ թե՝ տեսականորեն պարտությունն անխուսափելի է: Այդ նշանակում է, որ եթե մենք պահպանում ենք ձևական կանոնները և տվյալ իրավիճակում կիրառում միակ հնարավոր քայլերը, ապա պետք է որոշակի արդյունքի հասնենք կամ բացահայտենք ճշմարտությունը և, հակառակը, եթե խախտում ենք միակ հնարավոր քայլերը, ապա թույլ ենք տալիս այն, ինչ Ստեյնիցը շախմատային սխալ էր համարում:

Սակայն միշտ չէ, որ կարելի է հաղթանակի բերկրանքը վայելել կատարելով միակ հնարավոր քայլերը: Շախմատային պրակտիկայում հաճախ են լինում այնպիսի դեպքեր, երբ հաղթել կարելի է ոչ թե միակ հնարավոր, այլ մի շարք տարբեր ուղիներով, ընդ որում, դա յուրահատուկ է ո՛չ միայն շախմատին: Անգամ դպրոցական մաթեմատիկայից հայտնի է, որ միևնույն խնդիրը կարելի է լուծել տարբեր եղանակներով: Այլ բան է, թե որ եղանակն է ռացիոնալ կամ որը էսթետիկական տեսակետից ավելի հաճելի, ավելի ստեղծագործական:

Բացառված չէ այն, երբ կարելի է հաղթել միանգամայն տարբեր եղանակներով, որոնք գրեթե բոլոր տեսանկյուններից հավասարազոր են, հավասարարժեք: Երբ պահպանում ենք հաղթելու տեսականորեն ճիշտ եղանակները, բոլոր դեպքերում դրսևորվում է ճշմարտությունը:

Այն իսկությունը, երբ հաղթել կարելի է հավասարազոր կամ ընդհանրապես մի շարք եղանակներով, որոնք կարող են տարբերվել ոչ թե ճշմարտության հասնելու ձևով, այլ գեղագիտական և ուրիշ նկատառումներով, փիլիսո-

փայական տեսակետից ճշմարտության բացահայտման իմաստ ունի։

Շախմատում ճշմարտության դրսևորումներից է նաև այն, երբ պահանջվում է խաղալ շախմատային դիրքի ոգուն, դրանից բխող պահանջներին համապատասխան։ Շախմատային գրականության մեջ հաճախ տարբերակվում են՝ «շախմատային դիրքի ոգի», «շախմատային դիրքի ոգու պահանջներ» հասկացողությունները։ Շախմատային դիրքի ոգի ասելով նկատի ունենք խաղի ստրատեգիական ծրագիրը, իսկ շախմատային դիրքի պահանջներ ասելով՝ շախմատային դիրքից բխող տակտիկական ծրագրերը։

Ճշմարտությունը դրսևորվում է այն ժամանակ, երբ շախմատիստը պետք է խաղա կամ խաղում է շախմատային դիրքի ոգուն կամ դրանից բխող պահանջներին համապատասխան, ապա այստեղ, ըստ էության, ճշմարտությունն արտահայտվում է շախմատային ստրատեգիայի և տակտիկայի կանոնների պահպանմամբ։ Ճշմարտության նման մեկնաբանմանը հատուկ ուշադրություն է նվիրել Ստեյնիցը. նա գտնում էր, թե սխալը շախմատում շախմատային դիրքի ոգուց բխող կանոնների, պահանջների խախտման հետևանք է։

Նման մեկնաբանման դեպքում որոշակիորեն չի կարելի ասել, թե մենք գործ ունենք միայն խիստ ձևական կանոնների հետ։ «Շախմատային ոգին» բարդ ըմբռնում է, բարդ հասկացություն։ Այստեղ, իհարկե, պետք է նկատի առնել շախմատային խաղի բոլոր ձևական կանոնները։ Միևնույն ժամանակ, ասել, թե խաղում ենք շախմատային դիրքի ոգուն համաձայն, նշանակում է ոչ միայն պահպանել շախմատային խաղի բոլոր կանոնները, ստրատեգիայի և ծրագրի բոլոր պահանջները, այլև հաշվի առնել մի այլ կարևոր գործոն։ Այս դեպքում գործ ունենք նաև շախմատային դիրքի գնահատման հետ, որը միշտ չէ, որ կարելի է ներկայացնել խիստ ձևականացված եղանակով։ Հետևաբար, շախմատային ճշմարտության վերն արծարծված երկու ըմբռնումները տրամաբանական ճշմարտություններ են, և մենք գործ ունենք ճշմարտության այնպիսի ըմբռնման հետ, որտեղ միահյուսվում են ինչպես ճշմարտության տրամաբանական, այնպես էլ որոշ իմաստով փաստական իմաստները։

Ճշմարտությունը կոնկրետ է, վերացական ,բոլոր ժամանակների համար ընդհանուր ճշմարտություններ գոյություն չունեն։ Ճշմարտության էությունը բացահայտելիս պետք է նկատի ունենալ պայմանները, ժամանակն ու հարաբերությունները, որոնց առկայությամբ է դրսևորվում այն։ Ճշմարտության պրոբլեմի ուսումնասիրությունը ցույց է տալիս դիալեկտիկական մատերիալիստական դրույթի հավաստիությունը։ Ստեյնիցի և ապա Լասկերի բացահայտած շախմատային կանոնները, օրենքները, ըստ էության խիստ տրամաբանական են, դրանք չի կարելի բացարձակացնել։ Ամեն ինչ բխում է կոնկրետ իրավիճակում այդ օրենքների կիրառումից։ Այս հարցն իր թանձրացյալ լուծումն է գտնում շախմատային ճշմարտության այն մեկնաբանման մեջ, որն առնչվում է շախմատային դիրքի ոգու պահանջների գնահատման հետ։

Լասկերի մոտ հաճախ ենք հանդիպում հետևյալ արտահայտություններին՝ «կոմբինացիան ճշմարիտ է», «վարպետը ճիշտ չի հարձակվում», «ճիշտ է պաշտպանվում» կամ «սխալ է պաշտպանվում»։ Այստեղ և ամենուր Լասկերն ու նրա հետևորդները նկատի ունեն շախմատային դիրքի ոգին, դիրքի պահանջները, որոնք, վերջին հաշվով, հանգում են շախմատային դիրքի ճիշտ գնահատմանն ու խաղի ստրատեգիական և տակտիկական ծրագրերի իրագործմանը (տե՛ս Эм. Ласкер. Учебник шахматной игры, М., *1937*, էջ *152* և այլն)։



Ճշմարտության հարցը քննարկելիս, Լասկերն առաջին պլանի վրա է մղում շախմատային տրամաբանության օրենքների պահպանման խիստ անհրաժեշտությունը, օրենքներ, որոնք, վերջին հաշվով, ունեն ձևական-տրամաբանական բնույթ։ Եվ պատահական չէ, որ նա այդ հարցին անդրադառնալիս հաճախ օգտագործում է «կանոնավոր», «ոչ-կանոնավոր» հասկացությունները, գտնում, որ ասենք, տվյալ վերջավորությունը կանոնավոր է։ Սակայն պետք է նկատել, որ ճշմարտության մասնանշված վերջին ըմբռնումը ավելի բարդ է ու դժվար, թեև բացարձակ իմաստով այն կարելի է հանգեցնել միայն տրամաբանական ճշմարտության, քանի որ դիրքի գնահատման հարցում չպետք է առաջնորդվել միայն խիստ ձևական չափանիշներով, չնայած դրանք հույժ կարևոր նշանակություն ունեն։

Ճշմարտության պրոբլեմը փիլիսոփայական այն կարևոր հարցերից է, որոնք միշտ կրքեր են բորբոքել։ Պատահական չէ, որ շախմատային ճշմարտության մասին խոսելիս հանդիպում ենք տարբեր ըմբռնումների, որոնք ոչ միայն իրարամերժ են, այլև արտահայտում են փիլիսոփայական զանազան, երբեմն հակադիր հայացքներ։ Այս առումով ուշագրավ է շախմատային ճըշմարտության պրագմատիստական մեկնաբանումը։

Այդ է վկայում, մասնավորապես, անգլիական շախմատիստ Կլարկի գիրքը Տիգրան Պետրոսյանի լավագույն պարտիաներ խորագրով[1]։ Պարտիաների կոնկրետ քննարկմանը նախորդող Պետրոսյանը պրագմատիստ գլխում Կլարկը փորձում է պատասխանել այն հարցին, թե ի՞նչ է շախմատը՝ գիտությո՞ւն է, արվե՞ստ, թե՞ սպորտ։ Կանգ առնելով շախմատի զարգացման հիմնական հարցերի վրա, Կլարկը հանգում է այն եզրակացության, թե աշխարհի չեմպիոնը շախմատի մեջ ողջախոհություն է մտցրել։ Նա աշխարհի չեմպիոնի նվաճումն է համարում այդ, շախմատի տեսության մեջ նրա ներդրումը։ «Աշխարհի ներկայիս չեմպիոնը,— գրում է Կլարկը,— ենթադրում եմ, առաջ է անցել իր նախորդներից այն բանում, որ նա ավելի քան որևէ մեկը ըմբռնել է շախմատի և շախմատախաղի ճշմարիտ նշանակությունը» (P. H. Clarke. Petrosians Bets Games of Chess, P. *2*)։

Կլարկի կարծիքով աշխարհի չեմպիոնը պրագմատիստ է։ Նա փորձում է շարադրել մեր խաղի «պրագմատիստական» էությունը։ Կլարկը գտնում է, որ աշխարհի ներկա չեմպիոնը գործում է այնպես, ինչպես թելադրում են շախմատախաղի տվյալ դիրքի պահանջները, կոնկրետ իրավիճակը և երբեք չի հրաժարվում ոչ սովորական քայլերից, դիրքերից, եթե վերջիններս անհրաժեշտ են համարվում (տե՛ս նույն տեղը)։

Կլարկի պրագմատիստական բնութագրումը ոչ միայն չի համապատասխանում մեր խաղաոճին, այլ, ըստ էության, հակասում է։ Ի դեպ, շախմատախաղի պրագմատիստական ոճը Կլարկը համարում է շախմատի ապագան։ Նրա գրքի տեսական գլուխը վերջանում է Պրագմատիզմը ապագայում ենթաբաժնով։ Հեղինակը եզրակացնում է, որ շախմատի թագի հավակնորդները պետք է պրակտիկ հետևություններ անեն աշխարհի չեմպիոնի խաղաոճից, որ իրենք նույնպես դառնան պրագմատիստներ։ Այստեղից պարզ է դառնում, թե ինչպես գաղափարական պայքարը ներխուժում է անգամ այնպիսի բնագավառներ, որոնք առաջին հայացքից կարծես հեռու են ներգործման ոլորտից։

---

[1] P. H. Clarke. Petrosian's Besi Games of shess. 1946-1963· G. Bell and Sons Zld, 1944.

Սրա ապացույցը XIII միջազգային փիլիսոփայական կոնգրեսում ամերիկյան փիլիսոփաների առաջադրած՝ «Ինչպես է դիալեկտիկան դրսևորվում շախմատում»[1] հարցն է։ Այս ամենը վկայում է, որ արտասահմանյան որոշ տեսաբաններ ջանում են ապացուցել, որ եթե որևէ փիլիսոփայական ուղղություն իր կիրառումն է գտնում շախմատում, ապա այն պետք է լինի միայն պրագմատիստական։ Ամերիկյան բուրժուական գաղափարախոսների տեսակետով այդ ուսմունքը իր բացարիկ դրսևորումն է գտնում պրակտիկ կյանքի և տեսական մտքի բոլոր ասպարեզներում։

Անդրադառնալով Կլարկին՝ պետք է նկատել, որ նրա մեկնաբանություններին բնորոշ է հասկացությունների շփոթ, դրա համար նա պրագմատիստական է անվանում մեր խաղաոճը, որն, ըստ էության, որևէ առնչություն չունի պրագմատիզմի հետ։ Շախմատային դիրքի պահանջների կոնկրետ հաշվառքը և այդ դիրքից բխող քայլերի իրագործումը այն պահանջը չէ, որին պետք է տալ պրագմատիստական անվանում, այլ իրականության նկատմամբ դիալեկտիկական մոտեցման պահանջներից, դիալեկտիկական մտածելակերպից բխող եղանակ։

Ճշմարտության կոնկրետ բնույթին պրագմատիզմը հակադրում է շահը, ճշմարտությունն ի վերջո հանգեցնելով շահին։ Ճշմարիտ է համարվում այն, ինչ գործում է հօգուտ մեզ[2]։ Սակայն, քանի որ կեղծիքներն էլ որոշակի պայմանների դեպքում կարող են օգտակար լինել, ապա պրագմատիզմի տեսակետից, ըստ էության, ջնջվում են ճշմարտության և կեղծիքի տարբերությունները, նպատակին հասնելու միջոցները։

Գոյություն ունի՞ արդյոք շախմատում պրագմատիստական ոճ։ Այս հարցին պետք է տալ դրական պատասխան։ Երբ շախմատիստը ձգտում է հաղթել՝ խտրություն չդնելով միջոցների մեջ, երբ ջանում է հակառակորդին, խաղընկերոջը մոլորության մեջ գցել, և ամեն ինչ ծառայեցնել հաղթելու նպատակին կամ անարժան ձևով ոչ-ոքի անել, այս դեպքում շախմատիստի ոճը պրագմատիստական է, որը բխում է նրա աշխարհըմբռնումից։ Այս ոճի կոնկրետ դրսևորման ձևերից է որոշակի միտումով սխալ զոհաբերումը։ Շախմատում հայտնի են, այսպես կոչված՝ կոնկրետ, ոչ-կոնկրետ, կանոնավոր զոհաբերություններ։

Մաքս Էյվեն իրավացի է նշում, որ անհրաժեշտ է մեծ տարբերություն դնել կոնկրետ և ոչ-կոնկրետ զոհաբերությունների միջև, ավելացնելով, որ պոզիցիոն դիրքի շախմատիստների մեծ մասը զոհաբերության է դիմում, երբ դա բացարձակապես հիմնավորված է։ Զոհաբերությունը, երբ հիմնավորված չէ, չի բխում շախմատային դիրքի ոգուց, հակասում է ստրատեգիական և տակտիկական ծրագրերին, Լասկերն անվանում է ոչ-առողջ (տե՛ս Эм. Ласкер. Здравый смысл в шахматах, стр. 6)։ Իսկ ամերիկյան հայտնի շախմատիստ Ռուբեն Ֆայնը՝ նշված զոհաբերությունը համարում է ոչ-բնական (տե՛ս R. Fine. Psychoanalitic Odservations en chess and chess Masters.—«Psychoanalysis», 1956, № 3, p. 37)։

Զոհաբերությունները շախմատի պրակտիկայում շատ են ընդունված, ընդորում, ոչ միայն ճիշտ, կորեկտ զոհաբերությունները, այլև ոչ-ճիշտ։ Հաճախ շախմատիստը հաղթում է ոչ-ճիշտ զոհաբերությունների գնով։ Շատերը կարծում են, թե այդպիսի խաղաոճը ընդունելի է, խրախուսելի և փորձում են ապացուցել, որ շախմատի ապագան նման խաղաոճն է։ Ենթադրում եմ, որ նման դիրքավորումը սխալ է։ Առաջին հայացքից կարելի է կարծել, թե այն շախմատիստը, որը թույլ է տալիս ոչ-կորեկտ, ոչ-ճիշտ զոհաբերություն և հաղթում է՝ պրագմատիստական ոճի ներկայացուցիչն է։ Մինչդեռ այդ հարցը շատ ավելի բարդ է, քան կարծում են ոմանք։

Պրագմատիստական խաղաոճը ոչ-ճիշտ զոհաբերություն է թելադրում. սակայն չի կարելի անվերապահորեն ասել, թե ամեն մի ոչ-ճիշտ զոհաբերություն պրագմատիստական է։ Այստեղ հարցն ըստ էության հանգում է այն բանին, թե զոհաբերությունը միտումնավո՞ր է, թե՞ ոչ։ Սա չափազանց կարևոր է։ Մեր կարծիքով, եթե ոչ ճիշտ զոհաբերությունը միտումնավոր է, նպատակ է հետապնդում մոլորեցնել հակառակորդին, խախտել նրա ստրատեգիական ու տակտիկական ծրագրերը, դիրքից բխող պահանջները և անօրինական ճանապարհով հաղթել (նույն միտումով խուսափել պարտությունից, անել ոչ-ոքի), նման խաղաոճն իրոք պրագմատիստական է։ Եթե ոչ ճիշտ զոհաբերությունը զերծ է վերոհիշյալ միտումից, ապա այսպիսի խաղաոճը դժվար է պրագմատիստական անվանել։

Մեր կարծիքով, այստեղ այնպիսի հարաբերություն գոյություն ունի, ինչպիսին կա սոփեստության և պարալոգիզմի միջև։ Երկու դեպքում էլ առկա է տրամաբանական սխալը։ Եթե այն միտումնավոր է կատարված և նպատակ ունի կեղծիքը ճշմարտության փոխարեն ներկայացնել և հակառակը, ապա մենք գործ ունենք սոփեստության հետ։ Իսկ առանց միտումի կատարված տրամաբանական սխալը կարելի է անվանել պարալոգիզմ։

Սակավ չեն տարբեր ուղիներով հաղթելու փաստերը։ Շախմատիստը տարբեր լուծումների առկայության դեպքում հնարավորություն ունի ընտրություն կատարել, որոնցից յուրաքանչյուրն առանձին վերցրած ճշմարիտ է, որի միջոցով կարելի է հասնել տրամաբանական խնդրի լուծմանը։ Երբ միևնույն հարցի վերաբերյալ կան մի շարք ճշմարտություններ, ապա գոյություն ունեն միևնույն նպատակին հասնելու տարբեր հավասարարժեք միջոցներ և դրանցից յուրաքանչյուրը համապատասխանում է շախմատի կանոններին, ստրատեգիական և տակտիկական ծրագրերի օրենքներին ու պահանջներին։ Հարցի դրական պատասխանը պլյուրալիստական է։

Դիալեկտիկական մատերիալիզմը, ելնելով մոնիստական մեկնակետից, գտնում է, որ ճշմարտությունը մեկն է և միասնական, նրա բովանդակային իմաստը, ճշմարտության իմացաբանական բնույթը փաստական ճշմարտությունն է։ Երբ շախմատում հաղթելու ուղիները տարբեր են, որոշ դեպքերում հավասարարժեք և լուծումները հավասարաչափ ճշմարիտ, ապա առկա է ոչ թե փաստական ճշմարտությունը, այլ տրամաբանական։

Այս ամենից պետք է եզրակացնել, որ ճշմարտության մոդելի ստեղծումը ավելի է հարստացնում մեր գիտելիքները ճշմարտության պրոբլեմի վերաբերյալ ինչպես իմացաբանական, այնպես էլ տրամաբանական առումով։

---

[1] Այդ հանդիպումը և հարցադրումը լուսաբանված են հետևյալ հոդվածում «Discussion the American-Soviet philosophic conferance in Mexico".—Philosophy and Phenonenological Research", vel. XXV, № 1 sept. 1964.

[2] «...Մեր մտքերի ճշմարտությունը,— գրում է պրագմատիստ Ջեմսը,— նշանակում է մեզ համար «գործելու» նրանց հատկությունը (В. Джемс. Прагматизм. СПБ. 1910, стр. 41)։ «Ճշմարտությունը,— ասում է մեկ այլ պրագմատիստ՝ Դյուին,— բնութագրվում է օգտակարությամբ» (I. Dewey. Reconstructſon in philesophy. New-York, 1920, p. 129)։

ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ.

# ԿՈՒՏԱԿՄԱՆ ԵՎ ՍՊԱՌՄԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Կոլտնտեսային արտադրության համակողմանի զարգացման, հանրային տնտեսության բոլոր ճյուղերի շահութաբերության ապահովման և կոլտնտեսականների կենսամակարդակի բարձրացման գործում, մյուս գործոնների հետ միասին, բացառիկ կարևոր նշանակություն ունի կոլտնտեսությունում համախառն եկամտի բաշխման ժամանակ կուտակման և սպառման միջև օպտիմալ հարաբերակցության պահպանումը։ Դրա անհրաժեշտությունը պայմանավորված է, մի կողմից, ընդլայնված վերարտադրությամբ, մյուս կողմից, կոլտնտեսականների ռեալ եկամուտների ավելացմամբ։

Այս երկու արմատական հարցերը պրակտիկայում հանդես են գալիս միասնաբար և չի կարելի մեկի հաշվին լուծել մյուսը։ Տվյալ պարագայում անպայմանորեն պետք է նկատի ունենալ, որ «Կոլտնտեսությունների հաջող զարգացման պայմանը եկամուտները բաշխելիս կուտակման և սպառման ճիշտ զարգացումն է։ Կոլտնտեսությունները չեն կարող զարգանալ առանց մշտապես ընդլայնելու իրենց արտադրական, ապահովագրական, կուլտուր-կենցաղային, հանրային ֆոնդերը։ Միևնույն ժամանակ յուրաքանչյուր կոլտնտեսության պարտադիր կանոնը պետք է լինի՝ մեծացնել հանրային տնտեսությունից կոլտնտեսականների ստացած եկամուտները և բարձրացնել նրանց կենսամակարդակը, աշխատանքի արտադրողականության աճին համեմատ» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, Երևան, 1962 թ., էջ 504)։

Կուսակցության ծրագրային այս դրույթը բխում է սոցիալիզմի տնտեսական օրենքներից և պահանջում կոլտնտեսություններում կուտակման ու սպառման միջև անպայմանորեն ստեղծել ճիշտ հարաբերակցություն։ Դա պլանային կարգով զարգացող սոցիալիստական տնտեսության առանձնահատկությունն է, որը բնավ չի կարելի անտեսել, որովհետև որևէ անհամամասնությունը խոչընդոտում է տնտեսության առաջընթացը, վնաս հասցնում կոլտնտեսականների ռեալ եկամուտների ավելացմանը։

Համաձայն գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության. կուտակման և սպառման ֆոնդերի չափը, դրանց հարաբերակցության աստիճանը կոլտնտեսությունները սահմանում են իրենց հայեցողությամբ՝ հաշվի առնելով հանրային տնտեսության կոնկրետ պայմանները, ունեցած միջոցնե-



րը և այլն։ Կուտակման և սպառման ֆոնդերը քանակական տեսակետից, ամբողջությամբ վերցրած, հավասար են կոլտնտեսությունների անհրաժեշտ և հավելյալ արդյունքին, կամ այլ կերպ ասած՝ նրանց համախառն եկամտին։ Անհրաժեշտ արդյունքը, իբրև կանոն, գործադրվում է կոլտնտեսականների անձնական սպառման վրա և հանդիսանում է աշխատուժի վերարտադրության միջոց։ Իսկ հավելյալ արդյունքի արժեգումարը, որը ներդրվում է կուտակման ֆոնդին և որի միջոցով իրագործվում է ընդլայնված վերարտադրությունը, ի վերջո ծառայում է հասարակության ու նրա բոլոր անդամների (այդ թվում և կոլտնտեսականների) պահանջմունքների բավարարմանը։ Բայց սպառման ֆոնդն առանձին վերցրած հավասար չէ անհրաժեշտ, իսկ կուտակման ֆոնդը՝ հավելյալ արդյունքին։ Սպառման ֆոնդը բացի անհրաժեշտ արդյունքից, իր մեջ պարունակում է նաև հավելյալ արդյունքի մի մասը, որը ծախսվում է ոչ արտադրական ոլորտում աշխատող կոլտնտեսականների պահանջմունքների բավարարման նպատակով։ Կուտակման ֆոնդը, իր հերթին, ներկայացնում է ոչ թե ամբողջ հավելյալ արդյունքը, այլ դրա մի մասը։

Մասնավորացնելով հարցը կուտակման վերաբերյալ, հարկ է նշել, որ առանց կուտակման հնարավոր չէ ընդլայնված վերարտադրությունը, իսկ առանց ընդլայնված վերարտադրության չի կարելի բավարարել հասարակության պահանջմունքները, ապահովել նրա նորմալ զարգացումը։ Այդպես է եղել նախորդ բոլոր հասարակարգերում, այդպես է և սոցիալիստական հասարակարգում։ Միայն տարբերությունն այն է, որ արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակարգերում, ինչպիսին, ասենք, կապիտալիստականն է, կուտակումը, որն օբյեկտիվորեն ինքնանպատակ է, կատարվում է մի բուռն մարդկանց՝ կապիտալիստների հայեցողությամբ և ծախսվում նրանց շահերից ելնելով։ Կուտակված կապիտալի միջոցով ապահովելով ընդլայնված վերարտադրությունը, կապիտալիստը, ամենից առաջ, նկատի ունի իր և ոչ թե ամբողջ հասարակության, բանվոր դասակարգի պահանջմունքների բավարարումը։ Ահա թե ինչու այստեղ անտագոնիստական հակասություն կա կուտակման ու սպառման միջև։ Կուտակված կապիտալն իր վերարտադրության ոլորտում ավելացնելով բուրժուազիայի շահույթը, բնականաբար, ուժեղացնում է բանվոր դասակարգի շահագործումը, որով պայքարն ավելի է սրվում աշխատանքի ու կապիտալի միջև։

Բանը միանգամայն այլ է սոցիալիստական հասարակարգում, ուր կուտակումը հանդիսանում է աշխատավորների աճող պահանջմունքների բավարարման միջոց։ Դրա շնորհիվ կուտակման և սպառման միջև բացառվում է ներհակությունը և հնարավոր է լինում ստեղծելու օպտիմալ համամասնություն։ Նրանց ավելացումը չափավորվում է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման աստիճանով։ Նոր արժեքի ստեղծման դեպքում կուտակման և սպառման ֆոնդերի հարաբերական մեծությունը պայմանավորված է միմյանցով. մեկի առավել ավելացումը կարելի է կատարել մյուսի համապատասխան պակասեցմամբ միայն։ Նման պարագայում (մանավանդ, երբ անտեսվում են տնտեսական օրենքները) որևէ կողմը տուժում է և նրանց միջև առաջանում է հակասություն։ Իր բնույթով այդ հակասությունը անտագոնիստական չէ և հաղթահարվում է կուսակցության քաղաքականությունն անշեղորեն կենսագործելու և տնտեսության զարգացումը ճիշտ պլանավորելու միջոցով։

Որպես տնտեսական աճի կարևոր գործոն, կուտակումը վճռական դեր

է խաղում ողջ ժողովրդական տնտեսության, այդ թվում և կոլտնտեսությունների ընդհանուր վերելքի գործում։ Որքան շատ է կուտակման չափը, որքան բարձր են նրա աճի տեմպերը, հավասար պայմաններում այնքան էլ մեծ է կոլտնտեսային արտադրության ծավալը, հանրային տնտեսությունից կոլտնտեսականների ստացած եկամուտը։

Կոլտնտեսություններում կուտակման հիմնական աղբյուրը անբաժանելի ֆոնդերն են, որոնց միջոցով տարեց-տարի ընդարձակվում է արտադրության բազան, ամրապնդվում ու զարգանում հանրային տնտեսությունը։ Այդ հանգամանքը նկատի ունենալով է, որ հանրապետության բազմաթիվ կոլտնտեսություններ իրենց համախառն արտադրանքի ավելացմանը զուգընթաց ավելացնում են նաև անբաժանելի ֆոնդերը։ Այդ ուղղությամբ նշանակալի գործ է կատարված։ Անբաժանելի ֆոնդերի միջոցով կոլտնտեսությունները ձեռք են բերել մեծ քանակությամբ տրակտորներ, կոմբայններ, ավտոմեքենաներ, շարքացաններ, կուլտիվատորներ, կառուցել են գոմեր, արհեստանոցներ, պահեստներ, կուլտուր-լուսավորական հիմնարկների շենքեր և այլն, որոնք ամբողջապես օգտագործվում են կոլտնտեսականների ինչպես նյութական, կենցաղային և միջնորդավորված ձևով հոգևոր պահանջմունքների բավարարման համար։

Սակայն, դրանով հանդերձ, յուրաքանչյուր կոլտնտեսությունում առանձին, իսկ բոլոր կոլտնտեսություններում միասին վերցրած, առավել նշանակություն ունի կուտակման ֆոնդը, որի մեջ ներառվում են նաև անբաժանելի ֆոնդերը։ Վերջիններս լինելով կուտակման հիմնական միջոցը, նրա ամբողջ մեծությունը չեն արտահայտում։ Ուստի կուտակման և անբաժանելի ֆոնդերը չի կարելի նույնացնել ու նրանց մեջ հավասարության նշան դնել։ Չպետք է մոռանալ, որ անբաժանելի ֆոնդերը գոյանում են հանրային տնտեսությունների միայն դրամական մուտքի միջոցներից, իսկ կուտակման ֆոնդը՝ տվյալ անբաժանելի ֆոնդերից (որոնք հիմնականում ծախսվում են արտադրամիջոցների գնման համար), բնեղենից (որը գոյացել է սեփական արտադրության արտադրանքից) և այլ միջոցներից։

Կոլտնտեսային արտադրության ապրանքայնության ընդարձակման շնորհիվ կոլտնտեսությունները դրամական միջոցներից կուտակման ավելի շատ հատկացում են կատարում, քան բնեղենից։ Անցած տարիներին հանրապետության կոլտնտեսություններում կուտակումները որոշակի չափերի են հասել։ Դրանք այժմ հաստատուն բազա են ընդլայնված վերարտադրության և գյուղի աշխատավորների բարեկեցիկ կյանքի համար։

Հանրապետության կոլտնտեսություններում կուտակումները մեծ մասամբ կատարվում են սեփական միջոցների հաշվին, որոնցից միայն անբաժանելի ֆոնդերը 1964 թվականին կազմել են 8,7, 1965 թվականին՝ 9,1, 1966 թվականին՝ 6,6, իսկ 1967 թվականին՝ 6,730 միլիոն ռուբլի։ Չնայած այն բանին, որ 1964 թվականի համեմատությամբ 1967 թվականին կոլտնտեսությունների թիվը մոտ 26-ով պակասել է (վերածվել են սովխոզների), բայց անբաժանելի ֆոնդերն ավելացել են 30,1 միլիոն ռուբլով։ Դա, ինչ խոսք, դեռևս քիչ է, եթե նկատի ունենանք, որ վերջին տարիներին զգալի թվով կոլտնտեսություններ անբաժանելի ֆոնդերին առհասարակ հատկացումներ չեն կատարել։ Իսկ մյուս կոլտնտեսությունները 1964 թվականին անբաժանելի ֆոնդերին հատկացրել են իրենց դրամական եկամուտների 7,9, 1965-ին՝ 7,5, 1966-ին՝ 5,35, 1967 թվականին՝ 5,2 տոկոսը։ Պատկերը համարյա նույնն է կապիտալ



ներդրումների ասպարեզում։ Բայց այստեղ հատկանշականն այն է, որ կապիտալ ներդրումների գերակշռող մասը կազմում են ամորտիզացիոն ծախսերը։ Դա կարելի է ցույց տալ տնտեսական ու բնակլիմայական համանման պայմաններում գտնվող մի քանի շրջանների կոլտնտեսությունների օրինակով։ Այսպես.

Կապիտալ ներդրումները Բասարգեչարի, Սևանի և Մարտունու շրջանների կոլտնտեսություններում *

| ՇՐՋԱՆՆԵՐԸ | Թվական | Ընդամենը համախառն եկամուտ (հազ. ռուբ.) | Հատկացված է կապիտալ ներդրման ֆոնդին (հազ. ռուբ.) | Հատկացման տոկոսը | Հատկացված է ամորտիզացիոն ֆոնդին (հազ. ռուբ.) | Հատկացման տոկոսը |
|---|---|---|---|---|---|---|
| Բասարգեչար | 1964 | 5016,0 | 710,0 | 14,20 | 463,0 | 9,20 |
| | 1965 | 5858,0 | 417,0 | 7,10 | 561,0 | 9.60 |
| | 1966 | 5745,0 | 372,0 | 6,50 | 578,0 | 10,00 |
| | 1967 | 7015,6 | 15,0 | 0,2 | 593,7 | 8,46 |
| Սևան | 1964 | 988,0 | 45,0 | 4,6 | 121,0 | 12,3 |
| | 1965 | 1551,0 | 60,0 | 3,90 | 127,0 | 8,20 |
| | 1966 | 1351,0 | 10,8 | 0,8 | 146,0 | 10,8 |
| | 1967 | 1744,0 | — | — | 144,3 | 6,28 |
| Մարտունի | 1964 | 3092,0 | 213,0 | 7,00 | 247,0 | 8,00 |
| | 1965 | 3635,0 | 224,0 | 8,92 | 244,0 | 6,72 |
| | 1966 | 3096,0 | 176,0 | 5,70 | 261,0 | 8,44 |
| | 1967 | 3713,3 | 104,0 | 2,81 | 286,6 | 7,72 |

Աղյուսակում բերված թվերից երևում է, որ ամորտիզացիոն հատկացումները համախառն եկամտի նկատմամբ, միջին հաշվով, համարյա մնացել են նույն մակարդակի վրա, իսկ կապիտալ մյուս ներդրումները տարեցտարի պակասել են։ Ավելին, Սևանի շրջանի կոլտնտեսությունները 1967 թվականին իրենց համախառն եկամտից կապիտալ ներդրումներին հատկացումներ չեն կատարել, իսկ Բասարգեչարի շրջանի կոլտնտեսությունները հատկացրել են միայն 0,2 տոկոսը (1964 թվականի 14,20 տոկոսի դիմաց), իսկ Մարտունու կոլտնտեսությունները՝ 2,81 տոկոսը (1964 թվականի 7 տոկոսի դիմաց)։ Ավելի հստակ պատկերացում կազմելու համար նշենք, որ Բասարգեչարի շրջանի կոլտնտեսությունները 4 տարում (1964—1967 թվականներին) ամորտիզացիայի ֆոնդին 634 հազար ռուբլու ավելի են հատկացրել, քան կապիտալ մյուս ներդրումներին, Սևանի շրջանի կոլտնտեսությունները՝ 418 հազար, Մարտունու շրջանի կոլտնտեսությունները՝ 351,3 հազար ռուբլու։

Կան տնտեսագետներ, որոնք ամորտիզացիոն ֆոնդը կուտակման հետ չեն կապում, ասելով, որ դա ապահովում է միայն հիմնական ֆոնդերի պարզ վերարտադրությունը։ Որ ամորտիզացիոն ֆոնդերը ապահովում են հիմնական ֆոնդերի պարզ վերարտադրությունը՝ անժխտելի է, բայց որ այն որոշ չափով օգտագործվում է նաև ընդլայնված վերարտադրության համար, նույնպես անժխտելի է։ Պետք է նկատի ունենալ, որ մինչև հիմնական արտադրաֆոն-

* Աղյուսակը կազմված է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության տվյալների համաձայն։

դերի գործադրումը և մաշվածքի լրիվ վերականգնումը, ամորտիզացիոն ֆոնդը քարացած չի մնում, դրվում է շրջանառության մեջ և օգտագործվում ընդլայնված վերարտադրության համար։ Այդ առումով Կ. Մարքսն իր ժամանակին ցույց է տվել, որ «ամորտիզացիոն ֆոնդը, այսինքն՝ հիմնական կապիտալի մաշվածքի փոխհատուցման համար ֆոնդը, դրա հետ միասին համարվում է և կուտակման համար ֆոնդ» (Теории прибавочной стоимости, ч. 3. М., 1961, стр. 43)։

Կոլտնտեսությունների համախառն եկամտից կապիտալ ներդրումների և, առհասարակ, կուտակման ֆոնդի հատկացումների պակասեցման հետ միասին սպառման ֆոնդին արվող հատկացումները աճել են բարձր տեմպերով։ Բավական է ասել, որ երեք տարում (1964—1966 թվականներին) կոլտնտեսություններում սպառման ֆոնդը ավելացել է 30,2 միլիոն ռուբլով։ Այդ ժամանակամիջոցում մեկ մարդ-օրվա հաշվով սպառման ֆոնդը ավելացել է 1 ռ. 43 կոպեկով, իսկ կուտակման ֆոնդը պակասել է 12 կոպեկով։

Ինչպես տեսնում ենք, սեփական միջոցները բաշխելիս կուտակման ու սպառման միջև բացակայել է օպտիմալ համամասնությունը։ Ասենք ի՞նչ համամասնության մասին կարող է խոսք լինել, երբ առանձին կոլտնտեսությունների համախառն եկամտի բաշխման մեջ սպառման ֆոնդերը կազմել են մինչև 85 տոկոս։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ շատ շրջանների կոլտնտեսություններում սեփական միջոցներից կուտակման ֆոնդին կատարվող մասհանումները չափազանց քիչ են եղել։ Ուստի կոլտնտեսությունները չէին կարող իրագործել ընդլայնված վերարտադրություն, եթե չդիմեին կուտակման այնպիսի լրացուցիչ միջոցի, ինչպիսին պետական վարկերն են, որոնք հիմնական և շրջանառու ֆոնդերի ստեղծման գործում կատարում են կարգավորիչ դեր, լրացնում պակասը և որոշակի համամասնություն ապահովում կուտակման ու սպառման միջև։

Վերջին տարիներին կոլտնտեսություններին հատկացվող վարկերը զգալի չափով աճել են։ Այդ բացատրվում է նրանով, որ կոլտնտեսությունների որոշ մասը, որոնք դեռևս տնտեսապես ետ են մնում, վարկեր են ստանում ոչ միայն հիմնական և շրջանառու ֆոնդերի, այլև կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրության պակասը լրացնելու համար։ Դա կոլտնտեսություններին պետության ցույց տված լավագույն օգնության ձևերից մեկն է, որը նրանց հնարավորություն է տալիս հաղթահարելու տնտեսապես ետ մնալը և հավասար պայմաններում ստանալու այնքան համախառն արտադրանք, որի հաշվին կարելի կլինի հոգալ տնտեսության բոլոր ծախսերը, անհրաժեշտ հատկացումներ կատարելով կուտակման ու սպառման ֆոնդերին։ Այսպիսի դեպքում է, որ վարկերը ծառայում են իրենց իսկական նպատակին։

Սակայն բոլոր կոլտնտեսությունները չէ, որ պետական վարկի կարիք են զգում։ Առաջավոր շատ տնտեսություններ բարձր համախառն եկամուտ ստանալու շնորհիվ սեփական միջոցներից զգալի հատկացումներ են կատարում կուտակման ֆոնդին, որով ամրապնդում ու աճեցնում են արտադրաֆոնդերը։ Վերջիններս կուտակման ֆոնդի բացարձակ մեծության չափանիշ են։ Բայց դրանք դեռևս չեն արտահայտում տնտեսության մեջ կուտակման հնարավորության ու նրա օգտագործման աստիճանը։ Դրա համար անհրաժեշտ է սահմանել կուտակման այնպիսի նորմա, որը պարզ ցույց տա համախառն եկամտի և կուտակման գիտականորեն հիմնավորված ճիշտ հարաբերակցությունը։



Այս տեսակետից հարցին միանգամայն ճիշտ է մոտենում Ի. Ի. Տրոեգուբովը, որը հետևյալ ֆորմուլայով սահմանում է կուտակման նորման։

$$\text{Կն} = \frac{\text{Կֆ}}{\text{Հե} - \text{Զպ}}$$

Այստեղ Կն—կուտակման նորման է, Կֆ—կուտակման ֆոնդը, Հե—կոլտնտեսության ընդհանուր համախառն եկամուտը, Զպ—կոլտնտեսության կողմից պետությանը տրվող զուտ եկամուտը։

Իրավացի են այն տնտեսագետները, որոնք գտնում են, որ կուտակման նորման պետք է օպտիմալ հարաբերակցության մեջ լինի ոչ թե ամբողջ համախառն եկամտի, այլ նրա այն մասի հետ, որը մնում է կոլտնտեսության տրամադրության տակ։ Այլ կերպ ասած, կուտակման ֆոնդը պետք է առանձնացնել կոլտնտեսությունների զուտ եկամտից՝ պետությանը համապատասխան հատկացումներ կատարելուց հետո միայն։ Սա միանգամայն ճիշտ մոտեցում է, որը հնարավորություն կտա եկամուտների բաշխման ժամանակ հիմնավորված համամասնություններ պահպանել առանձնացվող ֆոնդերի միջև, ապահովելու տնտեսության համակողմանի զարգացումը և կոլտնտեսականների բարեկեցության բարձրացումը։

Կոլտնտեսություններում կուտակման աղբյուրներից մեկն էլ աշխատանքային ներդրումներն են, որոնք հիմնականում օգտագործվում են արտադրական և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության համար։ Մոտավոր հաշվումները ցույց են տալիս, որ աշխատանքային ներդրումները կապիտալ ներդրման և հիմնական նորոգման ֆոնդերի նկատմամբ 1964 թվականին կազմել են 10,1, 1965-ին՝ 9,0 և 1966 թվականին 9,2 տոկոս։

Ինչպես վերը նշեցինք, կոլտնտեսությունների զարգացման գործում վճռական դերը պատկանում է կուտակմանը։ Կուտակման դերը և նշանակությունն առանձնապես մեծ է ժամանակակից էտապում, երբ արտադրության զարգացումը գլխավորապես կապված է կատարելագործված տեխնիկայի գործադրման, ինչպես և գիտության նվաճումների ու առաջավոր փորձի ներդրման հետ։ Բանն այն է, որ նոր մեքենաների ձեռքբերման, արտադրության մեջ քիմիայի կիրառման, անասունների ցեղի ազնվացման, ջրաշինարարության, արտադրական ու կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման համար պահանջվում են համապատասխան միջոցներ, որոնք կոլտնտեսությունները կարող են առանձնացնել միայն իրենց զուտ եկամտից։ Մեր կարծիքով, կուտակման համար պետք է առանձնացնել կոլտնտեսությունների զուտ եկամտի մոտավորապես 45—55 տոկոսը։ Իհարկե, հանրապետության տարբեր շրջաններում և շրջանների ներսում տարբեր կոլտնտեսություններում կուտակման չափը տարբեր կլինի. դա կախված է նրանց արտադրության բնույթից, ծավալից, ունեցած միջոցներից և զարգացման հեռանկարներից։ Առանձնացված միջոցները, որպես կանոն, արտադրության և, առհասարակ, ընդլայնված վերարտադրության չափերի համեմատությամբ պետք է այնպիսի տեսակարար կշիռ կազմեն, որ հնարավոր լինի առաջին հերթին ապահովել հիմնական արտադրաֆոնդերի նորոգումն ու մեծացումը։

Այս առումով մոտենալով հարցին, անհրաժեշտ է նշել, որ նորմալ երևույթ չէ, երբ շատ կոլտնտեսություններ պահանջվող չափով մասնահանում չեն կատարում կուտակման ֆոնդին։ Դրա հիմնական պատճառը նրանց ցածր եկամուտն է, արտադրության անբավարար շահութաբերությունը։ Սեփական

արտադրությունից չստանալով անհրաժեշտ զուտ եկամուտ, այդ կոլտնտեսությունները հիմնական արտադրաֆոնդերի, առանձին դեպքերում նույնիսկ շրջանառու ֆոնդերի լրացման համար դիմում են պետական վարկի օգնության։ Պետությունը, իհարկե, անհրաժեշտ չափով վարկեր տալիս է, բայց դա խնդրի վերջնական լուծումը չէ և պետք է հասնել այն բանին, որ բոլոր կոլտնտեսությունները դառնան բարձր շահութաբեր և սեփական միջոցներից կուտակման ֆոնդին հատկացնեն այնքան, որքան անհրաժեշտ է։

Միայն համապատասխան հատկացումները բավական չեն։ Հարկավոր է ապահովել նաև դրանց ռացիոնալ օգտագործումը և վճռականորեն բարելավել արտադրաֆոնդերի կառուցվածքը։ Գործի շահը պահանջում է, որպեսզի կուտակում կատարելիս առանձնակի ուշադրություն հատկացվի հիմնական ֆոնդերի առավել ակտիվ մասի՝ գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների ձեռքբերման վրա, որոնք բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, հեշտացնում գործը, հնարավորություն ընձեռում դաշտային և անասնաբուծության աշխատանքները կատարելու առավել օպտիմալ ժամկետներում, ապահովել արտադրանքի ինքնարժեքի իջեցում։ Ցավոք, առանձին կոլտնտեսություններում այս կարևոր հանգամանքը անտեսվում է. ավելին, արտադրաֆոնդերի այնպիսի ակտիվ մասեր, ինչպիսիք ուժային մեքենաներն ու սարքավորումներն են, ավելանալու փոխարեն պակասում են, որն իր բացասական ազդեցությունն է թողնում հանրային տնտեսության վրա։ Բերենք մեկ օրինակ։ Էջմիածնի շրջանի Սամաղարի կոլտնտեսությունում 1964 թվականի համեմատությամբ, 1966 թվականին հիմնական արտադրամիջոցներն աճել են 9,2 տոկոսով, բայց ուժային մեքենաների և սարքավորումների քանակը ոչ միայն չի ավելացել, այլև կրճատվել է 25 տոկոսով։ Սրա հետևանքով ցորենի մեկ ցենտների ինքնարժեքը 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, բարձրացել է 1 ռ. 27 կոպեկով, բանջարեղենինը՝ 1 ռ. 16 կոպեկով։

Կոլտնտեսություններում սեփական միջոցներից կուտակման ավելացման հետ միասին անհրաժեշտ է հասնել այն բանին, որ գյուղատնտեսական և, առանձնապես, անասնաբուծական աշխատանքները ենթարկվեն կոմպլեքսային մեքենայացման։ Դա արտադրության արդյունավետության հետ միասին կբարձրացնի նաև ֆոնդահատույցը։

Կ. Մարքսը նշել է, որ արտադրության վերականգնման ընթացքը պետք է սկսել արտադրապրոցեսում գործադրված արտադրամիջոցների վերարտադրությունից, այնուհետև հատկացում կատարել աշխատանքի վճարման (սպառման) ֆոնդին և ապա որոշել հավելյալ արդյունքը (կուտակման ֆոնդը)։

Այնուհանդերձ առաջներում կոլտնտեսությունները այլ կերպ էին վարվում։ Համախառն եկամուտը բաշխելիս, նրանք նախ պետության հետ փակում էին բոլոր հաշիվները (կատարում մթերումների ու բնակվարձի պլանը, վճարում հարկերը և այլն), առանձնացնում ծախսերը, հատկացումներ կատարում անբաժանելի դրամագլխին և ստեղծում համապատասխան ֆոնդեր (այդ թվում և կուտակման ֆոնդը)։ Իսկ սպառման ֆոնդը, մասնավորապես կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ֆոնդը, բաժանահանվում էր ամենավերջում։ Քիչ չէին դեպքեր, երբ պետական պարտավորությունները կատարելուց և բոլոր ֆոնդերը առանձնացնելուց հետո կոլտնտեսականների աշխատանքի վարձատրման համար ոչինչ բան էր մնում կամ բոլորովին չէր մնում։ Շատ տնտեսություններում էլ աշխատանքի վարձատրությունը մնում էր անփոփոխ (երբեմն նույնիսկ կրճատվում), իսկ կուտակման ֆոնդը զգա-



լիորեն աճում էր։ Դա հետևանք էր այն բանի, որ կուտակման ֆոնդը գոյանում էր ոչ թե կոլտնտեսությունների զուտ եկամտից, այլ դրամական մուտքից ու համախառն եկամտից։ Ավելին, կուտակման ֆոնդը հաճախ բաժանահանվում էր զուտ եկամտի բացակայության պայմաններում և աճում աշխատավճարի՝ նախատեսված ֆոնդի կրճատման հաշվին։

Սպառման ֆոնդի բաժանահանման նման կարգը անհարիր էր աշխատուժի վերարտադրությանը։ Աշխատուժը, որը հասարակության գլխավոր արտադրաուժն է և շարժման մեջ է դնում արտադրամիջոցների ամբողջ կոմպլեքսը (ամենաբարդ մեքենայից սկսած մինչև հասարակ գործիքը), մղված էր երկրորդական պլանի վրա։ Եվ այս այն դեպքում, երբ Վ. Ի. Լենինը ասել է. ամբողջ մարդկության առաջին արտադրաուժը բանվորն է, աշխատավորը։

Երբ կոլտնտեսություններում անհիմն կերպով կրճատվում էր սպառման ֆոնդը և անտեսվում աշխատանքի նորմալ հատուցումը, դրանով իսկ անհամամասնություն էր առաջացնում սպառման ու կուտակման միջև, խախտվում էր կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը, իջնում նրանց արտադրողականությունը։ Այդ ամենի հետևանքով մյուս արտադրաձախսերը անհրաժեշտ արդյունք չէին տալիս, ցածր էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։

Կոլտնտեսություններում կուտակման և սպառման միջև նկատվող անհամամասնության վերացման, համախառն արտադրանքի և զուտ եկամտի ավելացման, ինչպես նաև կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման համար վճռական դեր խաղացին ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումի և կուսակցության XXIII համագումարի որոշումները։ Դրանց հիման վրա գյուղատնտեսական հիմնական մթերքների գնման ու հանձնման գների բարձրացման շնորհիվ կոլտնտեսություններում նպաստավոր պայմաններ ստեղծվեցին արտադրության ծախսերի փոխհատուցման, ընդլայնված վերարտադրության նպատակով անհրաժեշտ կուտակումների առանձնացման և սպառման ֆոնդի ավելացման համար։ Հետամնդելով կոլտնտեսականների բարեկեցության բարձրացման նպատակը, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը իրենց 1966 թվականի մայիսի 16-ի որոշմամբ սահմանեցին, «որ կոլտնտեսություններում եկամուտները բաշխելիս առաջին հերթին առանձնացվում են կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության միջոցները»։ Սրանով ոչ միայն կանխվեց կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ֆոնդի անհարկի կրճատումը, այլև բարձրացվեց նրանց նյութական շահագրգռվածությունը։

Նույն որոշման համաձայն 1966 թվականի հուլիսի 1-ից բոլոր կոլտնտեսություններում մտցված է կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրություն (դրամով և բնամթերքով), ելնելով սովխոզների աշխատողների համապատասխան կատեգորիաների տարիֆային դրույքներից։ Սակայն մի շարք կոլտնտեսությունների սեփական միջոցները դեռևս չեն բավարարում այդպիսի վարձատրություն տալու համար։ Դրա համար կոլտնտեսություններին պետությունը համապատասխան վարկ է տալիս։

Վարձատրության այդ ձևը, ինչ խոսք, բարձրացրեց սպառման ֆոնդի տեսակարար կշիռը և պայմաններ ստեղծեց կոլտնտեսություններում հասարակականորեն անհրաժեշտ մակարդակով աշխատանքի վարձատրության

անցնելու։ Ներկա ժամանակաշրջանում այդ պրոբլեմը լուծվում է կուտակման ֆոնդի ոչ թե կրճատման, այլ ընդլայնման ճանապարհով։ Աշխատանքի վարձատրման և կապիտալ ներդրումների համար պետության բաց թողած երկարատև վարկերը դրա համար լայն հնարավորություն են ստեղծել։

Աշխատանքի երաշխավորված վարձատրության պայմաններում իսկ հանրապետության կոլտնտեսություններում որոշակի տարբերություն կա յուրաքանչյուր աշխօրին կամ մարդ-օրին բաշխվող եկամտի միջև։ Առաջավոր կոլտնտեսությունները, ինչպիսիք են՝ Ավշարի (Արարատի շրջան), Ազատանի (Ախուրյանի շրջան), ՍՄԿԿ XVIII համագումարի անվան (Շահումյանի շրջան), Աղավնատան (Էջմիածնի շրջան), Մեծ Մազրայի (Բասարգեչարի շրջան) և այլն, յուրաքանչյուր աշխօրին տալիս են մինչև 7 ռ.։ Այլ կերպ ասած, նրանք մոտ 3 անգամ գերազանցում են աշխատանքի երաշխավորված վարձատրության նորման։ Դա, առաջին հերթին, արդյունք է այն բանի, որ այդ կոլտնտեսություններն ամեն տարի կատարում են համապատասխան կուտակումներ և ունեն անհրաժեշտ քանակությամբ հիմնական ու շրջանառու ֆոնդեր, որոնց արդյունավետ գործադրմամբ ստանում են մեծ համախառն եկամուտ։ Այսպիսով, անառարկելի է, որ կոլտնտեսություններում շատ կուտակման դեպքում շատ էլ համախառն եկամուտ է ստացվում, որով հնարավոր է դառնում սպառման ֆոնդին, այդ թվում և աշխատանքի վարձատրությանը, անհրաժեշտ չափով միջոցներ հատկացնել, օպտիմալ համամասնություն ստեղծելով կուտակման և սպառման միջև։

Կոլտնտեսությունների սպառման ֆոնդում, բացի աշխատանքի վարձատրությունից, մտնում են նաև կենցաղսպասարկման, մանկական հիմնարկների պահպանման, թոշակավորման, նպաստների և այլնի համար նախատեսված միջոցները, որոնք կազմում են սպառման հանրային ֆոնդերը և ծախսվում կոլտնտեսականների բարեկեցության բարձրացման նպատակով։ Սպառման հանրային ֆոնդերը կարող են մեծ լինել միայն այն կոլտնտեսություններում, որոնք բարձր համախառն եկամուտ են ստանում և աշխատանքը վարձատրում են բարձր չափով։ Այս առումով էլ հանրապետության կոլտնտեսություններում տվյալ ֆոնդերը տարբեր են և ունեն տարբեր մեծություն ու կառուցվածք։

Սպառման հանրային ֆոնդերի մասին խոսելիս, հարկ է նկատի ունենալ, որ դրանցից համապատասխան միջոցներ պետք է օգտագործել ոչ միայն կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացման, այլև անձնական տնտեսության մեջ նրանց ծանր, միալար ու հոգնեցուցիչ աշխատանքից ազատելու համար։ Դա առանձնապես վերաբերում է կոլտնտեսուհիներին, որոնցից տնային առօրյա գործերը խլում են ժամանակի մեծ մասը։ Մինչդեռ այդ ժամանակի ռացիոնալ օգտագործման ու խնայողության հաշվին աշխատանքի ծավալն ու նրա արտադրողականությունը կաճի հանրային տնտեսության մեջ, որից կշահի հասարակությունը և, ամենից առաջ, կոլտնտեսային աշխատավորը։ Դրան կարելի է հասնել անվճար կամ արտոնյալ պայմաններով երեխաներին մանկամսուրներում, մանկապարտեզներում ու գիշերօթիկ դպրոցներում պահելով, կենցաղսպասարկման համապատասխան օբյեկտներ (լվացքատուն, բաղնիք, վարսավիրանոց) գործի դնելով, կոմունալ սպասարկման ծառայությունները քաղաքի օրինակով կազմակերպելով և այլն։



Հանրապետությունում կան բազմաթիվ առաջավոր, տնտեսապես ուժեղ կոլտնտեսություններ, որոնք սեփական միջոցներով կառուցում են դպրոցներ, ակումբներ, գրադարաններ, հիվանդանոցներ և այլ օբյեկտներ, որոնցից ձրի կերպով օգտվում են բոլոր կոլտնտեսականները։ Ժամանակն է, որ այդ կոլտնտեսությունները կառուցեն նաև ճաշարաններ, նախաճաշարաններ, փռեր, որոնք էական դեր կխաղան գյուղի աշխատավորների կյանքի պայմանների բարելավման, ժամանակի տնտեսման ու կուլտուրական հանգստի անցկացման գործում։

Այսպիսով պարզ է, թե որքան կարևոր նշանակություն ունի նաև սպառման ֆոնդը, որը բարձրացնելով կոլտնտեսականների բարեկեցության մակարդակը, դրանով իսկ ուժեղացնում է նրանց աշխատանքային ակտիվությունը ու ստեղծագործական նախաձեռնությունը, ավելացնում արտադրության արդյունավետությունը։

Կոլտնտեսություններում կուտակման ու սպառման անհրաժեշտ ֆոնդերի ստեղծումը և դրանց օպտիմալ հարաբերակցությունը պետք է ապահովել ոչ միայն աշխատանքի արտադրողականության ու համախառն եկամտի բարձրացման հիման վրա, այլև զուտ եկամտի և դիֆերենցիալ ռենտայի բաշխման ներկայիս կարգը կատարելագործելու միջոցով։

Կոլտնտեսություններում համախառն եկամտի բաշխման ժամանակ, յուրաքանչյուր տնտեսության կոնկրետ պայմաններից ելնելով, կուտակման և սպառման ֆոնդերին պետք է այնպիսի հատկացումներ կատարել, որ մեկը նպաստի մյուսի աճմանը, ապահովի համախառն արտադրանքի և զուտ եկամտի ավելացումը. վերջիններս ինչպես կուտակման, այնպես էլ սպառման ֆոնդի մեծացման և դրանց միջև օպտիմալ հարաբերակցության ստեղծման կարևոր պայմանն են։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՆԳՍՏԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

ԶԱՔԱՐՅԱՆ Ս. Ս.

ՀԿԿ Սևանի շրջկոմի առաջին քարտուղար

*Աշխատավոր զանգվածների նորմալ հանգստի կազմակերպմամբ հետզհետե մեծանում է Սևանա լճի կենսական նշանակությունը։ Լճափնյա առողջարանների ու հանգստյան տների ցանցի ընդարձակումն ու կառուցումը մեր էական և անհետաձգելի հոգսերից է։*

*Վերջին տարիներին լճափն ավելի աշխուժացել և բազմամարդ է դարձել։ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը 1966 թ. ապրիլի 13-ին որոշում ընդունեց Սևանի լճափում աշխատավորների հանգստի կազմակերպման մասին։ Կառավարության ձեռնարկած միջոցների շնորհիվ նշանակալի չափով բարելավվեց լճափնյա հանգստյան տների վիճակը, կառուցվեցին նորերը։ Հանձնարարված գործին, պատասխանատվության բարձր վգացումով ձեռնամուխ եղան հատկապես Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման, առևտրի, ավտոմոբիլային տրանսպորտի, հասարակական կարգի պահպանության, կոմունալ տնտեսության և առողջապահության մինիստրությունները, խճուղային ճանապարհների գլխավոր վարչությունը ու նրանց տեղական կազմակերպությունները։*

*Աշխատավորների հանգիստը կազմակերպելու և լճափը հանրապետական հանգստի գոտու վերածելու ուղղությամբ բազմակողմանի գործունեություն ծավալեցին նաև Սևանի շրջանային կուսակցական և սովետական կազմակերպությունները։*

*Երկու հանգստյան օրվա անցնելու կապակցությամբ մեր առջև ծառացան ավելի լուրջ խնդիրներ. ուստի, շրջկոմն իր բյուրոներում պարբերաբար անդրադառնում է հանգստյան գործով զբաղվող կազմակերպությունների աշխատանքին, կոնկրետ միջոցառումներ մշակում այն ավելի բարելավելու համար։ Այդ բնագավառում արդյունավետ աշխատանք է կատարում աշխատավորների դեպուտատների Սևանի քաղաքային սովետի գործկոմը։ Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում երբեմնի ամայի ու անհրապույր ափի տեսքը արագորեն բարեփոխվել է։ Լճափի ամբողջ երկարությամբ բարեկարգվել են «Մոշի», «Սևանյան», «Տուրիստական», «Ցամաքաբերդ», «Քաղաքային» հարմարավետ լողափերը։ Վեր են բարձրացել ժամանակակից ճաշակով կառուց-*



*ված սրճարաններ, ռեստորաններ, առևտրի և հասարակական սննդի մշտական, ժամանակավոր ու շրջիկ բազմաթիվ կետեր։*

*Հանգստացողների համար իրենց հյուրընկալ դռներն են բացել ՀԱՄԽ-ի կուլտուրայի վարչության հանգստյան տունը, «Արևիկ» պիոներական և «Միծեռնակ» միջազգային ճամբարները, որտեղ բացի սովետական հազարավոր քաղաքացիներից, պատանիներից ու աղջիկներից, ամեն տարի հանգստանում են արտասահմանյան հյուրեր։ Բացի այդ, Սևանի ափին գործում են Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստրության սանատորիան և գրողների միության հանգստի տունը, տուրիզմի Սևանի բազան և աշխատավորների կուլտուրական հանգստի այլ հիմնարկություններ։*

*Հանգստացողներին և հոսվեկներին սպասարկելու համար ստեղծված է աշխատավորների հանգստի կազմակերպման լճափնյա տնտեսության վարչություն, որն այժմ իր տրամադրության տակ ունի 3 ջերմանավ, 140 մոտորանավակ, 80 թիանավակ, 24 վրան-հյուրանոց (170 տեղով) և սպասարկման այլ պարագաներ։*

*Ամեն տարի մեզ մոտ հանգստանում ու կազդուրվում են հանրապետության տարբեր շրջաններից, Միության զանազան ծայրամասերից, ինչպես նաև արտասահմանյան երկրներից եկած տասնյակ հազարավոր բանվորներ, ծառայողներ, կոլտնտեսականներ, մտավոր աշխատանքի մարդիկ։ Նրանք Սևանից վերադառնում են անջնջելի տպավորություններով, իրենց շնորհակալական խոսքը հղելով հանգստյան տների բարեխիղճ աշխատողներին։*

*Ստեղծված է նաև առափնյա առևտրական կազմակերպություն, որն ավելի է ընդարձակում իր գործունեության շրջանակները։ Այն իր տնօրինության տակ ունի 7 սրճարան՝ 1250 ընդհանուր տեղով, «Ախթամար» հյուրանոց-ռեստորանը, 6 արդյունաբերական, 9 պարենային և մեկ սպորտ ապրանքների խանութ, 5 կրպակ և այլ շրջիկ կետեր։ Հանգստացողների և հոսվեկների սպասարկման գործի բարելավման և կուլտուրական առևտրի հետագա ծավալման նպատակով Սևանա լճի թերակղզում կառուցվում և շուտով շահագործման կհանձնվի երկհարկանի նոր շենք, որտեղ կլինի «Փարվանա» նոր ռեստորանը՝ 350 տեղով, արդյունաբերական և պարենային ապրանքների նոր խանութներ։*

*Լճափնյա երկրորդ տեսահարթակի շրջակայքում կառուցվում են սուրճի և զովացուցիչ ջրերի երկու օբյեկտ, «Ախթամար» հյուրանոց-ռեստորանի բլրի ստորոտում՝ վերելակ-ճոպանուղի, որով մարդիկ լճափից կբարձրանան «Ախթամար» ռեստորանը, իսկ այդտեղից՝ մոտակա սարի գագաթը (783 մետր), որտեղ նրանց կսպասարկեն սրճարան-ռեստորանը, դահուկային վարձատուբազան։*

*Կուսշրջկոմը հետևում է առողջարանների ղեկավար կադրերի, մասնագետների և բոլոր կոմունիստների գործունեությանը, ջանում բարձրացնել նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, ժամանակին նկատել և խրախուսել լավագույն կոլեկտիվների և առանձին աշխատողների ստեղծագործական նախաձեռնությունը, ընդհանրացնել ու մասսայականացնել նրանց աշխատանքի դրական փորձը։*

*Այս կապակցությամբ արժե համառոտակի պատմել մի քանի հանգստյան տների և սպասարկող կազմակերպությունների գործունեության մասին։*

*Շրջանի և հանրապետության լավագույն հանգստավայրերից են, օրինակ, ՀԱՄԽ-ի քսանմեկօրյա հանգստյան տունը (դիրեկտոր Վ. Անտոնյան)։ Այն*

տեղավորված է Թերակղզում, որտեղ մաքուր օդը, արևի ուլտրամանուշակագույն առատ ճառագայթները նպաստում են հանգստացողների արագ կազդուրմանն ու առողջացմանը։ Այն թեպետ սեզոնային է (գործում է հունիսից հոկտեմբեր և սպասարկում 2000 մարդու), բայց արդեն ունի աշխատավորների կուլտուրական հանգստի կազմակերպման լավ տրադիցիաներ և բոլոր անհրաժեշտ պայմանները հանգստացողներին սպասարկելու համար։ Բովանդակալի ու հաճելի է անցնում հանգստացողների առօրյան, նրանց համար կազմակերպվում են մոտակա և հեռավոր էքսկուրսիաներ, նրանք ծանոթանում են հանրապետության շատ տեսարժան վայրերի ու Սևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների հետ։

Այժմ լճի հյուսիս-արևմտյան ափին 500 հանգստացողների համար վեր է խոյանում նոր հանգստյան տունը, որի 14-հարկանի հիմնական կորպուսը կգործի ամբողջ տարին։

Լճափնյա հանգստյան գոտու հիմնարկություններից է Սևանի տուրիստական բազան (դիրեկտոր Գ. Ենոքյան)։ Իր գոյության 9 տարում այն սպասարկել է 98 հազար զբոսաշրջիկների։ Կոլեկտիվի բարեխիղճ աշխատանքի շնորհիվ տուրիստական բազայի համբավը տարածվել է հանրապետության սահմաններից դուրս։ Բազայի կոլեկտիվը դուրս գալով համամիութենական սոցիալիստական մրցության, Հայաստանի տուրիստական բազաների մեջ նվաճել է առաջին տեղը։ Այն երեք անգամ արժանացել է ՀԱՄԽ-ի մրցանակին։

Ավելի հետաքրքրական են Սևանի տուրիստական բազայի զարգացման հեռանկարները։ Տուրիզմի համամիութենական խորհրդի որոշմամբ Սևանի տուրիստական բազայի ընդլայնման համար հատկացված է 7 միլիոն ռուբլի։ Այդ գումարով 18 հեկտար տարածության վրա կառուցվելու է 9-հարկանի մեծ շենք՝ 2250 տեղով, հինգհարյուր տեղանոց կինոթատրոն և այլ հարմարություններ։ Պետք է հուսալ, որ տուրիզմի հանրապետական խորհուրդը կարագացնի այս կարևոր կառույցի նախագծային աշխատանքները։

Հանգստացողների և հովեկների, քաղաքի բնակչության կուլտուրական սպասարկման կարևոր նախապայմաններից է կապի օրգանների աշխատանքը։ Շրջկոմը և կուսակցական կազմակերպությունները լուրջ նշանակություն տալով այդ հարցին, բարձր պահանջներ են ներկայացնում կապի աշխատողներին։ Հեռախոսը, հեռագիրը, մամուլը, ռադիոն և ինֆորմացիայի մյուս ձևերը մեր ժամանակի մարդու կենսապահանջների նվազագույնն են։ Առանց դրանց անխափան աշխատանքի՝ չկա իրական հանգիստ և ոչ մի մարդու համար։ Ահա թե ինչու վերջերս շրջկոմի բյուրոն քննարկելով ռադիո-հեռախոսային կապի սպասարկման վիճակը շրջանում, բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների և տեղական սովետների գործկոմների ուշադրությունը սրեց այդ հարցի վրա։ Հանգույցի և գծատեխնիկական տեղամասի կոմունիստները, բոլոր աշխատողները զգալի գործ են կատարել հեռախոսային ցանցի ընդլայնման և փոստային առաքումների բարելավման համար։

Այսպիսով, Սևանա լճափը ընդլայնվում է ու գեղեցկանում։ Եթե ներկայումս շրջանի հանգստավայրերում տարեկան հանգստանում են 22 հազար մարդ, և հանգստյան գոտին տարեկան (գլխավորապես ամառային սեզոնում) շաբաթ և կիրակի օրերին այցելում են ավելի քան 60 հազար զբոսաշրջիկ և հովեկ, ապա վստահորեն կարելի է ասել, որ մոտակա երկու-երեք տարում լճափին կազմակերպված և անհատական հանգստացողների



թիվը կկրկնապատկվի։ Դրա համար ստեղծվում են բոլոր նախադրյալները։ Բավական է ասել, որ միայն վերջին տարիներին հանրապետության բազմաթիվ հիմնարկություններ, հաստատություններ կառուցում են տարբեր տիպի հանգստյան տներ, պիոներական ճամբարներ, հյուրանոց-ռեստորաններ։ Օրինակ, այդ նպատակով համապատասխան հողամաս են հատկացվել խճուղային ճանապարհների գլխավոր վարչությանը, Չարենցավանի մեքենաշինական գիտահետազոտական ինստիտուտին, ՀՍՍՀ-ի շինանյութերի արդյունաբերության և շինարարական ինդուստրիայի մինիստրությանը, պոլիտեխնիկ ինստիտուտին, «Աշխատանք» սպորտային ընկերությանը, Երևանի ռետինատեխնիկական իրերի և «Հայէլեկտրալույս» գործարաններին, հանրապետության գյուղատնտեսության, առևտրի, կոմունալ տնտեսության և կենցաղային սպասարկման, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրություններին, № 66 և Ա—1941 փոստարկղների ձեռնարկություններին, Երքաղսովետին և այլ կազմակերպությունների։

Սակայն ցավով պետք է նշել, որ որոշ մինիստրություններ և գերատեսչություններ տարիներ շարունակ ձգձգում են օբյեկտների շինարարությունը։

Հրատապ պրոբլեմ է հանգստյան գոտու կոմունիկացիաների, կոյուղու հարցի վերջնական լուծումը, մինչդեռ Հայկական ՍՍՀ պետշինը անհասկանալի պատճառով դանդաղում է։ Նույնը պետք է ասել նաև լճափում զբոսայգիներ, սպորտհրապարակներ և այլ հարմարանքներ ստեղծելու մասին, որոնք հնարավորություն կտան հանգստացողների ժամանցը կազմակերպել նաև երեկոները։

Նոր հանգստյան տների, սանատորիաների և պանսիոնատների շինարարությանը զուգընթաց շարունակվում են լճափի բարեկարգումը, կանաչապատումը և գազիֆիկացումը։ Երևան—Թբիլիսի միջազգային տուրիստական տրասսայի լճափնյա հատվածում (18 կմ երկարությամբ) անց է կացվում լուսավորություն։ Գիշերները լյումինեսցենտային լամպերն արդեն պայծառ լուսավորում են հինգ կիլոմետր ձգվող լողափը և Թերակղզուց մինչև Հրազդան գետի հունը հասնող 3 կմ ճանապարհատվածը։

Շարունակվում են լճի շրջակայքով երկաթուղագծի շինարարական աշխատանքները։ Գնացքն արդեն հասնում է մինչև Թերակղզու դիմացի նորակառույց կայարանը։ Ուղևորները այստեղ, հենց կառամատույցից, ստորգետնյա անցուղիներով (երկաթգծի և Երևան—Թբիլիս խճուղու տակով անցնող թունելով) դուրս են գալիս լողափերը։ Մոտակա օրերին գնացքը հովեկներին կհասցնի մինչև «Ախթամար»։

Ծառապատվում են գեղածիծաղ լճի ափերն ու շրջակա բլուրները. դա ավելի է գեղեցկացնում լճավազանի բնաշխարհը։ Սևանի անտառտնտեսությունը վերջին տարիներին 580 հեկտար տարածության վրա տնկել է 4,5 միլիոն պտղատու և դեկորատիվ ծառ։ Պատշաճ խնամք են տարվում նորատունկ ծառերն ու թփերը պաշտպանելու և աճեցնելու համար։ Ափի տարբեր մասերում կառուցվում են 4 ջրհան կայան, որոնք մեկ ժամում 250 խորանարդ մետր ջուր կմղեն՝ Արեգունի լեռների ստորոտում և լճափի մյուս հատվածներում աճեցված դալար տնկիները ջրելու համար։

Սևանի լճափը ժամանակակից հանգստավայր դարձնելու համար պետք է լուծել խմելու ջրի հարցը։ Այդ նպատակին արդեն հատկացված է 443 հազար ռուբլի։ Սկսվել է Սևան քաղաքից մինչև Թերակղզի (18 կմ երկարությամբ)

ջրատարի կառուցումը, որի ավարտմամբ լճափի հանգստավայրերը մեկ վայրկյանում կստանան 60 լիտր խմելու ջուր։

Մինչև տարվա վերջը կավարտվի նաև հանգստյան գոտու բոլոր օբյեկտների գազաֆիկացումը, որով անհրաժեշտ պայմաններ կստեղծվեն նաև հանգստավայրերի ձմեռային սեզոնի գործունեության համար։

Սևանա լճի հանգստյան գոտու ձևավորումը ստեղծագործական բնույթ է կրում։ Այստեղ աշխատանքի պրոցեսում ծնվում են միանգամայն նոր մտահղացումներ, արվում առաջարկություններ։ Դրանցից ամենաուշագրավը թերակղզու պարանոցով ստորգետնյա ջրանցք անցկացնելու վերաբերյալ առաջարկությունն է, որին մենք համամիտ ենք։ Այդ միջոցառումը, նախ, լճի այս հատվածին կտա իր երբեմնի գեղեցկությունը, և, երկրորդ, հովեկներին հնարավորություն կընձեռի նավարկել կղզու շուրջը, զգալ էլեկտրական լույսով ողողված մոտ 500 մետր ստորգետնյա ջրանցքով անցնելու հաճույքը։

Ահա թե ինչու շատ ցանկալի է, որ հանրապետական համապատասխան կազմակերպություններին մտահոգեր նաև այս հարցը։

Ինչպես կոմունիստական շինարարության ամեն մի բնագավառի, այնպես և աշխատավորների կուլտուրական սպասարկման գործի հաջողությունը ևս վճռում են որակյալ կադրերը։ Այդ առումով շրջանային կուսկազմակերպության առջև ծառանում է հույժ կարևոր պրոբլեմ՝ պատրաստել մեծ թվով կադրեր, գլխավորապես միջին բուժաշխատողներ, բազմակողմանի զարգացած կուլտուր-մասսայական աշխատողներ, որակյալ խոհարարներ, մատուցողներ և սպասարկող այլ անձնակազմ։ Հանգստավայրերում եղած թերությունների զգալի մասը բացատրվում է այդ կադրերի պակասով, որը կարելի է մեղմել Սևանի բժշկական երկամյա ուսումնարանի և Ախթամարում գործող հասարակական սննդի աշխատողների երեքամսյա դասընթացների շրջանավարտներով։ Այս բնագավառում մենք կարիք ունենք հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության և այլ գերատեսչությունների օգնության։

***

ՍՄԿԿ XXII համագումարը խնդիր դրեց բարելավել աշխատավորների առողջարանային բուժման և հանգստի կազմակերպման գործը։ Վերջերս ավարտված ՍՍՀՄ VII գումարման Գերագույն սովետի IV սեսիայի որոշումները և հաստատված օրենքները ևս համակված են սովետական մարդու նկատմամբ անսահման հոգատարությամբ։

Ըստ արժանվույն գնահատելով աշխատավորների կուլտուրական հանգստի կազմակերպման, լճափի հանգստյան գոտու վիճակի բարելավման նպատակով կատարված աշխատանքը, Սևանի շրջանի կուսկազմակերպությունը, բոլոր կոմունիստներն այսուհետև ևս կպայքարեն անշեղորեն կենսագործելու համագումարի դիրեկտիվներն ու Գերագույն սովետի սեսիայի որոշումները, ավելի կբարելավեն աշխատավորների հանգստի կազմակերպումն ու սպասարկումը Սևանում։

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

ԱՅՎԱԶՅԱՆ Ն. Կ.

ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ XXIII համագումարը բացառիկ ուշադրություն հատկացրեց կուսակցական-կազմակերպական աշխատանքի բարելավման, սկզբնական կուսկազմակերպությունների ամրապնդման, նրանց դերի ու մարտունակության հետագա բարձրացման հարցերին։ Առանձնահատուկ նշանակություն ունի բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը,— ասված է համագումարի բանաձևում։— Կուսակցական կոմիտեները պետք է հաստատորեն հենվեն նրանց վրա, օգնեն նրանց ներկուսակցական կյանքը կազմակերպելու և աշխատավորների շրջանում մասսայական-քաղաքական գործունեության ծավալման ասպարեզում։

Կուսակցության համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումները մեծապես օգնեցին բարելավելու կուսակցական կազմակերպությունների գործունեությունը, բարձրացնելու կուսակցական-կազմակերպական աշխատանքի մակարդակը, կոմունիստների ակտիվությունը։ Այդ գործում զգալի դեր խաղացին «Պրավդա»-ն ու մեր մամուլը, որոնց էջերում ավելի շատ տեղ է հատկացվում կուսակցական կյանքի հարցերի լուսաբանմանը, մարդկանց աշխույժ փոխանակության ծավալում կուսաշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման վերաբերյալ և դրանով օգնում կուսկազմակերպությունների գործունեության բարելավմանը։

Ներկուսակցական աշխատանքի աշխուժացման, սկզբնական կուսկազմակերպությունների դերի ու մարտունակության բարձրացման ուղղությամբ զգալի գործ է կատարված նաև Թալինի շրջանում։ Կուսշրջկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում սիստեմատիկաբար քննարկվել են ներկուսակցական աշխատանքի բարելավման հետ կապված հարցեր, այդ թվում նաև առանձին կազմակերպությունների հաշվետվություններ։ Վերջին տարիներին Թալինի կուսշրջկոմը պարբերաբար քննարկել է կուսակցական կյանքի հրատապ հարցերը։ Այս տարվա հունիսին շրջկոմի պլենումում քննարկեցինք սկզբնական կուսկազմակերպություններում ներկուսակցական աշխատանքի վիճակի և նրա բարելավման միջոցառումների վերաբերյալ հարցը։ Բացի այդ, շրջկոմի բյուրոյում ամեն տարի քննարկվում են առնվազն 2—3 սկզբնական կուսկազմակերպությունների ընդհանուր հաշվետվություններ, կոմունիստների քաղաքական ուսուցման, կոմերիտմիության նկատմամբ կուսակցական ղեկավարության իրականացման, քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպման հարցեր։

Սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարումը միայն չի սահմանափակվում նրանց հաշվետվությունների, զեկուցումների քննարկումով։ Այստեղ մեծ դեր է խաղում շրջկոմի պատասխանատու աշխատողների, հատկապես հրահանգիչների կենդանի կապը տեղերի հետ, նրանց օգնությունը կուսկազմակերպություններին։

Այս ամենը շրջկոմին հնարավորություն է ընձեռում իր գործունեության պրոցեսում հենվելու կուսկազմակերպությունների վրա, մոտիկից ճանաչելու նրանց քարտուղարներին, ակտիվին, զբաղվելու կոմունիստների ուսուցմամբ ու դաստիարակությամբ, հաշվի առնելու նրանց փորձն ու ցանկությունները։

Շրջկոմը կազմակերպել է կուսկազմակերպության քարտուղարների կանոնավոր քաղուսուցումը, հասել նրանց որակական կազմի բարելավմանը։ Այժմ կոլտնտեսային կուսկազմակերպությունների 26 քարտուղարներից 17-ը ունեն բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն, ընդ որում նրանցից 11-ը գյուղատնտեսության մասնագետներ են։

Շրջանում զգալիորեն բարելավվել է նաև կոմունիստների տեղաբաշխման, արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի ապահովման գործը։ Այժմ կոլտնտեսային կուսկազմակերպությունների 552 կոմունիստներից 351-ը աշխատում են դաշտավարության և անասնաբուծության բնագավառում։

Ուժեղացված ու կայունացված է կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների, գյուղատնտեսության մասնագետների, ինչպես նաև միջին օղակի կադրերի կազմը։ Փորձը ցույց է տալիս, որ կադրերի հաճախակի փոփոխումը նոր առաջ քաշված ընկերներին հնարավորություն չի տալիս լրիվ դրսևորելու իրենց ընդունակությունները, տիրապետելու գործին, ճանաչելու մարդկանց, որից, հարկավ, տուժում է ընդհանուր գործը։ Շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները, չթուլացնելով պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, ջանում են համբերատարությամբ նրանց սովորեցնել, դաստիարակել սեփական սխալների վրա, բարձրացնելով պատասխանատվության զգացումը հանձնարարված գործի վրա։ Այսպիսի մոտեցումը մեզ հնարավորություն է տվել աճեցնելու շնորհալի կադրեր, որոնք վայելում են մասսաների համակրանքը։

Մեր առջև ծառացած հիմնական խնդիրներից մեկը՝ ՍՄԿԿ շարքերի աճն ու երիտասարդ կոմունիստների գաղափարական դաստիարակումն է։ Շրջկոմը և շատ սկզբնական կուսկազմակերպություններ վերջին ժամանակներում զգալի գործ են կատարել առաջավոր բանվորներին և կոլտնտեսականներին, ժողովրդական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներին անհատական ընտրության կարգով ՍՄԿԿ շարքերն ընդունելու գործում։

Հատկանշականն այն է, որ բարձրացրել է պահանջկոտությունը ՍՄԿԿ շարքերն ընդունվողների նկատմամբ, իսկ կոմունիստների հիմնական մասը պատասխանատվության ավելի բարձր զգացումով է վերաբերվում երաշխավորություններ տալու հարցում։ 1967 թ. և այս տարվա անցած հինգ ամսում շրջանում ՍՄԿԿ անդամության թեկնածու են ընդունվել 76 մարդ, որոնցից 53-ը բանվորներ և շարքային կոլտնտեսականներ են։ Ահա նրանցից մի քանիսի ընդհանուր բնութագիրը։ Աիդա Հայկյան՝ երիտասարդ կթվորուհի է։ Եղնիկի կոլտնտեսության կոմերիտմիության կազմակերպության քարտուղար, բարեխղճորեն է վերաբերվում իր աշխատանքին և հասարակական պարտականությունների կատարմանը. ագիտատոր է, վայելում է ֆերմայի աշխատողների հարգանքը։ Գերասիմ Խաչատրյան՝ Գառնահովիտի կոլտնտեսության



առաջավոր հովիվ, շրջանում և հանրապետությունում ճանաչված մարդ է, Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի դեպուտատ, ակտիվ հասարակական գործիչ։ Վաղարշակ Ներսիսյան՝ Ցամաքասարի կոլտնտեսության լավագույն աշխատողներից մեկն է, ագիտատոր և միաժամանակ պատի թերթի խմբկոլի նախագահ։ Այդպիսի բնութագիր ունեն գրեթե բոլոր կուսթեկնածուները։

Այսուհանդերձ պետք է նշել, որ մի շարք կուսկազմակերպություններ անբավարար են զբաղվում ընդունելության հարցով։ Ոչնչով չի կարելի արդարացնել այն, որ Իրինդի, Կաքավաձորի, Կաթնաղբյուրի, Սորիկի կոլտնտեսային, էլցանցի և պեռլիտի գործարանի կազմակերպությունները վերջին երեք տարում ոչ մի մարդ չեն ընդունել կուսակցության մեջ, իսկ մի քանի կազմակերպություններ ընդունել են ընդամենը մեկ-երկու մարդ։ Առանձին կուսկազմակերպություններ ձգձգում են ՍՄԿԿ-ի շարքերն ընդունվելու համար տրված դիմումների քննարկումը։

Ընդունելությանը զուգընթաց կուսկազմակերպություններում պատշաճ աշխատանք է տարվում երիտասարդ կոմունիստների դաստիարակության բնագավառում։ Նրանք մասնակցում են քաղխմբակների պարապմունքներին, ներկուսակցական կյանքին, բարձրացվում է նրանց պատասխանատվությունը կանոնադրական պարտականությունների կատարման գործում։

Ներկուսակցական աշխատանքների կարևոր տեղամաս է կուսակցական ժողովի և կուսբյուրոյի նիստերի նախապատրաստումն ու անցկացումը։ Կուսակցության Կենտկոմը պահանջել ու պահանջում է կուսակցական ժողովներն անցկացնել խնամքով նախապատրաստված։ Նույնիսկ քաղաքացիական պատերազմի տարիներին Վ. Ի. Լենինը՝ կուսանդամների ինքնագործունեության զարգացման համար պարտադիր էր համարում կուսակցության անդամներին ավելի հաճախ լայն ժողովներին հրավիրելը։

Եթե այս կամ այն կուսկազմակերպություններում ժողովներ չեն հրավիրվում, կարելի է ասել, որ այդ կազմակերպությունը մատնված է անգործության, իսկ նրա անդամները չեն օգտվում կանոնադրական իրավունքներից ու չեն կատարում իրենց պարտականությունները։

Մեզ մոտ, իհարկե, քիչ բան չի արված կուսժողովների դաստիարակչական դերի բարձրացման ուղղությամբ։ Այդ գործում առանձնապես ուսանելի է Մաստարայի և Արտենիի սովխոզային, Ցամաքասարի և Ն. Բազմաբերդի կոլտնտեսային, Վ. Թալինի, Ն. Սասնաշենի և Կարմրաշենի դպրոցական, Մաստարայի և Ն. Բազմաբերդի տերիտորիալ, շրջգործկոմի և այլ սկզբնական կուսկազմակերպությունների փորձը։ Այդ կուսկազմակերպություններում ժողովներն անց են կացվում կանոնավոր, կոմունիստները հանդես են գալիս քննադատական ելույթներով և խելացի առաջարկություններով։ Դա նպաստում է օրակարգերում դրված հարցերի բազմակողմանի քննարկմանը, ճիշտ և գործարար որոշումների ընդունմանը։ Ահա բազմաթիվ օրինակներից մեկը։

...Անցած աշնանն էր։ Արտենիի սովխոզի առջև ծանրացած էր 792 հեկտար խաղողի այգիների ձմեռման նախապատրաստման դժվարին խնդիրը։ Անհրաժեշտ էր բոլոր միջոցները գործի դնել այգեթաղը հաջողությամբ ավարտելու համար։ Կուսկազմակերպությունը չհապաղեց։ Բյուրոյի նիստում որոշվեց ընդհանուր ժողովում քննարկել «Այգեթաղի հաջող ավարտման հարցը»։ Դրա նախապատրաստման համար նախօրոք հանձնարարություններ տվեց կոմունիստներին։ Երբ հարցը բազմակողմանիորեն նախապատրաստված էր, քննարկվեց կուսկազմակերպության դռնբաց ժողովում։

Հարցը հուզող էր, ժողովականներից շատերը ելույթ ունեցան և կոնկրետ առաջարկություններ արին։ Այգեգործուհի Գեղեցիկ Ալավերդյանը պահանջեց պայմաններ ստեղծել և ապահովել բոլոր կանանց մասնակցությունը այգեթաղին։ Սովխոզի դիրեկտոր Բ. Խաչատրյանը խնդիր դրեց մոբիլիզացնել ավանի ամբողջ աշխատավորությանը՝ այդ թվում սովխոզի վարչական ապարատի, ավանային սովետի, կապի բաժանմունքի և այլոց ուժերը։

Այդ և մյուս միջոցառումների իրականացման առթիվ կոմունիստներին տրվեցին կոնկրետ հանձնարարություններ։ Եվ ահա ցանկալի արդյունքը. այգեթաղն սկսվեց բազմակողմանիորեն նախապատրաստված և հոբելյանական տարում Արտենիում այգեթաղն ավարտվեց նախորդից 10 օր շուտ։

Միաժամանակ շրջանում կան նաև առանձին սկզբնական կուսկազմակերպություններ, որոնք պատշաճ ուշադրություն չեն դարձնում ժողովների կանոնավոր հրավիրման վրա, թերագնահատում դրանց դաստիարակչական նշանակությունը։ Օրինակ, Քարակերտի այգեգործական սովխոզի կուսկազմակերպությունում 1967 թ. ապրիլից մինչև օգոստոս ժողով չի հրավիրվել, ուստի զարմանալի չէ, որ այստեղ մոռացության են մատնվել ներկուսակցական աշխատանքի կարևոր հարցերը, ընկած է կուսակցական և աշխատանքային կարգապահությունը, 63 կոմունիստից միայն 28-ն են անմիջականորեն աշխատում արտադրության մեջ, բարձիթող վիճակում է կուսակցական տնտեսությունը, բացակայում է կատարման ստուգումը, թույլ է ագիտացիոն մասսայական աշխատանքը։

Կուսակցական ժողովների հրավիրման ժամկետների խախտման, նրանց ձախողման առանձին դեպքեր եղել են նաև մի քանի այլ կոլտնտեսությունների (Ն. Սասնաշեն, Վ. Բազմաբերդ, Կաքավաձոր և այլն), «Գյուղատնտեխնիկա»-ի և կապի բաժանմունքների, շրջսպառկոոպի և բուժհիմնարկների կազմակերպություններում։ Եվ պատահական չէր, որ շրջկոմի վերոհիշյալ պլենումում քննադատվեցին նաև այդ կազմակերպությունների ղեկավարները, ինչպես և շրջկոմի բաժիններն ու առանձին աշխատողներ։

Պլենումում խոսեց նաև Քարակերտի այգեգործական սովխոզի կուսբյուրոյի քարտուղար Հ. Խաչատրյանը, որն իր սխալը խոստովանելու փոխարեն փորձեց ամիսներ շարունակ ժողով ու բյուրոյի նիստ չհրավիրելը պատճառաբանել նրանով, որ իբր գյուղատնտեսական լարված աշխատանքի ամիսներին չեն ցանկացել մարդկանց կտրել գործից։ Պլենումի մասնակիցները այդ պատճառաբանությունները համարեցին անհիմն։

Ժողովներ չհրավիրելը, նրանց դերի թերագնահատումը նույնպես վնասակար է, ինչպես վնասակար է կենդանի կազմակերպական աշխատանքը նիստարարությամբ, վատ նախապատրաստված ժողովներով փոխարինելը։

Ներկուսակցական աշխատանքի կարևոր բնագավառ է ոչ միայն կուսակցական ժողովների նախապատրաստումն ու անցկացումը, այլև ընդունած որոշումների կատարման ստուգումը։ Դա ժամանակին կանխում է կուսակցական, սովետական և տնտեսական օրգանների գործունեության հնարավոր սխալներն ու վրիպումները, բոլոր կադրերին սովորեցնում է աշխատել արդյունավետ, նրանց դաստիարակում պետական ու կուսակցական կարգապահության ոգով և ապահովում ընդունած որոշումների ժամանակին կատարումը։

Բայց պետք է նշել, որ կուսակցական աշխատանքի այս մարզում և-



կան առանձին թերություններ, որոնք նույնպես քննադատության ենթարկվե-
ցին կուսշրջկոմի պլենումում։
խոսք եղավ Ն. Արթիկի կոլտնտեսության վարչության և սկզբնական
կուսկազմակերպության սխալների մասին։ Այդ կոլտնտեսության կազմակեր-
պության ղեկավարներին չէր կարելի կշտամբել կուսժողովներ, բյուրոյի նիս-
տեր չհրավիրելու համար։ Ամեն ինչ կատարվում էր իր ժամանակին. ընդուն-
վում էին որոշումներ, բայց... մոռանում դրանց կատարման ստուգումը։
Երբ 1967 թ. կուսշրջկոմն զբաղվեց այդ կոլտնտեսության ետ մնալու
պատճառների ուսումնասիրությամբ, պարզվեց, որ կոլտնտեսության կուսբյու-
րոյի քարտուղար Ս. Հարությունյանը և կոլտնտեսության վարչության նա-
խագահ Հ. Հայրապետյանը գործում են անհամերաշխ և դա բացասաբար էր
անդրադառնում կադրերի դաստիարակման, հետևաբար, ամբողջ տնտեսու-
թյան գործերի վրա։ Կուսշրջկոմի բյուրոն, հաշվի առնելով այդ ամենը, Ս. Հա-
րությունյանին ազատեց կուսբյուրոյի քարտուղարի պարտականությունից և
կուսակցական խիստ տույժի ենթարկեց կոլտնտեսության նախագահին, հույս
ունենալով, որ նա դրանից պատշաճ հետևություններ կանի և կուղղվի։ Բայց
նա չուղղվեց և շարունակեց արհամարհել կոլտնտեսականների հասարակական
կարծիքը, արտելի գործերի կոլեկտիվ ղեկավարման սկզբունքները ու շարու-
նակեց իր երբեմնի կոպտությունները։ Իսկ այս ամենը կոլտնտեսությունում
ավելի փչացրին մարդկանց հարաբերությունները։ Եվ շրջանային կազմակեր-
պությունները հարկադրված դիմեցին կազմակերպական միջոցառումների։ Այս
տարվա մայիսին Ն. Արթիկի կոլտնտեսականների ընդհանուր ժողովը կուս-
շրջկոմի բյուրոյի խորհրդով Հ. Հայրապետյանին ազատեց կոլտնտեսության
նախագահի պաշտոնից։
Շրջկոմի նախաձեռնությամբ աշխատանքից ազատվեց նաև Հակկոյի
անասնապահական սովխոզի դիրեկտոր Ուբեն Օղմանյանը, որի անբավարար
աշխատանքի հետևանքով այդ տնտեսությունը տարիներ շարունակ չի կատա-
րում արտադրական պլանները, աշխատում էր վնասով։ Այս սովխոզում
ստեղծված վիճակը մասամբ պայմանավորված էր նաև կուսակցական կազ-
մակերպության անբավարար աշխատանքով։ Սկզբնական կուսկազմակերպու-
թյունը վատ էր վերահսկում սովխոզի դիրեկցիայի գործունեությունը, քիչ
էր զբաղվում բանվորների ու բանվորուհիների դաստիարակության գործով։
Այնտեղ, ուր կուսկազմակերպությունը իր դերում չէ, բացառված չեն նաև
առանձին ղեկավարների կողմից պաշտոնական դիրքի չարաշահումները,
մարդկանց իրավունքների և ընդհանրապես օրինականությունների ոտնահա-
րումը, հանրային սեփականության վատնումներն ու գողությունները։ Վեր-
ջերս իրենց պաշտոնից հանվեցին Եղնիկի կոլտնտեսության նախագահ Վ. Ա-
ղաբեկյանը և հաշվապահ Կ. Ղազարյանը, որոնք, օգտվելով կուսկազմակեր-
պության (քարտուղար Ջ. Սուվարյան) վերահսկողության բացակայությունից,
կոպտորեն խախտել են ֆինանսական կարգապահությունը, կատարել զանա-
զան հավելագրումներ և այլ օրինազանցություններ։
Կուսակցական-կազմակերպական և քաղաքական-գաղափարական աշխա-
տանքի բարելավումը օգնել և օգնում է կոմունիստների ակտիվացմանը, նր-
անց ավանգարդային դերի բարձրացմանը, բոլոր աշխատավորների ստեղ-
ծագործական ուժերի մոբիլիզացմանը՝ տնտեսական պլանների կատարման
համար։

# ՀԼԿԵՄ ՊԱՅՔԱՐԸ ՀԱՆՈՒՆ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ

Սովետական կարգերի հաղթանակով Անդրկովկասում ժողովուրդների բարեկամության և եղբայրական համագործակցության նոր, ավելի բարձր էտապ սկսվեց։ Եթե մինչ այդ նրանք կոմունիստական կուսակցության գլխավորությամբ պայքարում էին պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար, ապա այժմ՝ նրա ամրապնդման և սոցիալիստական հասարակարգ կառուցելու համար։ Իսկ դա հրամայաբար պահանջում էր միավորել Անդրկովկասի սովետական երեք հանրապետությունների ջանքերը, նրանց միջև ստեղծել ռազմաքաղաքական, տնտեսական և կուլտուրական դաշինք։

Անդրֆեդերացիայի ստեղծումը լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի փայլուն ապացույցն էր։ Այն իրականացվեց լարված պայքարի պայմաններում։ Նացիոնալիստական, շովինիստական տարրերն ամեն կերպ փորձեցին խափանել Անդրֆեդերացիայի կազմավորումը։ Սակայն երկրամասի կոմունիստների պայքարի շնորհիվ հակառակորդների ջանքերը ապարդյուն անցան։ Ամենուրեք աշխատավոր ժողովուրդը հետևեց կոմունիստներին։

Անդրֆեդերացիայի կազմակերպմանը մեծապես նպաստեցին նաև երկրամասի կոմերիտական կազմակերպությունները։ Նրանք աշխատավոր երիտասարդությանը լուսաբանեցին ֆեդերացիայի ստեղծման անհրաժեշտությունն ու նշանակությունը, լայն ագիտացիա մղեցին հօգուտ նրա կազմավորման։

Հայաստանի կոմերիտմիությունը ջերմորեն ողջունեց այդ իրադարձությունը։ Աշտարակի շրջանի կոմերիտական և չքավոր արտամիութենական երիտասարդության կոնֆերանսը (1922 թ. դեկտեմբերի 14-ին), ողջունելով երեք հանրապետությունների աշխատավորության եղբայրական միությունը, նշեց, որ դա միակ միջոցն է հաջողությամբ վերաշինելու մեր քանդված օջախները և իր պատրաստակամությունը հայտնեց երիտասարդ ուժեր տրամադրել նոր սկսված ստեղծագործական աշխատանքին նպաստելու համար[1]։

Անդրֆեդերացիայի կազմակերպման աշխատանքներին զուգընթաց Անդրկովկասի, ինչպես և Հայաստանի կոմերիտական կազմակերպությունները զգալի գործ կատարեցին երեք հանրապետությունների կոմերիտական կազմակերպությունների ջանքերի միավորման և ՌԿԵՄ հետ սերտորեն համախմբման համար։ Ընդ որում, այդ ամենը արվում էր դեռևս երկրամասում սովետական իշխանության հաղթանակից առաջ։

Կոմունիստական ինտերնացիոնալի ստեղծումից հետո ՌԿԵՄ Կենտկոմը դիմեց Կոմինտերնի գործկոմին՝ երիտասարդության սոցիալիստական միությունների միջազգային կոնգրես հրավիրելու համար, որը գումարվեց 1919 թ. նոյեմբերի 20—26-ին (Բեռլինում) և դրանով կոմունիստական երիտասարդական ինտերնացիոնալի սկիզբը դրվեց։

Ռուսաստանի կոմերիտականների օրինակը անսահման ոգեշնչեց Անդրկովկասի աշխատավոր երիտասարդությանը նրա մղած հերոսական պայքարում։ 1919 թ. ամռանից ՌԿԿ Կովկասյան երկրային կոմիտեի ցուցումներով և տեղական կոմունիստական կուսակցությունների ղեկավարությամբ, Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի կոմունիստական երիտասարդական միությունները գործնական քայլեր կատարեցին ՌԿԵՄ հետ միավորվելու և կազմակերպորեն ձուլվելու համար։ Մայիսի 25-ին բանվոր երիտասարդության ինտերնացիոնալ միության Բաքվում կայացած II կոնֆերանսը քննարկեց նաև Անդրկովկասի բանվորա-գյուղացիական երիտասարդական միությունները

[1] Տե՛ս ՄԼԻ ՀՑԱ, ֆ. 48, գ. 27, ց. 1, թ. 11—12:



միավորելու հարցը և այդ առաջարկով դիմեց Հայաստանի և Վրաստանի կազմակերպություններին[1]։ Նմանօրինակ առաջարկներով հանդես եկան նաև Հայաստանի և Վրաստանի կոմերիտական կազմակերպությունները։

Միավորման ճանապարհին խոշոր քայլ էր 1919 թ. հունիսի 11-ից Բաքվում «Молодой рабочий» կոմերիտական թերթի լույս ընծայումը, որի նպատակն էր՝ լինել Անդրկովկասյան օրգան։

1919 թ. սեպտեմբերի 22-ին ՌԿԿ Կովկասյան երկրային կոմիտեի նախաձեռնությամբ Բաքվում կայացավ Անդրկովկասի բանվորագյուղացիական երիտասարդական միությունների առաջին միացյալ կոնֆերանսը, որի նիստերին ՌԿԿ Կովկասյան երկրային և Բաքվի կոմիտեների կողմից մասնակցեց Ա. Ի. Միկոյանը։ Նա հանդես եկավ բանվորա-գյուղացիական երիտասարդական միությունների խնդիրների շուրջ զեկուցումով։ Կոնֆերանսը հաստատեց միությունների կանոնադրության նախագիծը, որի լեյտմոտիվը՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ միության ողջ գործունեությունն ու պայքարը կազմակերպելն էր։

Կոնֆերանսը Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի կոմերիտական կազմակերպությունները համարեց ՌԿԵՄ բաղկացուցիչ մասը, ընտրեց ՌԿԵՄ Անդրկովկասյան մարզային (երկրային) կոմիտե, որի կազմի մեջ ընտրվեց նաև Ղ. Ղուկասյանը։ Կոնֆերանսը մեծ նշանակություն ունեցավ Անդրկովկասի երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության գործում։ Այն անցավ կոմունիստական կուսակցության գաղափարական ղեկավարությամբ։ Բաքվի կոնֆերանսը դրեց Անդրկովկասի բանվորա-գյուղացիական երիտասարդական կազմակերպությունների՝ որպես ՌԿԵՄ անբաժանելի բաղկացուցիչ մասի, միավորման սկիզբը։

1920 թ. մայիսի 22-ին ՌԿԵՄ Անդրկովկասյան մարզային կոմիտեն, նկատի ունենալով ստեղծված նոր իրադրությունը (Ադրբեջանում և Հյուսիսային Կովկասում վերականգնվել էր սովետական իշխանությունը, ՌՍՖՍՀ ճանաչել էր Վրաստանի դեմոկրատական հանրապետության անկախությունը), դադարեց գործելուց։ Նույն թվականի հունիսի սկզբներին ստեղծվեց ՌԿԵՄ Կովկասյան երկրային կոմիտե, որն սկսեց իր ակտիվ գործունեությունը երիտասարդության շրջաններում։

Հայաստանի աշխատավոր երիտասարդության ներկայացուցիչները 1920 թ. սեպտեմբերին մասնակցեցին Բաքվում գումարված Արևելքի երիտասարդության համագումարին, որն իր ողջույնը հղեց Հայաստանի հեղափոխական երիտասարդությանը։

Կովկասյան հանրապետությունների կոմերիտական կազմակերպությունների փոխադարձ համագործակցության ուժեղացումն ու ամրապնդումն աստիճանաբար դարձան օրվա պահանջը։ Այդ գործում կարևոր դեր խաղաց 1921 թ. հուլիսի 15-ին Թիֆլիսում կայացած Կովկասի կոմերիտական ակտիվի խորհրդակցությունը, որին մասնակցում էին ՌԿԵՄ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի, կոմերիտմիության Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի Կենտրոնական կոմիտեների, Աբխազիայի կազմակերպական բյուրոյի, Բաքվի, Թիֆլիսի, Ալեքսանդրապոլի, բանակի կոմերիտկազմակերպությունների ներկայացուցիչները՝ ընդամենը 34 հոգի[1]։

Խորհրդակցության մասնակիցները ցանկություն հայտնեցին ՌԿԵՄ շարքերում կազմակերպչորեն միավորել Կովկասյան հանրապետությունների կոմերիտական կազմակերպությունները։ Որոշվեց 1921 թ. սեպտեմբերի 1-ին Բաքվում հրավիրել Կովկասյան հանրապետությունների կոմերիտական կազմակերպությունների համագումար, իսկ մինչ այդ՝ հանրապետություններում։ Այդպես էլ եղավ. նշված օրը Բաքվում բացվեց կոմերիտմիության համակովկասյան I համագումարը, որին մասնակցեցին Հայաստանի կոմերիտմիության 66 պատվիրակ։ ՌԿԿ Կենտկոմի և Ադրբեջանի ԿԿ Կենտկոմի անունից համագումարը ողջունեց Ս. Մ. Կիրովը։

Համագումարում քննարկվեցին Կովկասի քաղաքական դրությանը, միության քաղաքական խնդիրներին և սոցիալիստական շինարարությանը երիտասարդության մասնակցությանը վերաբերող հարցերը, ընտրվեցին ՌԿԵՄ Կովկասյան երկրային կոմիտե և կոմերիտմիության համառուսաստանյան V համագումարի պատվիրակներ։

Համագումարում հատկապես նշվեց, որ երկրամասի կոմերիտական կազմակերպությունները զգալի հաջողությունների են հասել երիտասարդությանը ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ասպարեզում։ Համագումարի ողջ աշխատանքներն ընթացան ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո, Կովկասի երիտասարդությունն ի լուր ամենքի հայտարարեց, որ ինքը հետևողականորեն կպայքարի նացիոնալիզմի ու շովինիզմի դեմ՝ հանուն կոմունիստական ինտերնացիոնալիզմի։

Կոմերիտմիության Անդրկովկասյան I համագումարը որոշեց կազմակերպչորեն ՌԿԵՄ կազմում միավորել Կովկասի կոմերիտական կազմակերպությունները և ընտրեց ՌԿԵՄ Կովկաս-

[1] Տե՛ս ՄԼԻ ՎՑԱ, ֆ. 94, գ. 12:

[1] Տե՛ս ՄԼԻ ՎՑԱ, ֆ. 94, գ. 28:

յան երկրային կոմիտե։ Համագումարը ՌԿ(բ)Կ Կենտկոմին հղեց հետևյալ հեռագիրը.

«Սովետական Կովկասի բանվորա-գյուղացիական կոմունիստական երիտասարդությունն իր ջերմ ողջույնն է հղում Ռուսաստանի պրոլետարիատի մեծ ղեկավարին, պրոլետարական ապստամբության կրակում և բարիկադների վրա կոփված համաշխարհային կոմունիստական հեղափոխությունը նախաձեռնող ու ոգեշնչող պանծալի կոմունիստական կուսակցությանը։ Այն օրերին, երբ աշխատավորության դավաճանները, հակահեղափոխական բուրժուական կուսակցությունների առաջնորդները նորից ձգտում են հրահրել հանգած ազգային թշնամանքը, որպեսզի քայքայեն բանվորա-գյուղացիական իշխանության հիմքերը, Կովկասի կոմունիստական երիտասարդությունն իր առաջին համագումարում դնում է վերածնված կարմիր Կովկասի բոլոր ժողովուրդների և ցեղերի ինտերնացիոնալ եղբայրական միության հիմնաքարը։ Կեցցե՛ իր պայքարում, աշխատանքում և հաղթանակում միավորված կովկասյան բոլոր ժողովուրդների կարմիր երիտասարդությունը։ Կեցցե՛ նրա փառապանծ առաջնորդը՝ Ռուսաստանի կոմունիստական կուսակցությունը»[1]։

Հայաստանի կոմերիտմիությունն իր ողջ գործունեությամբ հավատարիմ մնաց այդ ծրագրային վավերագրի ոգուն, մշտապես պայքարեց հանուն ինտերնացիոնալիզմի։ Կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտքը, Հայաստանի կոմերիտականները մեծ օգնություն ցույց տվին 1921 թ. երաշտից տուժած Պովոլժիեի սովյալներին։ Կոմերիտմիության գավառային, շրջանային կոմիտեներին կից ստեղծվեցին սովյալներին օգնություն կազմակերպող հարվածային եռյակներ։ Այդ ժամանակ կոմերիտականների շրջանում ամենուր թևածում էր «Փրկեցե՛ք սովյալներին ձեր փայի և աշխատավարձի մի մասով» կոչը։ Վրաստանի, Ադրբեջանի, Դաղստանի ու Աբխազիայի կոմերիտականների հետ միասին Հայաստանի կոմերիտականներն այդ գործում իրենց արժանի լուման մուծեցին։ Դիլիջանի կոմերիտականներն արտելներից ստացված իրենց եկամուտների մի մասը հատկացրին Մերձվոլգյան սովյալներին,— հաղորդում էր «Երիտասարդ կոմունիստը» [2]։

«Երիտասարդ կոմունիստի» մեկ այլ հաղորդագրությունից իմանում ենք, որ կոմերիտմիության Ղարաքիլիսայի (Կիրովական) կազմակերպությունը սովյալների օգտին հավաքել է 540000 ռուբլի, Բասարգեչարինը՝ 60 փութ գարի, Նոր Բայազեդի գավառի Ղարանլուխի շրջանի կոմերիտականները՝ 70 փութ ցորեն և դրամական նվիրաբերություններ ու հանձնել են պետական դրամարկղին[1]։

Այսպիսով, շնորհիվ համաժողովրդական ջանքերի, որի մեջ իր համեստ լուման ուներ նաև Հայաստանի կոմերիտմիությունը, սովը հաղթահարվեց, և արդեն 1922 թ. գարնանը նույնիսկ ամենատուժած շրջաններում ընդլայնվեցին ցանքատարածությունները։

Հայաստանի կոմունիստական երիտասարդական միության Կենտրոնական կոմիտեն ըսկզբից ևեթ լուրջ ուշադրություն նվիրեց Հայաստանում բնակվող ադրբեջանցի երիտասարդության շրջանում տարվող աշխատանքներին։ 1921 թ. հուլիսի 24-ին ՀԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեի բյուրոյի նիստը, լսելով զեկուցում երկրի քաղաքական վիճակի մասին, որոշեց ուժեղացնել պայքարը նացիոնալիզմի դեմ[2]։ Կենտկոմի այդ որոշումը լայն արձագանք գտավ կոմերիտականների շրջանում։ Բազմաթիվ կոմերիտական աշխատողներ (հայ թե ադրբեջանցի) շրջում էին գյուղերը, ադրբեջանցի երիտասարդներին պատմում մեր ժողովուրդների դարավոր բարեկամության մասին, բացահայտում նացիոնալիզմի վարակը ծնող պատճառները։ Ագիտացիան փայլուն արդյունք տվեց։ Ահա թե ինչ էր գրում կոմերիտական թղթակիցը Հրազդանի շրջանից. «...հատկապես գովելի է նացիոնալիզմի վերացումը, թուրք և հայ երիտասարդները միևնույն յաշեյկայում ձեռք են մեկնել իրար և միևնույն սուրբ նպատակով ոգևորվում են» [3]։

Բացի այդ, ՀԼԿԵՄ Կենտրոնական և գավառային կոմիտեները լայն աշխատանք էին տանում հայ, ռուս և ադրբեջանցի երիտասարդությանը կոմերիտմիության շարքերում ընդգրկելու համար։ Հաջողությունները շուտով ակնառու դարձան։ 1922 թ. ՀԼԿԵՄ Կենտկոմի ագիտ-պրոպագանդիստական բաժինը Երևանում դասընթացներ բացեց ադրբեջանցի կոմերիտականների շրջանում աշխատողներ պատրաստելու համար։

Այնուհետև ՀԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեի նախագահությունը 1923 թ. հոկտեմբերի 10-ին որոշեց Կենտկոմին կից ստեղծել ադրբեջանական սեկցիա[4]։ Սեկցիայի ղեկավար նշանակվեց Յուսուֆ Զադեն։ Սեկցիան ամբողջությամբ լուծեց իր առջև դրված խնդիրները։

Ազգային փոքրամասնությունների երիտասարդության շրջանում տարվող աշխատանքների ուժեղացման հարցը քննարկվեց նաև կոմերիտմիության III համագումարում, որը խնդիր դրեց. «Նկատի ունենալով ազգային փոքրամասնությունների շրջանում մինչև այժմ կատարված աշխատանքները, ՀԼԿԵՄ ԿԿ պետք է վերցնի մուսուլմանական կազմակերպությունների ընդարձակման կուրս»[1]։ Համագումարը հավանություն տվեց Կենտկոմին կից ադրբեջանական սեկցիա ունենալու առաջարկին։

1925 թ. օգոստոսին ՀԼԿԵՄ Կենտկոմի հերթական պլենումում նորից շոշափվեց այդ հարցը, նշվեցին ձեռք բերված նվաճումները, խընդիր դրվեց ավելի խորացնել ադրբեջանցի երիտասարդների շրջանում տարվող աշխատանքները, ՀԼԿԵՄ շարքերում ընդգրկել միջակ գյուղացի լավագույն երիտասարդներին։

ՀԼԿԵՄ գործունեությունը չէր սահմանափակվում դրանով։ 1924—25 թթ. Երևանի, Էջմիածնի, Նոր Բայազեդի և Լոռի-Փամբակի գավառներում անցկացվեցին ադրբեջանցի երիտասարդության անկուսակցական կոնֆերանսներ և համագումար-դասընթացներ, որոնք օգնեցին երիտասարդներին մասնակցելու հասարակական-քաղաքական կյանքին, մտնելու կոմերիտմիության շարքերը։ Հայաստանում զգալի թիվ էին կազմում նաև քուրդ, ռուս, ասորի և հույն երիտասարդները, նրանց շրջանում նույնպես խոշոր աշխատանքներ էին տարվում։

Հայաստանի կոմկուսակցության և կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ 1921 թ. վերջերին լույս տեսավ քրդերեն Այբբենարան («Շամս»), որ պրակտիկ մեծ նշանակություն ունեցավ քուրդ երիտասարդության և ողջ ժողովրդի լուսավորության համար։

1924 թ. մայիսից ՀԿԿ Կենտրոնական կոմիտեում նշանակվեց հատուկ հրահանգիչ՝ քուրդ աշխատավորության շրջանում քաղաքական-կազմակերպչական գործունեություն ծավալելու համար։Դա նպաստեց քուրդ երիտասարդության շրջանում տարվող աշխատանքին, և 1925 թ. մայիսից սկսվեց քրդական կոմերիտական բջիջների կազմակերպումը։ Այդ ժամանակ արդեն կային 4 կոմերիտական բջիջ 62 անդամով և 17 թեկնածուով[2]։ Քրդական երեք գյուղերում գյուղխորհրդի նախագահները և գյուղխորհրդի գործկոմների անդամները կոմերիտականներ էին[3]։ ՀԼԿԵՄ ծավալուն աշխատանք էր տանում նաև մալական երիտասարդության շրջանում։ Այստեղ դժվարություններ էին հարուցում մեծահասակները, կրոնի մեծ ազդեցությունը, հետամնացությունը և այլն։ Բայց, չնայած այս ամենին, հաջողություններն ակնառու էին։ 1921 թ. վերջերին Նոր Բայազեդի գավառում արդեն կային 15 ռուս կոմերիտական[1], իսկ 1923 թ. Հայաստանում գործում էին 4 կոմերիտական բջիջ՝ 45 անդամով, 1925 թ.՝ 18 բջիջ՝ 300 անդամ,թեկնածուով[2]։ Ռուս կոմերիտականները մեծ հեղինակություն էին վայելում արտամիութենական երիտասարդների շրջանում։

Ժողովրդական տնտեսության վերականգնման վերջին տարում Հայաստանի կոմերիտական կազմակերպությունները զգալի աշխատանք տարան արտասահմանյան երիտասարդական կազմակերպությունների հետ կապեր հաստատելու ասպարեզում։

Սովետական իշխանության առաջին տարիներին Հայաստանի կոմերիտկազմակերպությունը մեծապես օգնեց Հայաստանի կոմկուսակցության ղեկավարությունը, որի շնորհիվ գաղափարական-դաստիարակչական լայն աշխատանք ծավալվեց ադրբեջանցի, քուրդ և հանրապետությունում բնակվող մյուս այլազգի երիտասարդների շրջանում, նրանց մասնակից դարձնելով երկրի քաղաքական կյանքին, համախմբելով լենինյան հարազատ կուսակցության շուրջը։

Ինչպես 1924—1925 թթ., այնպես էլ հետագա տարիներին երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությունը պատմական մեծ նշանակություն ունեցավ։ Ներշնչված պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության վեհ գաղափարներով, հանրապետության պատանիներն ու աղջիկները հերոսացան Հայրենական պատերազմում։ Նրանք մեծ Միության բոլոր ժողովուրդների զավակների հետ ուս-ուսի, ֆաշիզմի դեմ մղած օրհասական մարտերում քաջաբար պաշտպանեցին Հոկտեմբերի նվաճումները, սոցիալիստական հայրենիքի պատիվն ու անկախությունը։ Միաժամանակ մեր երիտասարդությունը փայլուն էջեր գրեց հետպատերազմյան հնգամյակների կատարման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պայքարում։

***

Հայաստանի կոմերիտմիության բեղմնավոր գործունեության այդ տարիներից անցել է մի ամբողջ ժամանակաշրջան։ Մեր կոմերիտական կազմակերպությունները իրենց ետևում թողնելով պայքարի ու հաղթանակների պանծալի տասնամյակներ, այժմ հանրապետության ողջ

---

1 ՄԼԻ ՎՖՍ, ֆ. 94, ց. 1, թ. 32։

2 «Երիտ. կոմ.», № 24, 25 նոյեմբերի, 1921 թ.։

1 Տե՛ս «Երիտ. կոմ.», № 25, 30 նոյեմբերի, 1921 թ.։

2 Տես ՄԼԻ ՀՖՍ, ֆ. 48, գ. 2, ց. 1, թ. 49։

3 «Երիտ. կոմ.», № 3, 15 հունվարի, 1922 թ.։

4 Տե՛ս ՄԼԻ ՀՖՍ, ֆ. 48, գ. 111, ց. 1, թ. 2։

1 ՄԼԻ ՀՖՍ, ֆ. 48, գ. 129, ց. 1, թ. 15։

2 Տե՛ս «Ավանգարդ», № 7, 26 հունվարի, 1926 թ.։

3 Տե՛ս նույն տեղը։

1 Տե՛ս «Երիտ. կոմ.», № 3, 15 հունվարի, 1922 թ.։

2 Տե՛ս «Խորհրդային Հայաստան», № 261 (1315), 17 նոյեմբերի, 1925 թ.։

*երիտասարդության ուժերը նպատակամղում են կոմունիստական շինարարության մեծ պլանների կատարմանը։*

*Կոմունիզմի ծավալուն կառուցումն ավելի լայն հնարավորություններ է ընձեռում ազգերի զարգացման, նրանց մերձեցման համար։ Այդ պրոցեսում ազգային հարաբերությունների զարգացման գլխավոր ուղիներից մեկը տնտեսական, քաղաքական ու գաղափարական կյանքի բոլոր ոլորտներում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի հետևողական կենսագործումն է, ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդումը։*

*Հայաստանում բնակվող այլազգի երիտասարդները ինչպես միշտ, հայ երիտասարդների հետ կողք-կողքի ակտիվ մասնակցում են կոմունիստական հասարակարգի կառուցմանը։ Ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության աննախընթաց օրինակ է Արփա-Սևան համաժողովրդական կառույցը։ Հինավուրց Սևանի համար են մարտնչում մեր մեծ Միության շատ ազգությունների ներկայացուցիչներ։*

*Կուսակցության ջերմ հոգատարության շնորհիվ ընդարձակվել ու ամրապնդվել են հայ երիտասարդության եղբայրական կապերը մեր մեծ Միության մյուս ազգությունների երիտասարդների հետ։ Սովետական իշխանության տարիներին ընդարձակվել են նաև Հայաստանի կոմերիտմիության միջազգային կապերը։ Այժմ Սևանում գործում է միջազգային երիտասարդական «Ծիծեռնակ» ճամբարը, ուր ամեն տարի հյուրընկալում են բուլղարացի, գերմանացի, ճապոնացի, չեխ, լեհ, սլովակ, անգլիացի, ֆրանսիացի և այլ ազգերի բազմահազար երիտասարդներ։*

*Կոմերիտմիության կատարած աշխատանքը ըստ արժանվույն է գնահատում կոմունիստական կուսակցությունը։ Ընկեր Բրեժնևը 1967 թ. փետրվարի 1-ին ՀամԼԿԵՄ Կենտկոմի պլենումում ասաց. «Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներին իրենց հավատարմությամբ, իմպերիալիզմի դեմ, ազգային և սոցիալական ազատագրության, խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար աշխարհի դեմոկրատական երիտասարդության պայքարի հետ իրենց համերաշխությամբ, մեր երիտասարդությունը և նրա ավանգարդը՝ լենինյան կոմերիտմիությունը, օգնում են կուսակցությանը է՛լ ավելի բարձրացնելու սովետական պետության միջազգային հեղինակությունը աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց աչքում»*[1]*։*

---

[1] «Ավանգարդ», № 5 (7278), 4 փետրվարի, 1967 թ.:

ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ Ռ. Ռ.

*Եղբայրական*
ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

# ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻ ՀՈՂՈՒՄ

*(Ղազախստանում հայկական գրականության և արվեստի տասնօրյակի առթիվ)*

Ընդարձակ է Ղազախստանն իր տերիտորիայով, հարուստ ընդերքով, գեղեցիկ՝ բազմերանգ դաշտերով, սաղարթախիտ անտառներով, կապուտաչ լճերով, բարձր լեռներով, որոնց գագաթները հավերժորեն ծածկված են ձյունով: Բնությունն առատորեն ամեն ինչ պարգևել է ղազախական հողին — քարածուխ, նավթ, երկաթ, պղինձ, մոլիբդեն, կապար, ցինկ ու հազվագյուտ մետաղներ. հումք՝ արդյունաբերության բոլոր ճյուղերի համար: Լայնարձակ են վարելահողերը, անծայրածիր արոտավայրերը, հորդառատ գետերը: Բայց,— ասում է Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Դ. Կունաևը,— մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը դժվար թե գտնվեր մի երկրամաս, որն ավելի աղքատ լիներ, քան Ղազախստանը:

Սովետական կարգերի հաստատումը, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության իրականացումը տաղանդավոր և աշխատասեր ղազախ ժողովրդին հնարավորություն տվեցին բուռն թափով զարգացնելու երկրի էկոնոմիկան, գիտությունը, կուլտուրան ու արվեստը:

Առաջին և երկրորդ հնգամյակներում հանրապետությունում ստեղծվեցին ինդուստրիայի հզոր օջախներ՝ Կարագանդայում, Բալխաշում, Լենինագորսկում, Չիմքենդում և այլուր: Կառուցվեց Թուրք-Սիբիրյան երկաթուղին (մոտ 2000 կիլոմետր), որը պողպատյա մայրուղիով Ղազախստանը կապեց կենտրոնական շրջանների ու Միջին Ասիայի գլխավոր քաղաքների հետ:

Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին Ղազախական ՍՍՀ-ում արդյունահանվում էին 7 միլիոն տոննա քարածուխ, 700 հազար տոննա նավթ, արտադրվում էր 630 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա (1913 թ. 1,3 միլիոնի դիմաց): Պողպատաձուլական գործարաններում ձուլվում էր հարյուր հազարավոր տոննա սև ու գունավոր մետաղ: Ասում են՝ Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում արձակված յուրաքանչյուր 10 գնդակից 9-ը ձուլված էր Ղազախստանի կապարից:

Նախապատերազմյան տարիների սոցիալ-քաղաքական կարևորագույն նվաճումը ազգային բանվոր դասակարգի ձևավորումն էր, ղազախ ինժեներատեխնիկական ինտելիգենցիայի ստեղծումը: Բանվորների ու ծառայողների թիվը 1940 թվականին հասավ մոտ մեկ միլիոնի (1913 թ. համեմատությամբ 12 անգամ ավելի): Այժմ ամբողջ երկրին հայտնի են սոցիալիստական աշխատանքի հերոս, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ, ածխահատ Ժ. Ռուստեմովի, սոցիալիստական աշխատանքի հերոս, նշանավոր մետաղաձույլ Ա. Կալինի և շատ ուրիշների անունները:

Բուռն ծաղկում ապրեց Ղազախստանը հետպատերազմյան տարիներին: Միայն 1959—1966 թթ. հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել է 14 միլիարդ ռուբլի: Անցյալ տարի արտադրվել է 21 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, արդյունահանվել տասնյակ միլիոն տոննա քարածուխ, միլիոնավոր տոննա նավթ (1970 թ. այն կհասնի մոտ 18 միլիոն տոննայի), ձուլվել է հարյուր հազարավոր տոննա սև ու գունավոր մետաղ, արդյունաբերության համախառն արտադրանքը 101 անգամ գերազանցել է նախահեղափոխական մակարդակը:



*Սոցիալիստական աշխատանքի Հերոս, անվանի ածխահատ Ժ. ՌՈՒՍՏԵՄՈՎ*

Նախահեղափոխական ժամանակաշրջանում քոչվորային կյանք էր վարում ղազախ գյուղացին. նա հիմնականում զբաղվում էր անասնապահությամբ: Լավագույն հողերից 45 միլիոն դեսյատինը զավթել էին ցարական պաշտոնյաները, որոնք դաժանորեն կեղեքում էին աշխատավոր գյուղացուն: Սովետական իշխանությունը ո՛չ միայն ռուս չինովնիկների ու տեղական բեգերի հողերը, անասունները հանձնեց գյուղացիությանը, այլև նրանց համար նստակյաց կյանքի պայմաններ ստեղծեց: Կոլտնտեսային կարգերի հաղթանակի շնորհիվ վերափոխվեց նաև ժողովուրդը, 1936 թվականին նստակյաց դարձան 540 հազար գյուղացիական ընտանիք:

Հուռթի, բերրի են Ղազախստանի դաշտերը: Այնտեղ աճում են ցորեն, բրինձ, բամբակ, ծխախոտ, շաքարի ճակնդեղ, խաղող. համաշխարհային հռչակ է վայելում Ղազախստանի խնձորը: 1966 թվականին Ղազախստանը հայրենիքին տվել է հացահատիկ 25,5 միլիոն, շաքարի ճակնդեղ՝ 2,5 միլիոն, բամբակի հումք՝ 88,2 հազար տոննա: Ալմա-Աթայի մարզի ծխախոտագործական սովխոզը 400 հեկտար պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից հավաքել է միջինը 40 ցենտներ հումք: Հանրապետության սովխոզներն ստացել են 337 միլիոն ռուբլու շահույթ:

Միայն հանրային նախրում հաշվվում է 7,5 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր, իսկ հոտում՝ 33 միլիոն գլուխ մանր եղջերավոր անասուն: Չիմքենդի մարզից «Ժարտի տյուբե» սովխոզի հովիվ, սոցիալիստական աշխատանքի հերոս Կ. Արխաբաևը 1967 թ. յուրաքանչյուր 100 ոչխարից ստացել է 195 գառ: Ջամբուլի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունն ունի 100 հազար գլուխ ոչխար: Այդտեղ միայն ոչխարաբուծությունից տարեկան ստացվում է ավելի քան 3 միլիոն ռուբլու շահույթ, որի շնորհիվ արոտավայրերում անասնապահները սնվում են հանրային ֆոնդի հաշվին:

***

Ղազախ մեծ լուսավորիչ ու պոետ Աբայ Կունանբաևն իր ժամանակին տեսնելով ժողովրդի մռայլ վիճակը, հարցնում է. «Մի՞թե, մենք հավիտյան դատապարտված ենք տառապանքի ու հետամնացության... ղազախ ժողովրդի համար ի վերջո կբացվի՞ գիտությամբ ու կրթությամբ լուսավորված հրաշալի օրը»: Աբայի մահից հետո իրականացավ նրա երազանքը, ճառագեց լուսավոր օրը:

Տնտեսական ու քաղաքական կապանքներից ազատագրված ղազախ ժողովրդի առջև բացվեց լայն ասպարեզ՝ կարգացնելու գիտությունը, գրականությունն ու արվեստը: Անցյալում մատների վրա են հաշվել գրագետներին: Իսկ այսօր երկրում տիրում է համատարած գրագիտություն: Հանրապետությունում գործում է յոթնամյա և միջնակարգ դպրոցների լայն ցանցը—179 միջնակարգ մասնագիտական դպրոց և 41 բարձրագույն ուսումնական հաստատություն: Միայն Ալմա-Աթայի պետական համալսարանում (որը բուհերի առաջնեկն է, հիմնադրվել է 1934 թ.) ուսանում են 37 ազգությունների ներկայացուցիչներ, որոնց թիվը հասնում է մոտ 10 հազարի: Սովետական Ղազախստանի յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնող ուսանողների թիվը երկու անգամ ավելի է, քան Անգլիայում, երեք անգամ՝ քան ԳՖՀ-ում և Իտալիայում, 5—13 անգամ՝ քան Հնդկաստանում, Պակիստանում և Իրանում:

Ղազախական ՍՍՀ ԳԱ ունի ավելի քան 100 ակադեմիկոս և ակադեմիայի թղթակից-անդամ, 105 դոկտոր և գիտության 850 թեկնածու: Հանրապետությունում գործում են 163 գիտահետազոտական ինստիտուտներ, բազմաթիվ փորձնական կետեր, որոնց ճյուղերը տարածված են արդյունաբերական կենտրոններում: Գիտությունների ակադեմիայի գիտահետազոտական ինստիտուտներում և բարձրագույն ուսումնական հաստատություններում աշխատում են ավելի քան 20 հազար գիտնական: Գիտության մեջ մեծ



ավանդ են ներդրել ակադեմիկոսներ՝ Կ. Սաթպաևը, Շ. Եսենովը, Խ. Ժումատովը, Ա. Սիկգանովը և ուրիշներ:

Տարեկան 18 միլիոն տպաքանակով գիրք է լույս տեսնում Ղազախստանում: Դրանք մեծ մասամբ ղազախ վիպասանների ու բանաստեղծների գրվածքներն են: Շատ գրողների ստեղծագործություններ մեծ ժողովրդականություն են վայելում ո՛չ միայն Սովետական Միությունում, այլև մեր հայրենիքի սահմաններից դուրս: Մեծանուն գրող, հասարակական գործիչ Մ. Աուեզովի «Աբայի ուղին» դյուցազներգությունը լույս է տեսել աշխարհի 20 երկրներում: Միայն վերջին երկու տարում ղազախ գրողների երկերը լույս են տեսել արտասահմանյան 30 ժողովուրդների լեզուներով: Անվանի գրողներ Գ. Մուսրեպովը, Ս. Մուքանովը, Ա. Տաժիբաևը և ուրիշներ իրենց ստեղծագործություններում դրվատում են ժողովրդի կյանքն ու պայքարը, աշխատանքային սխրանքները:

Նախահեղափոխական Ղազախստանն ունեցել է ընդամենը 98 հիվանդանոց 1800 մահճակալով: Իսկ այսօ՞ր: Այսօր հանրապետությունում կան 1900 հիվանդանոց, ուր միաժամանակ կարող են բուժվել 125 հազար հիվանդ: Միայն մանկական հիվանդանոցներն ունեն 23 հազար մահճակալ. այդ մասին Ղազախստանի աշխատավորները երազել անգամ չէին կարող անցյալում:

***

Հազար ինն հարյուր քսանհինգ թվականի հունվարի 13-ը նշանակալից տարեթիվ է ղազախ ժողովրդի կուլտուրական կյանքում: Այդ օրը հիմնադրվեց ղազախական առաջին դրամատիկական պրոֆեսիոնալ թատրոնը: Իսկ այժմ այդպիսի 21 թատրոն կա: Ներկայացումները բեմադրվում են ղազախերեն, ռուսերեն, ույգուրերեն և կորեերեն:

Հիանալի ուղի է անցել ղազախական պրոֆեսիոնալ երաժշտությունը՝ ժողովրդական, գուսանական ու մասսայական երգերից մինչև օպերա, բալետ ու սիմֆոնիա... Ալմա-Աթայի պետական ակադեմիական Լենինի շքանշանակիր օպերայի ու բալետի թատրոնի ստեղծագործ կոլեկտիվը կլասիկ օպերաների ու բալետների հետ բեմադրում է ղազախ կոմպոզիտորների ստեղծագործությունները: Շատ դերասաններ ու դերասանուհիներ հանդես են գալիս ո՛չ միայն Սովետական Միության, այլև աշխարհի շատ խոշոր քաղաքներում: ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի Բ. Տելեգենովային իրավամբ անվանում են Ղազախստանի սոխակ:

Իրենց վարպետությամբ հանրապետության արվեստի գանձարանում մեծ ավանդ են ներդրել



*ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի ԲԻԲԻԳՅՈՒԼ ՏԵԼԵԳԵՆՈՎԱ*

ղազախ նկարիչներն ու քանդակագործները: Ալմա-Աթայի և այլ քաղաքների պատկերասրահներն այցելողները հիանում են ժողովրդական նկարիչներ Ա. Կաստեևի, Կ. Տելժանովի և մյուսների վառ կտավներով:

Ղազախստանցիները սիրում են արվեստն ու գրականությունը: Քաղաքներում, աուլներում ու գյուղերում գործում են ավելի քան հինգ հազար ակումբ: Հանրապետությունում կան մի քանի հարյուր շրջանային, քաղաքային, ավանային, արհեստակցական միությունների կուլտուրայի տներ, 924 ավտոակումբ: Վերջիններս հասնում են ամենահեռավոր արոտավայրերն ու սպասարկում անասնապահներին:

Ակումբներին ու կուլտուրայի պալատներին կից գործում են գեղարվեստական ինքնագործունեության հազարավոր խմբակներ: Դրանցում ընդգրկված են կես միլիոն մարդ: Ավելի քան հազար տղաներ ու աղջիկներ են համախմբված Ալմա-Աթայի տնաշինական կոմբինատի կուլտուրայի պալատի գեղարվեստական ինքնագործ խմբակներում: Այստեղ գործում են օպերայի ու բալետի, դրամատիկական թատրոնի ստուդիաներ, էստրադային, սիմֆոնիկ նվագախմբեր և ժողովրդական գործիքների ու երգի-պարի անսամբլներ: Օպերայի և բալետի ստուդիան պատրաստվում է բեմադրելու «Օթելլոն»: Ո՛չ միայն տնաշինական կոմբինատի բանվորներն ու ծառայողները, այլև քաղաքի շատ բնակիչներ իրենց

բովանդակալից և ուրախ հանդիսը անց են կացնում կուլտուրայի այս պալատում:

Ուկուն Աղաչ գյուղի կոլտնտեսության կուլտուրայի տունն իր արտաքին տեսքով, ներքին շքեղ կահավորումով չի տարբերվում մեծ քաղաքների կուլտուրայի օջախներից: Այստեղի գեղարվեստական ինքնագործ խմբակներում ընդգրկված կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները արժանանում են հանդիսատեսների ջերմ ընդունելությանը, նրանց գովասանքին: Խմբի շնորհալի երգիչ Դաբարտայ Սեյֆուլդանը կմրցի պրոֆեսիոնալ շատ երգիչների հետ:

***

Գեղեցիկ է Ղազախական ՍՍՀ-ի մայրաքաղաք Ալմա-Աթան, որն իրավամբ անվանում են քաղաք-այգի:Սառնորակ ու կուլալ է նրա խմելու ջուրը: Ալա-Թաուի լեռների լանջերին ձգված անտառն իջնում, հասնում է քաղաքի հարավային մասը, ձուլվում նրա այգիներին, պուրակներին ու ծառուղիներին: Շուրջն ամենուր բուսականություն է, քաղաքի յուրաքանչյուր բնակչին ընկնում է 80 քմ կանաչ պանգված, որը ռեկորդային է ո՛չ միայն Միության, այլև համաշխարհային մասշտաբով: Ընդամենը հարյուր տարվա պատմություն ունի Ալմա-Աթան: Քաղաքը բուռն թափով սկսել է կարգանալ մեր դարի քսանական թվականների վերջերից, երբ այն դարձավ հանրապետության մայրաքաղաքը. մոտ 700 հազար բնակիչ, 40 գործարան, 20 ֆաբրիկա, 13 կոմբինատ, մի քանի խոշոր տպարան, 12 բարձրագույն դպրոց, օպերայի ու բալետի, դրամատիկական պետական թատրոններ, կուլտուրայի բազմաթիվ պալատներ ունի Ալմա-Աթան:

***

Հեռու է Հայաստանը Ղազախստանից, բարձրաբերձ լեռներ ու անծայրածիր դաշտեր ու տափաստաններ, ծովեր ու լճեր են բաժանում Ալմա-Աթան Երևանից, բայց բարեկամական, անքակտելի են ինչպես Սովետական Միության բոլոր, այնպես էլ հայ և ղազախ ժողովուրդների տնտեսական ու հոգևոր կապերը: Դրա վառ վկայություններից մեկը հայ գրականության ու արվեստի տասնօրյակն էր Ղազախստանում. այն տևեց հունիսի 20—29-ը, որին մասնակցեցին ավելի քան 600 մարդ:

Հայ գրականության ու արվեստի ներկայացուցիչներին ջերմ, հարազատի պես ընդունեցին Ղազախստանի կուսակցության ու կառավարության ղեկավարները, ողջ աշխատավորները: Տոնական տեսք էր ընդունել Ալմա-Աթան, օդանավակայանից ձգվող մայրուղին և քաղաքի գլխավոր փողոցները կարդարված էին Հայկական ՍՍՀ և Ղազախական ՍՍՀ պետական դրոշներով: Կարմիր կտավների վրա ղազախերեն, հայերեն և ռուսերեն գրված էր՝ **Ողջո՜ւյն Ղազախստանում հայ արվեստի և գրականության մասնակիցներին:** Տասն օր Ալմա-Աթայի պետական օպերայի ու բալետի ակադեմիական թատրոնի վրա ծածանվում էին Ղազախական և Հայկական ՍՍՀ-ների դրոշները:

Հանրապետական «Սոցիալիստիկ Կազախստան» և «Казахстанская Правда» թերթերի հունիսի 21-ի համարները (նվիրված տասնօրյակի սկսվելուն) լույս տեսան շքեղ, հարուստ ինֆորմացիաներով և իլյուստրացիաներով, անվանի գիտնականների, գրականության ու արվեստի գործիչների (Մ. Սարյանի, Վ. Համբարձումյանի) սրտաբուխ նամակներով. «Սոցիալիստիկ Կազախստան» թերթն իր առաջնորդողում գրում է. «Այսօր Ղազախստանում սկսվում է հայ գրականության ու արվեստի տասնօրյակը: Ալա-Թաուի նախալեռներում,ջրառատ Իրտիշի ափերին, Մերձիշիմյան խոպանում, Ակտյուբինսկի առուներում ու գյուղերում կհնչեն հայկական մեղեդիները... հնագույն դարերից են սկիզբ առել տաղանդավոր հայ ժողովրդի կուլտուրան ու արվեստը, որ ծաղկել ու բարգավաճել են սովետական կարգերի շնորհիվ... բարո՜վ եք եկել, հայ եղբայրներ, մեր ամենաթանկագին հյուրեր: Տեսեք էկոնոմիկայի ու կուլտուրայի բնագավառում մեր ձեռք բերած նվաճումները, դրանց մեջ կա նաև ձեր աշխատանքը»: Գրող ու հասարակական գործիչ Գ. Մուսրեպովը, հանդես գալով նույն թերթում, գրում է. յուրաքանչյուր ժողովրդի գրականությունը, կուլտուրան ու արվեստն ունեն իրենց հիմքը, գեղեցկությունը, նրբությունը, երանգը, սիրտն ու ոգին: Այդպիսին է հայկականը, որը ճանաչում է գտել ո՛չ միայն Սովետական Միությունում, այլև նրա սահմաններից դուրս, աշխարհի բոլոր ծեգերում:

***

Տասն օր հնչում էին հայկական հոգեկմայլ երգերը՝ Կարագանդայի ածխահատների կուլտուրայի պալատներում, Բալխաշի մետաղաձուլների, Ցելինոգրադի երկրագործների թատրոնների բեմահարթակներում, Տյան-Շանի լեռնագագաթների վրա սահմանապահների ակումբներում և հանրապետության անասնապահների յուրտերում կաքավում ու նազում էին մեր աղջիկները, մոլեգնում էր տղամարդկանց առնական պարը... Ալմա-Աթայի պետական պատկերասրահում ցուցադրվում էին սոցիալիստական աշխատանքի հերոս, ժողովրդական նկարիչ Մ. Սարյանի գունագեղ կտավներն ու կերպարվեստի մյուս անվանի վարպետների գործերը: Ղազախ երաժշտասերներին գերեցին Հ. Չեքիջյանի և Թ. Ալթունյանի երգչախմբերը, որոնք մեծ ներշնչանքով կատարեցին ժողովրդական երգի լավագույն նմուշները:



Ղազախստանի բազմահազար ունկնդիրները խանդաղատանքով ընդունեցին Հայաստանի արտիստների, ասմունքողների, երաժիշտների ելույթները: Մեր կուսակցական, պետական գործիչների, գրողների, ժուռնալիստների հանդիպումները ղազախական հասարակայնության լայն խավերի հետ ավելի ամրապնդեցին ղազախ ու հայ ժողովուրդների բարեկամական կապերը:

Հանրապետական, մարզային, քաղաքային ու շրջանային թերթերն ամեն օր հարուստ ինֆորմացիաներով ու իլյուստրացիաներով լուսաբանում էին տասնօրյակի ընթացքը: «Казахстанская Правда»-ն գրեց. «Որպես սովետական ժողովրդի անխորտակելի ու սրբազան բարեկամության հիմն հնչեցին հայկական մեղեդին, երգն ու արտասանությունը մեր հանրապետության քաղաքներում, բանվորական ավաններում ու աուլներում: Որտեղ էլ ո՛ր լինեին մեր թանկագին հյուրերը, գործարաններում թե կոլտնտեսություններում, թատրոնի թե բաց բեմահարթակում, ամենուր նրանք բերում էին երջանկություն և տոնական տրամադրություն»:

***

Բարեկամության, ինտերնացիոնալիզմի վառ դրսևորումն էր տասնօրյակի եզրափակիչ համերգը: Սրտառուչ է թե՛ հյուրընկալների, թե՛ հյուրերի խոսքն ու երգը: Հանդիսավոր նիստում Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Ս.Իմաշևը նշեց, որ հայկական գրականության ու արվեստի տասնօրյակի բոլոր հանդիպումներում վառ դրսևորվեցին սովետական ժողովուրդների բարեկամությունն ու ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության փայլուն հաղթանակը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Խաչատրյանը պատասխան խոսքում տասնօրյակի մասնակիցների անունից շնորհակալություն հայտնեց Ղազախստանի ԿԿ Կենտկոմին, հանրապետության Գերագույն սովետին ու Մինիստրների սովետին՝ մեծ ուշադրության և ջերմ հոգատարության համար: Նա ասաց. տասնօրյակը հանդիսացավ հայ և ղազախ ժողովուրդների բարեկամության մեծ տոնը, ընդհանուր նպատակի՝ կոմունիզմի կառուցման ձգտող ժողովուրդների եղբայրության ու միասնության փայլուն դրսևորումը: Ղազախ բարեկամները հաճույքով ընդունեցին իրենց արվեստի ու գրականության նվաճումները Հայաստանում ցուցադրելու հրավերը:

Հանդիսականներին մեծ հիացմունք պատճառեց ղազախ և հայ կոմպոզիտորների ստեղծագործությունների կատարումը միացյալ համերգում: Անջնջելի տպավորություն թողեց Ա. Խաչատրյանի Ջութակի կոնցերտի ֆինալը երաժշտական դպրոցի աշակերտուհի Էլվիրա Ֆակիպբեկովայի անկրկնելի կատարմամբ, որին նվագակցեց պետական սիմֆոնիկ նվագախումբը՝ հանրապետության ժողովրդական արտիստ, դիրիժոր Շ. Կաժկալիևի ղեկավարությամբ:

Համերգի ծրագիրն ավարտված էր: Բեմահարթակը լցվեց հայ և ղազախ երգիչ-երգչուհիներով: Կ. Օրբելյանի ղեկավարած պետական էստրադային նվագախումբը հնչեցրեց հանրածանոթ «Լայնարձակ է հայրենի երկիրն իմ» երգը: Դահլիճով մեկ հնչեց ու ծավալվեց իր հայրենիքին սիրահարված, նրա հաջողությունները, նվաճումները դաբբնող հպարտ մարդու երգը. երգում էին բեմից, երգում էր ողջ դահլիճը: Այսպես, անշահախնդիր բարեկամությամբ ու սիրով միաձույլ հայրենիքի գովքն էր այդ, որ տարփողվում էր Ղազախստանում, ղազախ և հայ ժողովրդի սրտաբուխ երգով.

Ես նման մի այլ երկիր տեսած չեմ,
Որտեղ մարդ շնչեր այսպես ազատ:

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
(Մեր հատուկ թղթակից)
Ալմա-Աթա—Երևան

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲԱՐԵԿԱՐԳԵԼ ԳՅՈՒՂԱՄԻՋՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

*Սովետական իշխանության տարիներին Հայաստանում զգալի աշխատանք է կատարվել հաղորդակցության միջոցների, հատկապես ավտոմոբիլային ճանապարհաշինության բնագավառում։ Այսպես, երկաթուղային ճանապարհները 1965 թ., 1913 թ. համեմատությամբ, ավելացել են 52,7 տոկոսով, իսկ ավտոմոբիլայինը՝ 7,6 անգամ։ Ընդ որում, բեռնաշրջանառության մոտ 70 տոկոսը բաժին է ընկնում երկաթուղային, իսկ 30-ը՝ ավտոմոբիլային տրանսպորտին։*

*Ներկայումս հանրապետության քաղաքները, արդյունաբերական ու շրջանային կենտրոնները, կոլտնտեսությունների և սովխոզների զգալի մասը երկաթուղային և ավտոմոբիլային բարեկարգ ճանապարհներով են կապված միմյանց հետ։ Այդ գործում դրական աշխատանք են կատարել Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր խճուղային ճանապարհների գլխավոր վարչությունը, նրա տեղական բաժինները, ինչպես նաև կոլտնտեսություններն ու սովխոզները։*

*Գյուղատնտեսության մեջ տարեցտարի բարձրանում է ավտոտրանսպորտի դերը, ավելանում նրա բեռնատարողությունն ու շրջապտույտը։ Մեր օրերում դժվար է գյուղատնտեսությունը պատկերացնել առանց մեխանիկական տրանսպորտի միջոցների, որոնց անխափան ու արդյունավետ աշխատանքի համար բարեկարգ ճանապարհներ են պահանջվում։*

*Ճանապարհները գերազանցապես կառուցված են հանրապետության տերիտորիայի ավելի ցածրադիր մասերում (ուր գտնվում է խոշոր ու մանր բնակավայրերի, արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկությունների ճնշող մասը), իսկ լեռնային և բարձրլեռնային գոտում (ուր գտնվում են շատ բնակավայրեր, արտադրական ձեռնարկություններ, ընդարձակ հողատարածություններ, բնական խոտհարքներ ու արոտավայրեր) այն իր ներկա վիճակով չի բավարարում եղած պահանջները։*

*Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում բնական խոտհարքներն ու արոտավայրերը, որոնք գերազանցապես գտնվում են բարձրլեռնային զանգվածներում, ապահովում են տարվա ընթացքում սպառվող կերի մոտ 65 տոկոսը։*

*Տնտեսություններում անասունների արոտարածի շրջանում արտադրվում է համախառն կաթի 61—65, մսի՝ 57—72 տոկոսը։ Ամեն տարի գրեթե բոլոր*



*տնտեսությունները երկար ժամանակով բարձրլեռնային ամառային արոտա-*
*վայրերն են փոխադրում խոշոր և մանր եղջերավոր անասունները (մոտ 2,9*
*միլիոն գլուխ)։*

*Սակայն հանրապետության արոտամարգագետնային տնտեսությունում*
*կան լուրջ թերություններ, որոնք արգելակում են արոտավայրերի և խոտհարք-*
*ների ռացիոնալ օգտագործմանը, անասնաբուծական մթերքների արտադրու-*
*թյան ավելացմանը։ Առանձնապես վատ է Արագածի, Փամբակի, Գեղամա,*
*Բազումի, Վարդենիսի, Սևանի, Արեգունիի, Մուրղուզի, Զանգեզուրի, Բարգու-*
*շատի, Մեղրիի և մյուս բարձրլեռնային արոտամարգագետնային մասսիվները*
*սպասարկող ճանապարհային ցանցի վիճակը, որը վերակառուցման և բարե-*
*կարգման խիստ կարիք ունի։ Բարձրլեռնային գոտում ճանապարհների բա-*
*ցակայությունն ու անբարեկարգ լինելը խիստ դժվարացնում է անասնաբուծա-*
*կան ֆերմաների սպասարկումն արոտավայրերում, մթերքների, մարդկանց և*
*այլ բեռների ժամանակին փոխադրումները։ Այստեղ են գտնվում բնական*
*շատ հարստություններ, որոնց իրացման, ինչպես և տնտեսությունների նոր-*
*մալ գործունեության համար հույժ կարևոր են ավտոմոբիլային բարեկարգ*
*ճանապարհները։*

*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տեղական օգտագործման*
*ճանապարհների զգալի մասը, իր ներկա տեխնիկական վիճակով, չի բավա-*
*րարում տարեցտարի աճող ավտոտրանսպորտի պահանջները. շատ տեղերում*
*արոտային մասսիվներն ու խոտհարքները զուրկ են ճանապարհներից։ Ճանա-*
*պարհների բացակայությունը և անբարեկարգ լինելը մեծ վնաս է հասցնում*
*տնտեսություններին, խանգարվում է տրանսպորտի աշխատանքը, մեքենաները*
*ժամանակից շուտ փչանում են, մեծանում են բեռների փոխադրման ծախսերը,*
*խիստ դժվարանում է արոտավայրերում անասնաբուծական ֆերմաների սպա-*
*սարկումը։ Մինչդեռ անընդհատ ավելանում է գործադրվող տեխնիկան։ Այս-*
*պես, գյուղատնտեսության մեջ վերջին ութ տարում տրակտորային պարկը*
*մեծացել է մոտ 2,6, հացահատիկային կոմբայններինը՝ 1,5, բեռնատար ավ-*
*տոմեքենաներինը՝ 26 անգամ։ Սակայն կոլտնտեսություններում վերջին չորս*
*տարում (մեկ տոննա) կմ փոխադրման արժեքը բարձրացել է 48 տոկոսով և*
*և 1966 թ. կազմել է 7,7 կոպեկ։*

*Առաջիկա տարիներին լեռնային շրջաններում նախատեսված է մեծ աշ-*
*խատանք կատարել հողերի օգտագործման արդյունավետությունը բարձրաց-*
*նելու համար։ Օրինակ, ընթացիկ հնգամյակում՝ մինչև 1970 թ., հանրապե-*
*տությունում ոռոգելի կդառնան 65 հազար հեկտար նոր հողեր, մեքենայացված*
*ջոկատներով (հիմնականում նոր կազմակերպվող) կիրացվեն և կբարելավվեն*
*ավելի քան 17 հազար հեկտար գյուղատնտեսական ցածրորակ հողեր. բարձր*
*բերքատու արոտավայրերից խոտհարքների կվերածվեն 47 հազար հեկտար,*
*կջրարբիացվեն և կիրացվեն 130 հազար հեկտար արոտավայր, արմատապես*
*կբարելավվի 40 հազար հեկտար բարձր բերքատու բնական խոտհարք։ Խոտ-*
*հարքներում և արոտավայրերում ավելի շատ պարարտանյութ կօգտագործվի։*
*Արարատյան դաշտի աղակալած հողերից կիրացվեն և տնտեսություններին*
*կհանձնվեն 6, 4 հազար հեկտար։*

*Այս և մյուս կարևորագույն աշխատանքների հաջող կատարման երաշխիք-*
*ներից մեկը ճանապարհաշինությունն է, եղածների վերակառուցումն ու բարե-*
*կարգումը։*

Կատարած ուսումնասիրությունների համաձայն, միայն Ամասիայի, Ազիզ-
բեկովի, Ախուրյանի, Իջևանի, Կամոյի, Մարտունու, Մեղրիի, Հրազդանի, Սևա-
նի, Սիսիանի և Շամշադինի շրջանների 233 կոլտնտեսություններում ու սով-
խոզներում անհրաժեշտ է առաջին հերթին կառուցել և բարեկարգել մոտ 1550
կմ ճանապարհ։

Նույնն է պատկերը մյուս շրջաններում։ Մինչդեռ հանրապետությունում
1966 թ. պլանով նախատեսված էր կառուցել և հիմնական վերանորոգման են-
թարկել միայն 174 կմ տեղական ճանապարհ՝ 3,5 միլիոն ռ. նախագծային ար-
ժեքով, իսկ 1970 թ.՝ 320 կմ, որը, սակայն, պահանջից դեռ բավական պա-
կաս է։

Տեղական օգտագործման ճանապարհաշինության ետ մնալն ունի իր
պատճառները։ Այդ նպատակի համար դեռևս պատշաճ միջոցներ չեն հատկաց-
վում, պակասում են անհրաժեշտ մեքենաներ, գործիքներ, թույլ է կոլտնտե-
սությունների, սովխոզների, ինչպես և արդյունաբերական, շինարարական,
տրանսպորտի և մյուս կազմակերպությունների անմիջական մասնակցությունն
այդ գործին, անբավարար են օգտագործվում տեղական ռեսուրսները՝ տեխ-
նիկան, շինանյութերը, բանվորական ուժը։

1967 թվականին Ղափանի շրջանում տեղական ճանապարհների կառուց-
ման համար նախատեսված էր 229 հազար ռուբլի, կամ կառուցել 3—4 կմ
ճանապարհ։ Մինչդեռ այստեղ եղած 250 կմ ճանապարհից ավտոտրանսպորտի
անխափան աշխատանքի համար պիտանի է միայն 20-ը։ Ուստի, մոտակա
տարիներին պահանջվում է կառուցել և հիմնական վերանորոգման ենթար-
կել մոտ 230 կմ ճանապարհ։ Նույնն է վիճակը նաև մյուս շրջաններում։ Օրի-
նակ, Ալավերդու շրջանում վերակառուցման և հիմնական նորոգումների են-
թակա մոտ 188 կմ ճանապարհներից 1967 թ. պլանով նախատեսված 14,2 կմ-ի
փոխարեն փաստորեն նորոգվել ու վերակառուցվել է 9,2 կմ։

Եթե ճանապարհների սահմանափակ կառուցմանն ավելացնենք առանձին
կոլտնտեսությունների, սովխոզների ու մյուս կազմակերպությունների կողմից
օրենքով ճանապարհաշինության նպատակով ամենամյա, պարտադիր և ան-
հատույց դրամական միջոցների թերմուծումները, ապա ակնհայտ կդառնան
այդ աշխատանքների միանգամայն ցածր տեմպերը, որի հետ դժվար է համա-
ձայնել։ Օրինակ, 1967 թ. հանրապետությունում տեղական ճանապարհների
կառուցման գործում կոլտնտեսությունների ընդհանուր պարտքերը հասան
1683,3 հազար ռուբլու, իսկ այդ տարվա մուծումների պլանը կատարվեց
94 տոկոսով, այդ թվում՝ Կրասնոսելսկու, Սևանի, Ապարանի, Ամասիայի, Ար-
թիկի և Բասարգեչարի շրջաններում՝ 57,3—84,4 տոկոսով։

Այժմ հանրապետության ընդհանուր օգտագործման տեղական ճանապարհ-
ներն ավելի քան 4000 կմ են, որոնց պահպանման գործը դրված է շրջանային
ճանապարհաշինական գրասենյակների վրա։ Սակայն դրանց նյութա-տեխնի-
կական ապահովման հարցը դեռևս լուծված չէ։ Գրասենյակները խիստ կարիք
ունեն ճանապարհաշինական մեքենաների, գործիքների ու տրանսպորտային
միջոցների։

Ճանապարհների գլխավոր վարչության տվյալներով, 1967 թ. հանրապե-
տությունում տեղական ճանապարհների կառուցման ու բարեկարգման աշ-
խատանքների համար նախատեսված էր 5745,5 հազար ռուբլի. մինչդեռ պլա-
նը կատարվել է 103 տոկոսով և ծախսվել 5916,2 հազար ռուբլի։ Ընդ որում



կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս կազմակերպությունների հատ-
կացումները կազմել են՝ 4025,5, իսկ ծախսերը՝ 3923,3 հազ. ռուբլի կամ
պլանը կատարվել է միայն 97,4 տոկոսով։ Ինչ վերաբերում է ճանապարհ-
ների վերակառուցմանը և հիմնական ու միջին նորոգումներին, ապա այն
հանրապետությունում կատարվել է 530 կմ-ի վրա, պլանով նախատեսված
492 կմ-ի դիմաց։ Մեկ կմ-ի կառուցման ծախսերը կազմել են, միջին հաշ-
վով, 11,2 հազար ռուբլի։

Բարձրլեռնային արոտամարգագետնային մասսիվները տանող ճանա-
պարհների կառուցումն օրգանապես կապված է հանրապետության ընդհանուր
հաղորդակցության միջոցների, ինչպես երկաթուղային, այնպես էլ ընդհանուր
օգտագործման ավտոմոբիլային ճանապարհային ցանցի հետ և դրա բաղկա-
ցուցիչ մասն է։ Ճանապարհային ցանցի՝ ցածրադիր տերիտորիայում տեղա-
դրված լինելը, տնտեսապես հիմնավորված է ու օրինաչափ։ Պարզ է, որ,
առաջին հերթին, հարկավոր էր ճանապարհներ կառուցել ցածրադիր գոտում
կամ կատարել զուգահեռ։ Այժմ ավելի շատ ուշադրություն պետք է նվիրել
բարձրլեռնային արոտամարգագետնային խոշոր մասսիվները տանող և ներ-
կայումս շատ տեղերում կառուցվող ընդհանուր օգտագործման տեղական ճա-
նապարհները։ Անհրաժեշտ է բարեկարգել հանրապետության շրջանների գյու-
ղամիջյան ճանապարհները և դրանք կապել գլխավոր մայրուղիների հետ։

Բարձրլեռնային մասսիվները տանող ճանապարհները խիստ կարևոր են
նաև բնական հարստությունները ռացիոնալ օգտագործելու, արտադրական
նոր կարողություններ հիմնադրելու և եղածները բարելավելու համար։ Այս-
պես, հյուսիս-արևելյան անտառային շրջաններում նախալեռնային գոտուց
բարձրլեռնային ամառային արոտավայրերը տանող ճանապարհները սովորա-
բար անցնում են անտառային մասսիվներով ու բազմաթիվ բացատներով, որը
միաժամանակ հնարավորություն կընձեռի արդյունավետ օգտագործելու անտա-
ռային հարստությունները (անտառանյութ, կաղին, հաճար, պտուղներ, հա-
տապտուղներ, խոտհարքներ, արոտ, կարտոֆիլացանություն)։ Մի շարք
տնտեսություններ հետանտառային գոտում և ենթալպյան գոտու ցածրադիր
մասերում, ուր կան ընդարձակ խոտհարքներ, կազմակերպում են անասունների
ձմեռային պահում, որը դրական արդյունք է տալիս։

Այս հանգամանքն ավելի է բարձրացնում բարեկարգ ճանապարհների կա-
ռուցման անհրաժեշտությունն անտառային շրջաններում։ Բայց հանրապետու-
թյունում դեռ շատ կան պլանով չնախատեսված, սակայն վերակառուցման ու
բարեկարգման խիստ կարիք ունեցող ճանապարհներ։ Դրանք են, օրինակ,
Իջևանի շրջանում Թալա-Ենոքավանից Բազումի լեռնաշղթայի արևելյան հատ-
վածը տանող ճանապարհը, որի սպասարկման գոտու 7 տնտեսություն օգտա-
գործում են մոտ 3400 հեկտար արոտավայր, 840 հեկտար խոտհարք և մեծ
թվով անտառային բացատներ։ Շամշադինի շրջանում անհրաժեշտ է բարեկար-
գել Մուրղուզի մասսիվի արոտավայրերն ու խոտհարքները տարբեր ուղղու-
թյուններով տանող մոտ 148 կմ ճանապարհները։ Նման կարևորություն է
ներկայացնում Ջավախքի լեռնաշղթայով անցնող Կալինինո—Ղուկասյան
ճանապարհը՝ տվյալ շրջանների տնտեսությունների համար։

Ընդհանուր օգտագործման ճանապարհներից բացի, կառուցման և բարե-
կարգման կարիք ունի ներտնտեսային ճանապարհների ցանցը, որը սպասար-
կում է արտադրական տեղամասերը, անասնաբուժական ֆերմաները և կապի

միջոց հանդիսանում խոտհարքների ու արոտավայրերի հետ։ Բարեկարգման խիստ կարիք ունեն նաև անասունների անցելատեղերը, որոնք հաճախ շատ նեղ են, քարքարոտ և զառիթափ։

Երկրի առաջավոր մարզեր, շրջաններ ու շատ տնտեսություններ ճանապարհաշինության գործում լուրջ հաջողությունների են հասել։ Առաջավորները քիչ չեն նաև մեր հանրապետությունում։ Օրինակ, Մեղրու շրջանի Մարալզան, Վահրավար և Մեղրի գյուղերի կոլտնտեսությունները կառուցում են ամառային արոտավայրերը տանող 50 կմ ճանապարհ։ Նոյեմբերյանի շրջանում հիմնականում վերակառուցված է մինչև այդ ավտոմեքենայի համար անանցանելի Կարմիր գյուղի մասիվը տանող ճանապարհը (մոտ 30 կմ երկարությամբ)։ Դրական աշխատանք են կատարում նաև Մարտունու շրջանի ճանապարհաշինարարները, որոնք վերջին տարիներին ընդարձակել, բարեկարգել են գյուղամիջյան ավտոճանապարհները։ Շրջանի ճանապարհների վերանորոգման գրասենյակն ունի 13 բեռնատար ավտոմեքենա, ինչպես նաև կարևոր այլ մեքենաներ։ Գրասենյակի կոլեկտիվն առաջադրանքները հաջող կատարելու համար 1967 թվականին սոցիալիստական մրցության մեջ դուրս եկավ հաղթող և արժանացավ կառավարության մրցանակի։

Ճանապարհաշինության գործը բարելավելու համար անհրաժեշտ է կիրառել մի շարք կոնկրետ միջոցներ։ Նախ, ինչպես նշված է Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1959 թ. հոկտեմբերի 31-ի որոշման մեջ, ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային ճանապարհների շինարարությունը կատարվում է պետության, իսկ տեղականը՝ կոլտնտեսությունների, սովխոզների, արդյունաբերական, տրանսպորտի, շինարարական և մյուս կազմակերպությունների կողմից, իրենց սեփական միջոցներով։ Դա ճիշտ է, քանի որ ներկայումս պետությունը չի կարող լրիվ իր վրա վերցնել ճանապարհաշինության բոլոր ծախսերը։

Սակայն տնտեսություններն ու մյուս կազմակերպություններն անբավարար են զբաղվում ճանապարհաշինությամբ և հաճախ սահմանափակվում են միայն շրջանային ճանբաժնին նախատեսված գումարները փոխանցելով։ Ամեն տարի յուրաքանչյուր կոլտնտեսություն, սովխոզ և արտադրական ձեռնարկություն պետք է իր արտադրա-ֆինանսական պլաններում կոնկրետ միջոցներ նախատեսի ճանապարհաշինության համար։

Ճանապարհաշինարարության աշխատանքը պետք է կազմակերպել այնպես, որ այն նպաստի արտադրական պրոցեսների բարելավմանը, իսկ դա պահանջում է հաշվարկել ճանապարհաշինության տնտեսական արդյունավետությունը, այսինքն՝ հայտաբերել ճանապարհների բացակայության պատճառով կրած վնասները և լավ ճանապարհների տված օգուտները։ Ընդ որում, տնտեսական առումով, հարցի լուծման ամենաձեռնտու ձևն այն է, երբ համեմատական կարգով տվյալ ճանապարհների ամենամյա վերանորոգման ու պահպանման և դրա շահագործման ծախսերը լինում են նվազագույն։ Իսկ դա ապահովվում է այն ժամանակ, երբ տնտեսությունն ամենակարճ ճանապարհով է կապվում իր արտադրական տեղամասերի, ֆերմաների, բնակավայրերի, դաշտերի ,այգիների, արոտավայրերի ու խոտհարքների հետ։

Ռացիոնալ ճանապարհաշինության հիմնական պայմաններից է դրա հնարավոր կոոպերացումը տվյալ ճանապարհը համատեղ օգտագործող հարևան տնտեսությունների և կազմակերպությունների միջև։ Օրինակ, ինչո՞ւ չկոոպե-



րացնել Թումանյան կայարան—Թումանյան գյուղ—Լորուտ-Աթան ճանապարհի կառուցումը՝ այն մշտական օգտագործող Թումանյանի, Լորուտի, Աթանի, Մարցի սովխոզների, Ալավերդու անտառտնտեսության, Թումանյանի փայտամշակման կոմբինատի և գյուղկոոպի, ինչպես և Նոյեմբերյանի շրջանի որոշ տնտեսությունների (որոնք Բազումի մասիվում ունեն արոտավայր և խոտհարք), Ալավերդու, Կիրովականի և Ախթալայի շինկազմակերպությունների միջև։ Դեռ ավելին, այդ ճանապարհով անտառանյութ են փոխադրում նաև Ստեփանավանի և Կալինինոյի շրջանները։ Այստեղ օրական անցնում են հարյուրավոր ավտոմեքենաներ։ Բայց ճանապարհը շատ տեղերում խիստ անբարեկարգ է։ Պետք է խուսափել բարձրորակ գյուղատնտեսական հողերը ճանապարհաշինության նպատակներով օգտագործելուց, վերացնել ավելորդ ու կրկնվող ճանապարհները և անցուղիները։ Ճանապարհների կառուցման ու վերանորոգման հաջորդականությունը սահմանվում է տվյալ ուղղությամբ փոխադրվող բեռների քանակից, դրանց կարևորությունից, ճանապարհի օգտագործման ինտենսիվությունից։ Ճանապարհների վերակառուցմանը զուգընթաց անհրաժեշտ է միաժամանակ բարեկարգել դժվար անցանելի, նեղ, քարքարոտ, ցեխ ու ջուր հավաքող ցածրացած տեղերը։

Տեղական ճանապարհներից բացի վերակառուցման և բարեկարգման խիստ կարիք ունեն հանրապետության մայրուղիների առանձին հատվածները։

Մի շարք շրջաններում միմյանցից անջատ գործում են ճանապարհների վերանորոգման և օգտագործման ձեռնարկություններ։ Բասարգեչարի շրջանը, օրինակ, ունի չորս ճանապարհաշինական հիմնարկություն, բայց ճանապարհների վիճակը բավարար չէ։ Ուստի, գործի ընդհանուր շահերը պահանջում են միավորել այդ հիմնարկությունները։ Դա հնարավորություն կընձեռի կենտրոնացնելու մեքենաները, գործիքներն ու միջոցները, ապահովելու՝ դրանց արդյունավետ օգտագործումը, կրճատելու անարտադրածախսերը։ Այսպիսով, վերանորոգման տեղամասերը միաժամանակ կարող են զբաղվել տեղական ճանապարհաշինությամբ ու բարեկարգմամբ։ Անհրաժեշտ է կոորդինացնել ճանապարհաշինական կազմակերպությունների և շրջանային գյուղտեխնիկայի բաժանմունքներին կից գործող ճանապարհների կառուցմամբ զբաղվող մասնագիտացված մեքենայացված ջոկատների գործունեությունը։

Շրջգործկոմները, շրջանային գյուղատնտեսական արտադրական վարչությունները, կոլտնտեսությունները, սովխոզները, շինարարական, ինչպես և արդյունաբերական ու տրանսպորտի ձեռնարկությունները լուրջ ուշադրություն պետք է նվիրեն ճանապարհների կառուցման աշխատանքներին, հատկապես դրանց որակի բարելավմանը, մեծաթիվ տեխնիկայի, բանվորական ուժի, ինչպես նաև շինանյութերի (քար, խիճ, ավազ, անտառանյութ) լրիվին և արդյունավետ օգտագործմանը։ Անհրաժեշտ է վերանայել և միատարր դարձնել ճանապարհաշինության նպատակով կատարվող կոլտնտեսությունների, սովխոզների, ինչպես և մյուս ձեռնարկությունների նախատեսվող հատկացումները, ճշտել ընդհանուր և տեղական ճանապարհների անվանացանկը։

Լեռնային շրջաններում կարևոր ճանապարհների կառուցման ծավալը մեծացնելու և տեմպերն արագացնելու նպատակով անհրաժեշտ է վերանայել միջոցների բաշխման կարգը։ Խնդրի կարևորությունը պահանջում է, որ պետպլանը վերանայի ֆոնդերն ու ամեն տարի ընդհանուր և տեղական օգտագործման ճանապարհների կառուցման համար առանձնացնի անհրաժեշտ տեխնի-

կա, շինանյութ և այլ միջոցներ: Ընդհանրապես գյուղական ճանապարհաշինության հարցերում պետք է ակտիվ մասնակցի «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը՝ իր շրջանային բաժանմունքներով:

Մինչև օրս չեն ուսումնասիրված ու հիմնավորված Գեղամա, Արագածի, Բազումի, Փամբակի, Վարդենիսի և մյուս խոշոր բարձրլեռնային արոտամարգագետնային մասսիվները տանող ավտոմոբիլային ճանապարհների կառուցման ու բարեկարգման կարևոր հարցերը՝ կապված հանրապետության և նրա առանձին շրջանների ու ձեռնարկությունների էկոնոմիկայի հետագա զարգացման հետ: Շինարարական կազմակերպությունները ու տնտեսությունները այդ ճանապարհների կառուցման համար առաջադրանք չունեն: Այդ աշխատանքների ծավալման համար մեծ նշանակություն ունեն գյուղատնտեսության մինիստրության միութենական ճանապարհների նախագծային ինստիտուտի Երևանի բաժանմունքի և խճուղային ճանապարհների գլխավոր վարչության համատեղ հետազոտությունները, որոնք դեռևս սկսված չեն:

Բարելավման խիստ կարիք ունի ճանապարհաշինական բարձրորակ կադրերի պատրաստումը և ճիշտ տեղաբաշխումը, ինչպես և ճանապարհաշինության աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը: Առանձնահատուկ նշանակություն ունի ճանապարհաշինության առաջավորների փորձի և գիտության նվաճումների լայն պրոպագանդումն ու արմատավորումը, որը հանրապետությունում թերի է կատարվում:

Բարձրլեռնային մասսիվները տանող ճանապարհային ցանցի կարգավորումը նոր խթան կհանդիսանա հանրապետության էկոնոմիկայի զարգացման գործում, կնպաստի արոտամարգագետնային տնտեսության արդյունավետության բարձրացմանը, անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը:

ԴՈՒՇՑՅԱՆ Հ. Ս.
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԿԵՆՍԱՄԻՋԱՎԱՅՐԸ

Ճարտարապետությունը և մարդու կենսամիջավայրը հարցին էր նվիրված ճարտարապետների համաշխարհային IX կոնգրեսը, որ կայացավ 1967 թ. Պրագայում: Այսօր այդ հարցը լրջորեն մտահոգում է մարդկությանը: Մարդու կենսամիջավայրը շատ բարդ ու բազմակողմանի կոմպլեքս է, որն ընդգրկում է բնական (արև, օդ, ջուր, հող, բուսականություն, կենդանական աշխարհ) և մարդու ստեղծած (արհեստական քաղաքներ, գյուղեր, բնակարան, հասարակական շենքեր, երթևեկության միջոցներ և այլն) միջավայրը: Ճարտարապետության շնորհիվ է ստեղծվում արհեստական միջավայրը, որի այս կամ այն օբյեկտը նախագծելիս ճարտարապետներն աշխատում են սինթեզել բնական և արհեստական միջավայրները:

Մարդն իր գոյությունը պահպանելու համար օգտվում է բնության բարիքներից (մշակում հողը, օգտագործում երկրի ընդերքը, անտառները, գետերը), բարեփոխում բնությունը (չորացնում ճահիճները, կառուցում ջրանցքներ, տնկում անտառներ ու այգիներ, զարգացնում զանազան բույսեր ու կենդանիներ), միաժամանակ նույն գործունեությամբ մարդը մեծ վնասներ է հասցնում բնությանը, վտանգելով նրա բիոլոգիական հավասարակշռությունը, թուլացնելով մարդու և, առհասարակ, կենդանի օրգանիզմների ու բնական միջավայրի էկոլոգիական հարմոնիկ միասնությունը՝ թունավոր գազերով, քիմիական և ռադիոակտիվ նյութերով ապականելով օդը, ջուրը, հողը, ոչնչացնելով բուսականությունն ու կենդանի օրգանիզմները:

Մինչ XX դարը մարդու կենսամիջավայրի աղարտումը, ապականումը տեղական բնույթ ունեին և չէին վտանգում մարդկության գոյությունը: Սակայն մեր դարի սկզբից, մանավանդ, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, քիմիայի աննախընթաց զարգացման ու ատոմային էներգիայի հայտնագործման հետևանքով, այդ վտանգը դուրս է եկել առանձին երկրների և նույնիսկ մայրցամաքների սահմաններից:

Կենսամիջավայրի փոփոխման վրա մեծ չափով ներգործում է նաև այն, որ ամեն տարի հսկայական տարածություններ տրամադրվում են նոր ստեղծվող բնակավայրերի զանազան կառուցվածքներին, ճանապարհներին և այլն: Այսպես, Հյուսիսային Ամերիկայում նոր բնակավայրեր կառուցելու համար տարեկան կես միլիոն հեկտար օգտահող է տրամադրվում: Նույնը կատարվում է ողջ աշխարհում. այդ մասշտաբները մեծանալու են ավելի արագ տեմպերով:

Ո՞րն է ելքը, ինչպե՞ս անել, որ ավելի նպատակահարմար ու լավ կառուցվեն նոր բնակավայրերը, ընդարձակվեն հները, անխնա չշռայլվեն երկրագնդի բնական հարստությունները:

Կենսամիջավայրը հատկապես վատ է աշխարհի խոշոր (միլիոնից ավելի բնակիչ ունեցող) քաղաքներում, որոնց թիվը հասնում է 130-ի: Տարերային զարգացման հետևանքով (մեծ թվով մարդկանց կուտակում, ապականված օդ, երթևեկության դժվարություններ, աղմուկ) այդ բնակավայրերում ստեղծվել են ապրելու անառողջ պայմաններ և հսկայական միջոցներ են պահանջվում դրանց վերակառուցման համար:

Խոշոր քաղաքների բնակչության գերաճը կասեցնելու համար բոլոր երկրներում այժմ զանազան միջոցներ են ձեռնարկվում: Ֆրանսիայում ծրագրված է դանդաղեցնել Փարիզի բնակչության աճը (մեխանիկական), զարկ տալով մյուս մեծ քաղաքների շրջակայքում գտնվող միջին քաղաքների զարգացմանը: Լոնդոնի շրջակայքում կառուցված փոքր (80—100 հազարանոց) քաղաք-արբանյակները ցանկալի արդյունք չտվին: Այդ «քաղաք-ննջարանները» չեն թեթևացնում Լոնդոնի վիճակը: Այժմ ծրագրված է Անգլիայի տարբեր մասերում կառուցել նոր, ավելի մեծ (250—300 հազար և ավելի բնակչով) քաղաքներ: Իտալիայում ընդհանուր քաղաքաշինական ծրագրով նախատեսվում է քաղաքներ կառուցել հաջորդական, միմյանց կապելով շղթայաձև: Հյուսիսային Ամերիկայում, ելնելով ավտոմոբիլային տրանսպորտի զարգացման հնարավորությունից, չեն խուսափում խոշոր քաղաքների ու դրանց խմբավորումների զարգացումից: Ճապոնիայում նույնպես շարունակելով խոշոր կենտրոնացումները, դրանց կից ստեղծում են «քաղաք-ննջարան» արբանյակներ, զարկ տալով հասարակական տրանսպորտի միջոցներին:

Քաղաքների հետագա զարգացման ուղիների, դրանց օպտիմալ չափերի, քաղաքաշինական կառուցվածքի և կենսամիջավայրի բարելավման մասին կոնգրեսի որոշումները ցույց են տալիս, որ կարևորը ո՛չ թե այս կամ այն սխ-

տեմի կառուցվածքն է կամ բնակավայրի որևէ օպտիմալ չափը, այլ կենսամիջավայրի օպտիմալ պայմանների ապահովումը՝ բոլոր դեպքերում, ապահովելով բնակավայրերի պլանավորված (և ոչ թե տարերայնորեն) առաջացումն ու զարգացումը: Ո՛չ թե պետք է վերացնել մեծ քաղաքները (դա ոչ հնարավոր է, ոչ էլ ցանկալի), որոնք իրենց բոլոր թերություններով հանդերձ քաղաքակրթության, արտադրության, գիտության, տեխնիկայի ու արվեստի զարգացման կենտրոններ են, այլ անհրաժեշտ է նրանցում ստեղծել փոքր բնակավայրերի առավելությունները, իսկ փոքրերում՝ մեծերի հնարավորությունները: Դրանով իսկ, մի կողմից՝ կբարելավվի մեծ քաղաքների կենսամիջավայրը, մյուս կողմից՝ կկասեցվի բնակչության հոսքը փոքր բնակավայրերից կենտրոնները:

Գիտական հետազոտությունները ցույց են տալիս, որ ո՛չ միայն աշխատանքի պրոֆեսիոնալ և հիգիենիկ պայմանները, այլև աշխատատեղի ճարտարապետությունը—տարածության կազմակերպումը, շենքի դիրքը, ինտերիերի գունավորումը, բնական ու արհեստական լուսավորությունն անմիջականորեն ազդում են աշխատանքի արտադրողականության, աշխատողի ինքնազգացության վրա:

Այսպիսով, աշխատամիջավայրի բարելավման խնդիրը (առաջին հերթին տնտեսական նկատառումով) կենսական անհրաժեշտություն է: Այդ լավ են հասկանում կապիտալիստները. աշխատամիջավայրի բարեկարգման միջոցառումները բնավ նրանց մարդասիրական զգացմունքների արգասիք չեն:

Կոնգրեսում առավել ուշադրության արժանացան բնակելի միջավայրի, հատկապես, բնակարանի տիպերի պրոբլեմը, որի շուրջ ծավալվեց բուռն վիճաբանություն: Տարբեր երկրների պատվիրակությունները դրական կարծիք էին հայտնում գոյություն ունեցող բնակարանների բոլոր տիպերի, հատկապես մենատների (դրանք համարելով լավագույնը), ինչպես և բազմաբնակարանային բազմահարկ, հյուրանոցատիպ և ընդհանուր սպասարկման հարմարություն ունեցող շենքերի մասին: Հետաքրքրական է, որ այն երկրների ներկայացուցիչները, ուր բնակարանի ավանդական ձևը մենատունն է (Անգլիա և Ճապոնիա), այժմ խոսում են բազմահարկ շենքերի անհրաժեշտության մասին և հակառակը, որտեղ շատ են կառուցվել բազմահարկ սեկցիոն շենքեր, կողմնակից են մենատներին (Չեխոսլովակիա): Սակայն իշխող կարծիքը բնակարանային բոլոր տիպերի համատեղ օգտագործումն էր՝ կառուցվորումն ավելի հետաքրքրական դարձնելու և բնակչի համար ըստ իր պահանջարկի ընտրության բազմապիսի հնարավորություն ընձեռելու նպատակով:

Քննարկվող կարևոր պրոբլեմներից էր նաև բնակարանների որակի և քանակի հարցը. նշվեց, որ ամենուրեք ձգտում են ապահովել անհրաժեշտ քանակը, սակայն որակն անտեսվում է: Կոնգրեսի մասնակիցները գտան, որ կուլտուր-կենցաղային սպասարկման բոլոր հիմնարկները պետք է հնարավորին չափ մոտեցնել բնակչին. այդ նկատառումով իսկ առավել ընդունելի է բնակելի տան այն նոր տիպը, ուր սպասարկման առաջին աստիճանի տարրերը բնակարանի հետ մի կոմպլեքս են կազմում:

Անընդհատ ավելանում է մարդու ազատ հասարակական գործունեությանը, հանգստին, սպորտին ու տուրիզմին հատկացվող ժամանակը: Այս առումով էլ կարևոր նշանակություն է ստանում հանգստի և սպորտի կազմակերպումը: Դրա համար, ամենից առաջ, բնակելի Թաղամասին կից անհրաժեշտ է ստեղծել առաջին աստիճանի սպասարկման հարմարությունները: Երկրորդ



կարգի հարմարությունները (մաքուր ջրային մակերեսներ, կանաչ տարածություններ) պետք է լինեն քաղաքում, տրանսպորտին մատչելի վայրերում: Դրա հետ մեկտեղ մեծ նշանակություն է ստանում քաղաքից դուրս գտնվող հանգստավայրերի, տուրիստական հարմարությունների ստեղծումը:

Կոնգրեսի հիմնական օրակարգերից մեկն էր պատմական միջավայրի պահպանման խնդիրը: Պատմական, ճարտարապետական հուշարձանները, ազգային պարծանք լինելուց բացի, առանձնահատուկ հմայք են տալիս քաղաքներին, ստեղծելով անկրկնելի, ճարտարապետական, քաղաքաշինական ինքնատիպություն:

Հայտնի է, որ միանգամից, կարճ ժամանակամիջոցում ստեղծված քաղաքները, ինչպես, օրինակ, Բրազիլիայի Բրազիլիա նոր մայրաքաղաքը, զուրկ են այդպիսի հմայքից, չնայած կառուցված են ճարտարապետական բարձր մակարդակով և ճաշակով: Բոլոր երկրներում այժմ ամեն ինչ արվում է հուշարձանների պահպանման համար: Լեհաստանում, որտեղ հիտլերականները շատ քաղաքներ են ավերել, այժմ վերականգնվում են ո՛չ միայն հիմնովին քանդված առանձին շենքերը, այլև ամբողջական անսամբլներ: Չեխոսլովակիայում սրբությամբ պահպանվում են քաղաքների պատմական անսամբլները. շինարարությունը կատարվում է քաղաքների շուրջն ընկած նոր թաղամասերում: Պրագայի կենտրոնում անձեռնմխելի պահպանվում է այնպիսի աննըշան կառուցվածք, ինչպիսին հին ջրաղացն է:

Ճարտարապետական հուշարձանները մեծ մասամբ ո՛չ միայն խարխլված են և կարիք ունեն վերանորոգման (հաճախ հիմնովին), այլև կորցրել են իրենց ֆունկցիոնալ նշանակությունը, հարմար չեն նոր կյանքի պահանջներին: Այդ իսկ պատճառով դժվար է դրանց պահպանման գործը: Այդ դժվարությունը հաղթահարելու համար արվում են տարբեր առաջարկներ՝ օգտագործել դրանք, վերափոխելով միայն ներքինը, հարմարեցնելով նոր ֆունկցիաներին կամ՝ օգտագործել անփոփոխ, որպես թանգարան, ցուցասրահ և այլն:

Սոցիալիստական երկրներում քաղաքաշինության հիմնական խնդիրները լուծվում են արտադրաուժերի համաչափ բաշխմամբ, տնտեսության պլանային զարգացման բոլոր միջոցառումների իրագործմամբ: Սովետական Միությունում անցած 50 տարում հսկայական աշխատանք է կատարվել նախկինում հետամնաց երկրամասերի զարգացման ուղղությամբ: Ստեղծվել են հազարավոր նոր արտադրական օջախներ, քաղաքներ, ավաններ:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը մեծ ուշադրություն նվիրելով քաղաքաշինության հարցերին, խոշոր միջոցներ են հատկացնում այդ նպատակին: Վերակառուցվում են հին քաղաքները, կառուցվում նորերը, մեծ նշանակություն տալով փոքր ու միջին քաղաքների զարգացմանը: Առաջիկա «ժամանակաշրջանում ավելի ու ավելի կզարգանան փոքր ու միջին բարեկարգ քաղաքները,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— որը թույլ կտա բարելավել և առողջացնել կյանքի պայմանները»:

Քաղաքաշինության հարցերը կենսական նշանակություն ունեն նաև մեր հանրապետության համար: Քաղաքների աննախընթաց զարգացման պայմաններում կենսամիջավայրի բարելավման անհերքելի նվաճումների հետ մեկտեղ մեզ մոտ ակնբախ են նաև դրա վատացման երևույթները:

Արագ աճում է բնակչությունը, իսկ բնակավայրերի բարեկարգման աշխատանքները և սպասարկման օբյեկտների կառուցումը ետ են մնում բնակարանային շինարարությունից: Քիմիական արդյունաբերության բուռն զար-

գացմամբ զգալի չափով թոմավորված է Երևանի, Կիրովականի, Ալավերդու օդը. գործարանային և կոյուղու ջրերն ապականում են Հրազդանը, Դեբետը, Օխչին։

Բնակարանային շինարարության արագ ծավալման հետ մեկտեղ իջել է ճարտարապետական նախագծման և շինարարական աշխատանքների որակը, նկատվում է կառուցումների միօրինակություն։ Շատ տեղերում (Երևանում, էջմիածնում, Լենինականում, Կամոյում, Գորիսում) անխնա ոչնչացվում են հին շենքերը, չմտահոգվելով պատմական միջավայրի պահպանմամբ։

Շատ քաղսովետներ ու գյուղսովետներ մեծ ոգևորությամբ ու սիրով նոր հուշարձաններ են կառուցում, բայց չեն նկատում, թե ինչպես ոչնչանում են բազմաթիվ արժեքավոր հնություններ (երբեմն թեկուզ փոքր), որոնք մեր ազգային մշակույթի կոթողներն են և ինքնատիպություն են հաղորդում բնակավայրին։

Կարևոր է ո՛չ միայն առանձին հուշարձանների, այլև դրանց շրջապատի անսամբլ կազմող միջավայրի պահպանումը։ Օրինակ՝ Միլանի հոյակապ գոթական տաճարը կորցնելով իր միջնադարյան շրջապատը (ցածր կառուցվածքները և փոքր հրապարակները) այժմ շրջապատված է հսկայական հրապարակով և բարձրահարկ շենքերով։ Այդ վիճակով այն անշուք է, խորթ իր շրջապատին։ Եթե էջմիածնի Հռիփսիմեի տաճարը շրջապատենք ժամանակակից ամենագեղեցիկ շենքերով, այն բնավ չի շահի։ Ճարտարապետական հուշարձաններ պետք է համարվեն ո՛չ միայն շատ հին շինությունները, այլև զարգացման առանձին էտապները նշանավորող կարևոր կառուցվածքները։ Օրինակ, Ֆրանսիայում պատմական հուշարձաններ են համարվում մեր ժամանակակից ճարտարապետներ Օգյուստ Պերրեի և Կարբյուզեի նախագծերով կառուցված շենքերը։ Մեզ մոտ, անկասկած, այդպիսի նշանակություն ունի Թամանյանի կառուցած շենքերի մեծ մասը։

Նշված թերությունների հետ մեկտեղ մեր հանրապետությունը, անշուշտ, մարդու կենսամիջավայրի լավացման, ինչպես և ճարտարապետության բնագավառում ունի նաև վիթխարի նվաճումներ։

Անցյալում գորշ և անդեմ, ազգային ինքնատիպությունից զուրկ, ծայրամասային գավառական քաղաքներ էին Երևանը, Ալեքսանդրապոլը (Լենինականը) և մյուս քաղաքները՝ նեղ, անկանոն, անբարեկարգ փողոցներով։ Ցածր էր բնակչության սպասարկման մակարդակը, անբավարար ինժեներական սարքավորման վիճակը։ Քաղաքները չունեին հասարակական հրապարակներ, շենքեր, այգիներ։ Սովետական իշխանությունը հիմնովին փոխեց մեր քաղաքների և այլ բնակավայրերի քաղաքաշինական, ճարտարապետական տեսքը։

Հայրենի բազմերանգ քարերով կառուցապատված լայն փողոցները, հասարակական հրապարակները, սովերախիտ, ծաղկաշատ այգիներն ու լճերը նոր երանգ են տվել մեր քաղաքներին և բնակիչների սպասարկման համար ստեղծել են ժամանակակից բոլոր անհրաժեշտ հարմարությունները։ Բնակելի տունը (քաղաքներում ու գյուղերում) ունի ինժեներական սարքավորման բոլոր միջոցները և եթե այսօր իրականացվում է ամեն մի ընտանիքի առանձնացված բնակարան հատկացնելու խնդիրը, ապա մոտ ապագայում կառաջադրվի ընտանիքի ամեն մի անդամին առանձին սենյակ տալու պահանջը։ Բարելավվել են աշխատատեղի պայմանները։ Հանգստի և սպորտի համար ամենուրեք ստեղծվում են այգիներ, պուրակներ, լճեր և ջրավազաններ, ստադիոններ, տուրիստական կայաններ, հանգստավայրեր, առողջարաններ։



Ծավալուն աշխատանք է տարվում անտառների վերականգնման, դրանց տարածության ընդարձակման ուղղությամբ։ Կառուցվել են մեծ ջրամբարներ (Ապարանի, Մանթաշի, Արփայի և այլն), որոնք կնպաստեն ո՛չ միայն տնտեսական վ։.։ւլքին, այլև հայրենի բնաշխարհի բնակլիմայական պայմանների բարելավմանը, կընձեռեն սպորտի, հանգստի և տուրիզմի նոր հնարավորություններ։ Զգալի գործ է արվում նաև ճարտարապետական հուշարձանների պահպանման և վերականգնման համար։

Լավացնելով կենսամիջավայրը, մարդը լավացնում է իրեն, որովհետև միջավայրն է ստեղծում մարդուն։ Լինելով միջավայրի վրա ազդող սուբյեկտ, մարդը միաժամանակ օբյեկտ է միջավայրի համար, նրա ներգործմանը ենթակա։ Եթե մարդն ապրում է հարմարավետ բնակարանում, հեշտությամբ և արագ է գնում աշխատավայրը, աշխատում է առողջարար պայմաններում, օգտվում է հանգստի, սպորտի, տուրիզմի լավ պայմաններից, անկասկած, արդյունավետ կլինի և նրա աշխատանքը և եթե դա վերաբերում է ամբողջ հասարակությանը, ապա այդ հասարակությունն անպայման կբարգավաճի, որն, իր հերթին, կնպաստի նրա կենսամիջավայրի հետագա բարելավմանը։

Մարդու գործունեության բոլոր բնագավառներում աշխատանքը պետք է լինի նպատակասլաց, ամեն ինչ արվի կենսամիջավայրի լավացման համար։ Շատ կարևոր են նոր արտադրական ձեռնարկությունների նպատակահարմար տեղաբաշխումը, բնակավայրերի ստեղծումը կամ հների ընդարձակումը, բնակավայրերի ընդհանուր տեղաբաշխումը ամբողջ հանրապետության մեջ, դրանց փոխադարձ դիրքն ու կապը, դերն ընդհանուր սիստեմում և որոշակի շրջանում, քաղաքների և գյուղատնտեսական բնակավայրերի հաջորդականությունն ու փոխադարձ կապը և այլն։

Այս ամենը պլանավորող օրգանների, պետպլանի և պետշինի կարևորագույն խնդիրն է, որի լուծումը պետք է լինի նրանց, ինչպես և շրջանային նախագծային կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

ԻՍԱԲԵԿՅԱՆ Հ. Հ.
Ճարտարապետ, վաստակավոր շինարար

## ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԻԿ



ԱԲՐԱՀԱՄՅԱՆ Ա. Գ.

### ՀԱՅՐԵՆԻ ԲՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՀԱՅՐԸ

Անանիա Շիրակացին հայ մատենագրության կարկառուն դեմքերից է, բնական գիտությունների հիմնադիրը հայ իրականության մեջ։ Նրանից մեզ հասել են մաթեմատիկայի, տիեզերագիտության, տոմարի, աշխարհագրության և գիտական այլ բնագավառների վերաբերող մի շարք մեծարժեք աշխատություններ, որոնք ունեն կուլտուր-պատմական և ուսուցողական մեծ նշանակություն։

Շիրակացու անձնավորության ու գիտական գործունեության մասին ճիշտ պատկերացում կազմելու համար անհրաժեշտ է փոքր-ինչ ծանոթանալ նրա ապրած ժամանակաշրջանին։

Ինչպես հայտնի է, VII դարի կեսերին Հայաստանն ընկավ արաբական խալիֆայության գերիշխանության տակ։ 652 թվականին հայ իշխան Թեոդորոս Ռշտունու և Ասորիքի արաբական կառավարիչ Մուավիայի միջև կնքված պայմանագրով Հայաստանը ճանաչեց խալիֆայության սուվերենությունը և պարտավորվեց կռվի ժամանակ օգնել նրան իր զորաբանակով և հարկ վճարել։ Ըստ որում, արաբական գերիշխանության առաջին շրջանում Հայաստանի վճարած հարկն այնքան էլ ծանր չէր և ծախսվում էր հայկական զորաբանակի վրա։ Հայ նախարարները պահպանում էին իրենց ներքին անկախությունը։

Այդ պայմանագրից հետո, հատկապես Գրիգոր Մամիկոնյանի կառավարչության տարիներին (653—688 թթ.), Հայաստանն ապրեց երկարատև խաղաղության շրջան. «Եւ եղև բազում խաղաղութիւն յաւուրս նորա» (այսինքն՝ Գրիգոր Մամիկոնյանի), գրում է Ղևոնդ պատմիչը։ Խաղաղության այս շրջանում Հայաստանի տնտեսական կյանքում տեղի ունեցան զգալի տեղաշարժեր. նկատելի չափով զարգացան արտադրողական ուժերը, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, ընդարձակվեց տարանցիկ առևտուրը։

VI—VII դարերում Հայաստանը, որը թշնամական կողմերի համար հա-



մարվում էր չեզոք մի երկիր, դարձավ միջազգային առևտրի փոխանակության կարևոր կենտրոն։ Շիրակացու Մղոնաչափ վերնագրով մի աշխատությունից երևում է, որ Հայաստանում խաչաձևվում էին տարանցիկ առևտրի վեց մայրուղիներ։ Ըստ ժամանակակից պատմիչ Պրոկոպիոսի վկայության, «Հնդկաստանից, հարևան Իբերիայից, Պարսկաստանից և Հռոմի գերիշխանության տակ գտնվող գրեթե բոլոր ժողովուրդներից ապրանքներ էին բերում Դվին քաղաքը և առևտուր անում»։ VII դարում նկատելի է նաև շինարարական աշխատանքների լայն թափ։ Այդ դարում է կառուցվել հին հայկական աչքի ընկնող հուշարձանների մեծ մասը՝ Հռիփսիմեի, Զվարթնոցի, Մրենի, Թալինի, Թալիշի տաճարները և այլն։ Հայ ճարտարապետության պատմության ականավոր մասնագետ Թ. Թորամանյանն այնքան է հիացած VII դարի հուշարձաններով, որ դրանք համարում է «վերածննդյան շրջանի արգասիք»։

Տնտեսական կյանքի զարգացումը, ներքին և տարանցիկ առևտրի ընդարձակումը, շինարարական աշխատանքների ու ոռոգման ցանցի ծավալումը և այլն, նոր, ավելի բարձր պահանջներ են դնում գիտության ու մշակույթի առջև և խթանում դրանց զարգացմանը։

Մեծ երախտավոր Մեսրոպ Մաշտոցը 407 թվականին ստեղծեց հայկական ներկա գիրը և հիմք դրեց հայագիր գրականության այնպիսի մի փայլուն շրջանի, որը համարվում է հայ միջնադարյան մատենագրության ոսկեդարը։ Հետագա դարերը, սակայն, հայ մատենագրության անկման կամ, ինչպես փորձում են բնորոշել հայ կղերական պատմագրության որոշ ներկայացուցիչներ, «ցեխադարեր» չհանդիսացան, այլ՝ V դարի մատենագրության ու մշակույթի օրինաչափ զարգացման դարեր։

VII դարում Հայաստանում հանդես են եկել մատենագրական մի շարք դպրոցներ, որոնք զգալի դեր են կատարել հայ մատենագրության բնագավառում։ Դրանցից կարելի է հիշել Սյունյաց դպրոցը, որն, Օրբելյանի վկայությամբ, կոչվել է «գլուխ և հրամանատար դպրոց», Դպրեվանքինը, Արշարունյացը, Մայրիվանքինը, Գլակինը և այլն։ VI—VII դարերում նկատելի է մի նոր երևույթ—անտիկ գիտության լավագույն աշխատությունների թարգմանությունները հայերեն։ Թարգմանում են Արիստոտելի աշխատությունների մեծ մասը, Պորփյուրիոսի Ներածությունը, Թրակացու Քերականությունը, Պլատոնի, Զենոնի և Հերմեսի ու անտիկ կլասիկ հեղինակների այլ աշխատություններ. դրանց մեջ կան այնպիսիք, որոնց հունական բնագրերը կորել են և մեզ հասած հայկական թարգմանությունները համարվում են համաշխարհային ունիկումներ։

VII դարում հանդես են գալիս հայ ականավոր մի շարք մատենագիրներ, որոնք զգալի դեր են կատարում հայ մատենագրության զարգացման բնագավառում։ Նրանցից են՝ ականավոր պատմիչ Սեբեոսը, Մաթուսաղան՝ Սյունյաց դպրոցի հիմնադիրը, որը հիշվում է «Մեծ Քերթող», «Անհաղթ փիլիսոփա» տիտղոսներով, Հովհան Մայրեգոմեցին՝ Մայրավանքի դպրոցի հիմնադիրը, Մովսես Կաղանկատվացին՝ «Աղվանից պատմության» հեղինակը, Դավիթ Բագրևանդցին, որը հիշվում է «Մեծ փիլիսոփա» տիտղոսով, Վրթանես Քերթողը՝ «Յաղագս պատկերամարտից»-ի հեղինակը, Թեոդորոս Քռթենավորը, որի մի շարք ճառերն են մեզ հասել, Բարսեղ Ճոնը՝ Դպրեվանքի աչքի ընկնող հեղինակը, Կոմիտաս կաթողիկոսը, որը հայտնի է Հռիփսիմյանց վրա գրած իր քնարական բանաստեղծությամբ և ուրիշներ։

Խոսելով VI—VII դարերի մատենագրության մասին, պետք է նկատել, որ

այն միատարր չի եղել, այլ ունեցել է երկու թև, երկու տարբեր ուղղություն. դրանցից մեկը՝ հայ եկեղեցու պաշտոնական դոգմատիկայով առաջնորդվող, այդ դոգմաները պրոպագանդող պահպանողական ուղղությունն է, մյուսը՝ իր ժամանակի առաջադեմ խավերի հայացքներն արտահայտող, հելլենիստական գիտության և գրականության ավանդույթին հետևող ազատամիտ ուղղությունը։

Երկրորդ ուղղության ներկայացուցիչներից է Անանիա Շիրակացին։

Շիրակացու անձնավորության մասին հավաստի տեղեկություններ ունենք. մեզ է հասել նրա ինքնակենսագրությունը՝ Վասն ուսման իւրոյ կենաց խորագրով, որը թարգմանվել է ռուսերեն, անգլերեն, գերմաներեն և ֆրանսերեն։

Շիրակացին ծնվել է պատմական Շիրակի Անի ավանում VII դարի սկզբներին։ Հոր անունն էր Հովհաննես։ Նախնական կրթությունն ստացել է ծննդավայրի վանական դպրոցում, իսկ հետո, իր գիտելիքները խորացնելու նպատակով, մեկնել Արևմտյան Հայաստան։ Նա շատ է սիրել, մասնավորապես, մաթեմատիկան՝ համարելով այն մայր բոլոր գիտությունների։ «Յոյժ կարօտեալ արուեստի համարողութեան,— գրում է նա,— խորհեցայ եթէ ոչինչ յարմարի արուեստի համարողութեան՝ մայր կարծելով ամենայն իմաստից»։

Մաթեմատիկայի լավագիտակ ուսուցիչ ճարելու նպատակով Շիրակացին երկար է թափառում Արևմտյան Հայաստանում և չգտնելով իր հավանած մասնագետը, պատրաստվում է մեկնել Կոստանդնուպոլիս. ճանապարհին, Սինոպ նավահանգստային քաղաքում, նրան են հանդիպում ծանոթ հայ վաճառականներ, որոնք հայտնում են, թե Կոստանդնուպոլսից եկող իրենց նավում եղել են բյուզանդական արքունիքից Տրապիզոն սովորելու ուղարկվող ուսանողներ ու խորհուրդ են տալիս նրան սովորելու գնալ Տրապիզոն։ Շիրակացին լսում է ծանոթների խորհուրդը։

Տրապիզոնի դպրոցի ուսուցիչն էր Տյուքիկոսը՝ իր ժամանակի աչքի ընկնող հույն գիտնականներից մեկը։ Տյուքիկոսը սիրով է ընդունում հայ երիտասարդին, պարապում նրա հետ. «Եւ սիրեաց զիս որպէս զորդի իւր և պարապեաց յիս ամենայն խորհրդոց իւրոց, մինչև նախանձեալ ընդ իս ամենայն աշակերտաց իւրոց, որք ի դրանէն արքունի»։

Շիրակացու խոսքերից երևում է, որ Տյուքիկոսն ունեցել է մեծ գրադարան «հայտնի թե անհայտ գրքերի»—բնական գիտությունների, արվեստի, պատմության, բժշկության, ժամանակագրությունների և այլ բնագավառների. մի խոսքով, հավատացնում է մեզ Շիրակացին, չկար այնպիսի գիրք, որ չլիներ իր ուսուցչի գրադարանում։ Ըստ Շիրակացու տեղեկության, Տյուքիկոսը կատարելապես տիրապետել է հայերենին. հունարեն գիրքը վերցնում էր ձեռքը, ասում է նա, և առանց հապաղելու թարգմանում հայերեն։

Տյուքիկոսի մոտ նա սովորում է ութ տարի, կատարելապես տիրապետում բնական գիտություններին և իմացության հարուստ պաշարով վերադառնում հայրենի գավառը՝ Շիրակ։ Այստեղ նա բաց է անում իր դպրոցը և զբաղվում մանկավարժությամբ։ Ուսուցչությանը զուգընթաց կատարում է գիտահետազոտական մեծ աշխատանք։ Խոշոր հանրագիտակը գրում է գիտությունների տարբեր բնագավառներին վերաբերող մի շարք աշխատություններ։ Շիրակացու աշխատությունների փոքր մասն է մեզ հասել, սակայն այդ քչի մեջ ևս դժվար չէ տեսնել գիտնականի մեծությունը և նրա արտակարգ էրուդիցիան։

Շիրակացու՝ մեզ հասած աշխատությունների կոթողը, հայ միջնադարյան մատենագրության փառքն ու պարծանքը՝ նրա թվաբանության դասագիրքն է։



որը պարունակում է գումարման («ընդունելութեան»), հանման («Բացերթութեան»), բազմապատկության և բաժանման («Վեցհազարեակ»-ի) աղյուսակները, թվաբանական 24 խնդիրներ և «Խրախճանական» (ուրախական) խնդիրներ։ Շիրակացու մաթեմատիկական աշխատություններով հանգամանորեն զբաղվել են մի շարք գիտնականներ՝ ակադ. Հ. Ա. Օրբելին, մաթեմատիկական գիտությունների դոկտոր Գ. Բ. Պետրոսյանը և ուրիշներ։

Շիրակացուց շատ առաջ Բաբելոնում, Եգիպտոսում, Հունաստանում և Հռոմում գոյություն են ունեցել թվաբանական բազում դասագրքեր, գուցե
շատ ավելի բարդ, քան Շիրակացունն է, սակայն դրանցից ոչ մեկը, դժբախ-
տաբար, մեզ չի հասել ամբողջական ձևով։ Նրա թվաբանական դասագիրքը,
ինչպես ապացուցված է, մեզ հասած թվաբանության հանգույցներից մեկն է
աշխարհում։ «Ըստ մաթեմատիկական բնության,— գրում է ռուս հայտնի մա-
թեմատիկոս Ի. Դեպմանը,— Սովետական Միության ժողովուրդներից առաջին
տեղում են գտնվում հայերը։ Հայաստանում է հանդես եկել VII դարի հրաշալի
գիտնական Անանիա Շիրակացին»։

Համամիութենական գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ
«История отечественной математики» քառա-
անցյալ տարի լույս տեսած
հատոր աշխատության առաջին հատորում (որի խմբագրական կազմում կան
այնպիսի անվանի մաթեմատիկոսներ, ինչպիսիք են՝ Մաթեմատիկայի պատ-
մության համաշխարհային խորհրդի նախագահ Ա. Պ. Յուշկևիչը, ակադեմիկոս
Ն. Ի. Մուսխելիշվիլին, ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ Ա. Օ. Գելֆոնդը և ուրիշ-
ներ) Շիրակացու թվաբանության դասագիրքը համեմատվում է այլ ժողովուրդ-
ների մեզ հասած բնագրերի հետ և հետևյալ կարծիքն է հայտնվում. «Շիրակացու
թվաբանական աշխատությունները, ամբողջությամբ առած, մեզ հասած հնա-
գույն մաթեմատիկական բնագրերն են, իսկ դասագրքի պարունակած թվա-
բանական աղյուսակները՝ մեզ հասած ամենահնագույն աղյուսակներն աշ-
խարհում»։ Ի դեպ, Շիրակացին իր ժամանակ այնքան մեծ հռչակ է վայելել
որպես մաթեմատիկայի խոշորագույն մասնագետ, որ նրան տրվել է «Համա-
րող», այսինքն՝ «Մաթեմատիկոս» մականունը։

Շիրակացու՝ մեզ հասած մյուս աշխատություններից գիտական բացառիկ
արժեք ունի նրա Տիեզերագիտությունը, որը հասել է մեզ երկու խմբագրու-
թյամբ՝ ընդարձակ և համառոտ։ Շիրակացու այս աշխատության մեջ արծարծ-
ված են տիեզերագիտական բազում հարցեր, որոնք այժմ մեծ հետաքրքրու-
թյուն են ներկայացնում գիտությունների պատմության համար։ Շիրակացու
աշխատությունների ուսումնասիրությամբ զբաղվել են պրոֆ. Լ. Լ. Սեմյոնովը, դոցենտներ Հ. Ս. Բադալյանը և
աստղագիտական և տոմարագիտական
Բ. Ե. Թումանյանը։

Տիեզերագիտական այս աշխատության մեջ ուշագրավ է, հատկապես,
Շիրակացու արտահայտած տեսակետը կոսմոգոնիայի (աշխարհաստեղծման)
մասին։ Քննասեր հայ մտածողին շարունակ հետաքրքրել է, թե ինչ ձև ունի
երկիրը։ Անդրադառնալով այս հարցին, նա հետևյալ ինքնատիպ բացատրու-
թյունն է տվել. «Երկիրը, ինձ թվում է, ձվի նման է, ինչպես ձվի դեղնուցը
կլոր մեջտեղումն է, սպիտակուցը՝ նրա շուրջը, իսկ կեղևը շրջապատում է
չորս կողմից, այնպես էլ երկիրը գտնվում է մեջտեղում, օդը՝ նրա շուրջը և
երկինքը շրջապատում է չորս կողմից»։

Նշանակալից է այն, որ երկրի կլորության մասին Շիրակացին իր կարծի-
քը հայտնում է առանց վերապահության՝ հակադրվելով երկրի ձևի մասին իր

ժամանակ գոյություն ունեցող մի շարք տեսակետների, այդ թվում նաև՝ Աստվածաշնչի տեսակետին, ըստ որի երկիրը տափակ մի տարածություն է, և եթե մարդ ելնի շատ բարձր լեռան գագաթը, կտեսնի աշխարհի չորս բոլորը: Պետք է նկատի ունենալ, որ մեծ համարձակություն էր պետք այն ժամանակ արտահայտելու քաղաքացիություն ստացած պաշտոնական ըմբռնումներին հակասող տեսակետ. գիտության մշակին կարող էին համարել հերետիկոս, կտրել նրա ձեռքերի, ոտքերի ջլերը, խարան դնել ճակատին, ինչպես վարվում էին այդպիսի դեպքերում:

Շիրակացին իր նույն աշխատության մեջ, մի այլ տեղ ևս, անդրադառնում է երկրի կլորությանը, բայց այս անգամ՝ վարագուրված ձևով. իբր թե երբ ինքը Եվգենիայի տաճարում աղոթելիս մտածում էր այն մասին, թե ինչ ձև ունի երկիրը, քունը տանում է: Երազում տեսնում է, որ արեգակը երիտասարդի տեսքով իջնում է երկիր: Նա գնում է արեգակին ընդառաջ, գրկում նրան և հարցնում՝ թե երբ փնում է երկրագնդի մյուս կողմը, ո՞ւմ է լույս տալիս: Արեգակը պատասխանում է, որ երկրի մյուս մասում կան անմարդաբնակ ձորեր, լեռներ, անձավներ, նրանց է լույս տալիս:

Երկրի կլորության հարցում Շիրակացին հետևում է Պտղոմեոսի տեսությանը. նրա աստղագիտական սիստեմը ոչ թե հելիոցենտրիկ է (արեգակնակենտրոն), այլ գեոցենտրիկ (երկրակենտրոն):

Ընդունելով երկրի կլորությունը, անհրաժեշտ էր բացատրել նաև այն հարցը, թե ինչպես է, որ երկիրը՝ այդ հսկայական զանգվածը, կարողանում է պահպանել իր հավասարակշռությունը տիեզերական անհունության մեջ և վայր չի ընկնում: Այս հարցին հնում գիտնականները տարբեր բացատրություն են տվել: Այսպես, ոմանք կարծել են, թե երկիրը հաստատված է հսկա փղերի վրա, ոմանք՝ եզան, ոմանք՝ կոկորդիլոսների և այլն: Ըստ Աստվածաշնչի, երկիրը հաստատված է ծովի վրա, իսկ ծովը՝ սյուների: Շիրակացին զգուշությամբ առարկում է Աստվածաշնչին, թե՝ «Ծովերն ինչպե՞ս կարող են պահել այդպիսի ծանրություն և թույլ չտալ, որ ընկղմի»: Շիրակացու կարծիքով երկրին հավասարակշռություն տվողը մրրիկն է, որը փչում է երկրի ներքևից դեպի վեր. երկիրն իր ծանրությամբ հակում ունի ներքև իջնելու, իսկ մրրիկն աշխատում է նրան վեր բարձրացնել և այս երկու հակադիր ուժերն են, որ հավասարակշռություն են ստեղծում: Այդ տեսակետը, ինչպես գիտենք, ճիշտ չէ, սակայն Նյուտոնից առաջ տվյալ հարցի մասին արտահայտված հիպոթեզներից ամենատրամաբանականն է համարվել: Գիտության պատմության մեջ այն հայտնի է «Մրրիկների տեսություն» անունով:

Շիրակացին խոր թափանցելով տիեզերքի գաղտնիքների մեջ՝ ճիշտ է բացատրել Ծիր Կաթինի էությունը: Այդ հարցին նվիրված «Յաղագս կաթին ծրոյ» գլխում նա բերում է ժողովուրդների մեջ տարածված մի շարք առասպելներ. «Ոմանք ասում են,— գրում է նա,— թե Ծիր Կաթինը Հերա աստվածուհու ստինքից թափված կաթն է, որ ցրվել է երկնակամարում, ոմանք գտնում են, թե դա Գերոն աստծու նախրի ճանապարհն է, ոմանք Պերսեֆոնիա աստվածուհու առագաստն են համարում»: Շիրակացին բերում է նաև հայկական առասպելը, ըստ որի՝ հայկական Վահագն աստվածը մի ցուրտ ձմռան գնացել է Ասորիք, գողացել ասորական Բարշամ աստծու հարդը և երկնքով բերելիս թափել ճանապարհին, որի պատճառով այն «Հարդագողի ճանապարհ» է անվանվում: Նա քննադատում է այս առասպելները. «Թողեք զայդ ի բաց... մի դուք զայդպիսի բան լսէք, քանզի բարի փիլիսոփայք ասացին զգմանէ,



յթե խիստ աստեղք են բազումք, նուաղ և յոյժ աղօտ երևմանէն միաւոր լոյս տեսանին»:

Գիտության մեջ Ծիր Կաթինը մանր աստղերի կուտակում համարող առաջին հեղինակը ճանաչվում է Գալիլեո Գալիլեյը: Սակայն արդարությունը պահանջում է ասել, որ Գալիլեյից շատ առաջ այս հիպոթեզն առաջ է քաշել նաև Անանիա Շիրակացին VII դարում, մոտ հազար տարի Գալիլեյից առաջ:

Շիրակացին իր «Տիեզերագիտության» մեջ հանգամանորեն խոսել է արեգակի և լուսնի խավարումների մասին: Քաղդեական աստղաբաշխները խավարումները կապում էին երկնային ինչ-որ վիշապի շարժումների հետ, որն իր պոչով ծածկում էր իբր թե արեգակի կամ լուսնի երեսը և առաջացնում խավարում: Հակառակ այս անհեթեթ բացատրությունների, Շիրակացին գտնում է, որ երբ արեգակն իր պտույտի ընթացքում գտնվում է հյուսիսային կիսագնդում, իսկ լուսինը՝ հարավային, և երկիրն ընկնում է նրանց միջև, արգելակում արեգակի լույսի թափանցումը լուսին, առաջանում է լուսնի խավարում: Իսկ երբ լուսինն է ընկնում արեգակի և երկրի միջև ու արգելակում արեգակի լույսը դեպի երկիր, առաջանում է արեգակի խավարում. «Արեգակը գեր ի վերոյ լուսնին է,— գրում է Շիրակացին,— և լուսինն դիպեալ ի ներքոյ արեգական... յորժամ հավասարագոյգ լինին, մինն զի լիցի ի վերոյ և միւսն ի ներքոյ կշիռ նմին. և արեգակն բերան բացեալ հոսէ հեղլով զբոլորութիւն լոսոյն ուղիղ կշռութեամբ ի միջոյ լուսնին, ոչ թողու անցանել ի ներքին անօսրութիւն օդոյն, որ սփռեալ տարածանի ընդ ծով և ցամաք»:

Շիրակացին գիտե, որ արեգակը մեծ է երկրից: Նա բերում է մի շարք օրինակներ և ամփոփում հետևյալ խոսքերով. «և յայսմ ամենայնէ յայտ է, թէ մեծ է արեգակն»: Նա կտրականապես մերժում է այն գիտնականների տեսակետը, ինչպես և եկեղեցական հայրերի, որոնք գտնում են, որ լուսինն ունի իր սեփական լույսը: Հակառակ այդ կարծիքի, Շիրակացին պնդում է, որ լուսինն իր սեփական լույսը չունի, այլ նա ստանում է արեգակից և արտացոլվում է այնպես, ինչպես արեգակի լույսն է արտացոլվում հայելու մեջ: Նրա կարծիքով, արփին իր լույսը տալիս է արեգակին, իսկ արեգակը՝ լուսնին: «Բայց ոմանք յեկեցւոյ ասացին, թէ առանձին ունի լուսինն զլոյսն և ոչ արեգակնէ... Ես հաւանիմ բազմաց իմաստասիրաց, յարեգակնէ առնել զլոյս», գրում է նա:

Շիրակացին անդրադարձել է նաև լուսնի վրա երևացող սև բծերին և հիմնվելով անտիկ գիտնականների հայտնած կարծիքների վրա՝ գրել է լուսնի վրա երևացող սև բծերի մասին, որոնք նման են կնիքից մնացած հետքերի, արտաքին (այսինքն՝ անտիկ— Ա. Աբ.) գիտնականներն ասացին, որ խորդուբորդություններ են, կինթ քարի տեսքով, «դրա համար էլ պայծառ լույս չունին»:

Շիրակացին լույսի արտացոլման հետ է կապում լուսնի պարբերաշրջանների փոփոխությունը: Ըստ նրա տեսության արեգակը գտնվում է հինգերորդ գոտում, իսկ լուսինը՝ չորրորդ, ուստի, լուսինն իր լույսն ստանում է վերից. և քանի որ արեգակը և լուսինը տարբեր արագությամբ են պտտվում երկրագնդի շուրջը, ուստի, նրանք մեկ մոտենում են իրար, մեկ հեռանում: Լուսնի պարբերաշրջանների փոփոխության հետ է նա կապում ծովերի և օվկիանոսների տեղատվությունն ու մակընթացությունը. լիալուսնի ժամանակ ծովերի ջրերն սկսում են բարձրանալ, իսկ լուսնի փոքրանալիս՝ իջնել:

Շիրակացին իր գիտական աշխատություններում քննության է առել ճշգր-

րիտ գիտություններին վերաբերող շատ հարցեր— ի՛նչ հեռավորությունների վրա են գտնվում երկնային լուսատուները երկրից, նրանց շարժումները, ձյան և անձրևի առաջացման պատճառները և այլն։

Գիտական մեծ արժեք ունեն Շիրակացու տոմարագիտական աշխատությունները, որոնք նա գրել է 667 թվականին, Անաստաս կաթողիկոսի հանձնարարությամբ։ Այս աշխատության մեջ քննարկված են տոմարագիտական բազմաթիվ հարցեր՝ կապված վերադրի, յոթնյակի, ոսկեգրի, տարեմուտի, լուսնի ու արեգակի պարբերաշրջանների հետ և այլն։

Շիրակացին տոմարագիտական իր աշխատություններում մեծ տեղ է հատկացրել իր ժամանակ գոյություն ունեցող տոմարական կարևոր սիստեմներին։ Կան ժողովուրդներ, որոնց տոմարը հայտնի է միայն Շիրակացու աշխատություններից։ Այսպես, հայտնի է, որ հարևան աղվանական ժողովրդի տոմարի միակ սկզբնաղբյուրը Անանիա Շիրակացու մոտ ենք հանդիպում։

Շիրակացու՝ վերջերս հայտնաբերված աշխատություններից գիտական մեծ արժեք ունի նրա Լուսնացույց-ը, որը պարունակում է լուսնի 19 տարիների պարբերաշրջանի բոլոր ամիսներում տեղի ունեցած ծնունդներն ու լրումները։ Այդ Լուսնացույց-ի հիման վրա կարելի է ճշտությամբ ասել, թե ո՛ր թվականին, ո՛ր ամսի քանիսին, ո՛ր ժամում և ո՛ր րոպեում պետք է Հայաստանում տեղի ունենա լուսնի ծնունդը և լրումը։ Անհրաժեշտ է նշել, որ Շիրակացին անփոփոխ չի ընդօրինակել Մետոնի Լուսնացույց-ը, այլ տեղում աստղագիտական դիտարկումներ է կատարել և այն սրբագրել՝ հարմարեցնելով Հայաստանի պայմաններին։ Այդ մասին նա նշել է իր Լուսնացույց-ի առաջաբանում. «Ես՝ Անանիա Շիրակացի, ստուգիւ քննեցի զամենայն աւուրս ընթացից եղանակաց լուսնի ըստ որում շրջագայէ, խորանուք փակեալ արձանացուցի»։ Անհավանական չէ, որ Շիրակացին ունեցել է աստղադիտարան, ուր և հաճախակի դիտել է լուսնի շարժումը։

Շիրակացու լավագույն աշխատություններից է նաև Աշխարհացույց-ը, որը բացառիկ արժեք ունի ո՛չ միայն Հայաստանի, այլև հարևան ժողովուրդների պատմական աշխարհագրության համար։ Սովետական գիտնականներից նրա ուսումնասիրությամբ վերջերս զբաղվել են Հայկ. ՍՍՀ ԳԱ իսկական անդամ Ս. Տ. Երեմյանը և Երևանի պետական համալսարանի պրոֆեսոր Թ. Հակոբյանը։

Աշխարհացույցի հավելվածին կցված է մի բնագիր, ուր հեղինակը փորձում է սահմանել մեր երկրի հեռավորությունը Արեգակից, Լուսնից, Մերկուրիից, Լուսաբերից, Յուպիտերից, Մարսից և այլ մոլորակներից։ Մեր երկրից մինչև Լուսին նա սահմանել է 930 հազար ասպարեզ, մինչև Փայլածու՝ մեկ միլիոն 840 հազար, մինչև Մարս՝ 30 միլիոն 930 հազար ասպարեզ և այլն։ Շիրակացու հաշվումները սխալ են և չեն համապատասխանում ժամանակակից հաշվումներին։ Այն ժամանակ դեռ չկային հեռադիտակներ, որ կարելի լիներ ճիշտ հաշվումներ կատարել։ Բայց կարևորն այստեղ այն է, որ հայ գիտնականը, հեռավոր անցյալում, զբաղվել է նման հարցերով։

Շիրակացու՝ մեզ հասած աշխատություններից բարձր են գնահատվում նրա չափ ու կշռի, թանկագին քարերի, «Մղոնաչափք»-ի մասին գրած աշխատությունները և մի քանի այլ բնագրեր, որոնց պատառիկներն են հասել մեզ։

Հայ գիտնականը կատաղի հակառակորդ էր ախտարքով (ճակատագրի գուշակություն աստղերի շարժումներից) զբաղվողներին, բախտագուշակներին։ Նա սուր քննադատության է ենթարկել, մասնավորապես, քաղդեական բախ-



տագուշակներին այն բանի համար, որ նրանք փորձում են մարդկանց ճակատագիրը՝ նրանց բախտավոր կամ անբախտ, բարի կամ չար, հարուստ կամ աղքատ, տեր կամ ծառա լինելը կապել աստղերի շարժման հետ և պնդել, որ իբր մարդկանց ճակատագիրը նախորոշվում է աստծուց, կախված է այն բանից, թե ո՛ր աստղի տակ է ծնվում երեխան։ Նման գիտնականների պնդումները Շիրակացին համարում է զառանցանք, իսկ նրանց հեղինակներին՝ կախարդներ։ Եթե ճիշտ է այս տեսությունը, ասում է Շիրակացին, այն դեպքում ինչո՞ւ են ծառաները ձգտում լավ կյանքի, չէ՞ որ աստված նախապես որոշել է նրանց դժբախտ կյանքը։ Եթե երեխան ծննդից չար է, այն դեպքում ինչո՞ւ են հանցանքի համար նրան դատապարտում, չէ՛ որ նա ի ծննդենե աստծուց չար է ստեղծված։ Եթե մարդկանց չար ու բարի լինելը նախապես աստծուց է սահմանվում, այն դեպքում ինչի՞ համար են օրենքները և դատարանները, քանի որ մարդը չի կարող աստծու սահմանումից դուրս գալ կամ հակառակը գործել։ Եվ, վերջապես, եթե փոքրիկ, անմեղ երեխայի մեջ աստված չարություն է դնում, այդ դեպքում չար է ինքը՝ աստված։ Շիրակացու համար ամեն ինչից բարձր է գիտությունը, և այն ամենը, ինչ հակառակ է գիտությանը, անընդունելի է նրան. «Դու գիտությունը մերժեցիր, ես էլ քեզ եմ մերժում»,— այս է Շիրակացու նշանաբանը։

Շիրակացին փիլիսոփայական բովանդակությամբ հատուկ աշխատություն չունի, սակայն իր Տիեզերագիտության մեջ արտահայտել է փիլիսոփայական որոշ մտքեր, որոնք հատկապես հետազոտվել են Հայկ. ՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Վ. Չալոյանի, պրոֆ. Հ. Գաբրիելյանի և փիլիսոփայական գիտությունների թեկնածու Գ. Խրլոպյանի կողմից։

Փիլիսոփայական հիմնական հարցերից մեկը, որն արծարծել է Շիրակացին, տիեզերքի սկզբնավորության խնդիրն է. աշխարհը գոյություն ունի՞ հավիտենապես, թե նա ստեղծված է աստծու կողմից։ Շիրակացին որոշակի կանգնած է իդեալիստական փիլիսոփայության տեսակետի վրա և գտնում է, որ այն ամենը, ինչ գոյություն ունի գետնի վրա կամ երկնքում, բոլորն էլ ստեղծված է աստծու կողմից։ Նա նույնիսկ քննադատում է անտիկ Հունաստանի մատերիալիստ փիլիսոփաներին այն բանի համար, որ նրանք «Զաստուած ոչ կամեցան ճանաչել և պատճառ լինելութեան զհիւլէ ասացին»։

Շիրակացին բնությունը պատկերում է շարժման, փոփոխության մեջ։ Ըստ նրա որդեգրած բնափիլիսոփայության, բոլոր տեսակի առկա գոյությունները քայքայվում են և դրանց տեղ նորերն են ստեղծվում. «Ամեն մի լինելություն,— գրում է նա,— ենթադրում է քայքայում, իսկ ամեն մի քայքայում սկիզբ է հանդիսանում նոր լինելության և այս անվերջ հակադրության շնորհիվ է, որ աշխարհը կարողանում է գոյատևել»։

Չի կարելի, իհարկե, ժխտել, որ Շիրակացին իր աշխատություններում մի շարք հարցերում օգտվել է իր ժամանակի առաջավոր անտիկ գիտնականների աշխատություններից, որը և չի թաքցնում։ Բայց այլ կերպ լինել չէր կարող. գիտությունը և կուլտուրան երբեք չեն պարփակվել ազգային նեղ շրջանակներում. գիտական այս կամ այն նորությունները հրապարակ գալուց հետո դրանք արագ տարածվել և ժողովուրդների սեփականությունն են դարձել։ Կարևորը տվյալ դեպքում այն է, որ Շիրակացին VII դարում արծարծել է գիտական այնպիսի հարցեր, առաջ քաշել այնպիսի հիպոթեզներ, որոնք Արևմտյան Եվրոպայում գիտության մեջ քննության նյութ են դառնում և քաղաքացիություն ստանում վերածննդի շրջանում միայն։

Շիրակացին իր գիտական եզրակացություններում տեղ-տեղ ցուցաբերում է հաշտվողական վերաբերմունք եկեղեցական հայրերի ոչ ճիշտ դրույթների նկատմամբ, փորձում երբեմն այս կամ այն եզրահանգումը հաշտեցնել Աստվածաշնչի հետ: Սակայն այս ամենը առերևույթ. քննվող հարցի շարադրանքից երևում է, որ Շիրակացու նախասիրությունը գիտական ճշմարտությունն է:

Ինչպես միջնադարյան բոլոր գիտնականների, այնպես և Շիրակացու ճանապարհին ծաղիկներ չեն եղել ցանված: Նա հալածվել է իր ժամանակի տգետ խավարամոլների կողմից: Իր կենսագրության մեջ մի տեղ նա վշտացած գանգատվում է, որ ինքը թեև քիչ գործ չկատարեց գիտության զարգացման համար, սակայն «Ոչ ոք եղև շնորհակալ և մեծարող իմոց աշխատանացս»,— գրել է նա: Շիրակացու այս խոսքերում դառնության շեշտ կա, խուլ բողոք՝ իր ժամանակի ֆեոդալական ծանր իրականության դեմ: Գրիգոր Մագիստրոսի թղթերից մեզ հայտնի է, որ Շիրակացու աշխատությունները դասվել են արգելված գրականության շարքը: Մագիստրոսի բառերով՝ «գրվանի տակ» են դրել:

Ըստ ժողովրդական մի զրույցի, որը հրապարակել է Ղ. Ալիշանը իր «Հին հաւատք Հայոց» խորագրով աշխատության մեջ, Շիրակացին վշտացած իր նկատմամբ գոյություն ունեցող հալածանքից, թողել է հայրենի երկիրը և գնացել Վենետիկ: Այնտեղ նա Վենետիկի թագավորին սովորեցրել է ջրից ոսկի ստանալու գաղտնիքը: Վենետիկի թագավորը ցանկանալով գաղտնի պահել այդ գյուտը, ուզել է սպանել Շիրակացուն: Բայց երբ Շիրակացին խոստացել է գաղտնիքը ոչ ոքի չասել, փոխել է իր մտադրությունը: Այնուհետև Վենետիկի թագավորը, ցանկանալով նրա սիրտն առնել, ոսկուց հատուկ մեդալիոն է կտրել տվել, որի մի երեսի վրա տպել է տվել Շիրակացու նկարը, իսկ մյուսի՝ իր: Ժողովրդական զրույցի հեղինակները իրենց ասածը հավաստի դարձնելու նպատակով մատնացույց են անում «յուլդուզ» կոչվող ոսկին, որի երեսներից մեկի վրա եղած նկարը իբրև թե Շիրակացունն է:

Շիրակացու ժամանակներից հետո շատ դարեր անցան, մինչև հիմնովին փոխվեցին հին ժամանակներն ու հին տեսակետները, ասպարեզ իջավ գիտությունը սիրող և գիտությամբ առաջնորդվող ազատամիտ նոր սերունդ, որը «գրվանի տակից» լույս աշխարհ հանեց և գիտության լայն շրջանների սեփականությունը դարձրեց Շիրակացու մեծարժեք աշխատությունները:

Զմյուռնահայ ականավոր հրապարակախոս Մատթեոս Մամուրյանը իր հոդվածներից մեկում, ցանկանալով բնորոշել մարդկանց արժանիքները, գրել է. «Կան մարդիկ, որոնք դիակներու հետ կայրին և սովորական մահկանացուք են: Բայց կան նաև մարդիկ ,որ ներկային և ապագային մեջ հավիտյան կապրին. ասոնք տիեզերական սեփականություն են, ծննդյան և վախճանման վկայագիր չունին»: Հավիտյան ապրող և բնական գիտությունների պատմության մեջ տիեզերական գագաթ կազմող ռահվիրաներից է VII դարի հայ հռչակավոր գիտնական, Շիրակի հանճարեղ զավակ Անանիա Հովհաննեսի Շիրակացին:

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ՍԻՄՈՆ ԷՎՈՅԱՆ



Սիմոն Էվոյանին ճանաչում էին ոչ միայն Լոռի-Փամբակում, որը նրա ծննդավայրն էր, ոչ միայն Հայաստանի մյուս շրջաններում, այլև Անդրկովկասի շատ վայրերում: Սիմոն Էվոյանին խոր հարգանք ու սեր էին տածում նրան ճանաչողները, նրա հետ գեթ մի անգամ շփում ունեցողները: Կուսակցական կազմակերպություններում, աշխատավորության մեջ նա մեծ հեղինակություն էր վայելում:

Ինչո՞ւմն է այդ հարգանքի և սիրո գաղտնիքը: Գաղտնիքը Սիմոն Էվոյանի կերպարի էության մեջ էր, նրա, որպես մարդու, որպես հեղափոխականի, որպես լենինյան ոճի բոլշևիկ հեղափոխականի հատկանիշների մեջ էր:

***

Հաղպատեցի ճորտ գյուղացու այդ որդին մինչև 21 տարեկան հասակը ապրում էր գյուղում և անգրագետ հողագործ էր: Զինվորական ծառայությունից հետո, ընդհուպ մինչև 26 տարին բոլորելը (1901 թ.), նա սևագործ բանվոր էր Թիֆլիսում՝ սկզբում ֆաներայի ֆաբրիկայում և ապա քաղաքի Արտիստական թատրոնում:

1901—1905 թվականներին Ս. Էվոյանը ինքնակրթությամբ ձեռք է բերում այն աստիճանի ընդհանուր գրագիտություն, որ ոչ միայն կարդում և ուսումնասիրում է քաղաքական-մարքսիստական գրականությունը, այլև տիրապետում է այն ժամանակվա պայմաններում հազվագյուտ մարդկանց հաջողվող՝ էլեկտրամոնտյորի և մեքենավարի մասնագիտությունների:

Էվոյանի մտավոր զարգացումը, նոր մասնագիտություններին տիրապետելու նրա բուռն ձգտումը շարունակվեց նաև սովետական շրջանում: Նա տիրապետում էր տնտեսական, ֆինանսական բնագավառի մի շարք կարևոր ճյուղերի, ուսումնասիրում մեղվաբուծությունը և ապա հինգ տարի շարունակ գլխավորում է Փամբակի մեղվաբուծական սովխոզը:

Սիմոն Էվոյանը եռանդուն հեղափոխական ու քաղաքական գործիչ էր: 1901—1905 թվականներին նա մասնակցում է Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության տեղական կազմակերպության ընդհատակյա ժողովներին, տարածում է մարքսիստական գրականություն, ելույթներ ունենում բանվորական ժողովներում և միտինգներում: Ս. Էվոյանը 1907 թվականին աքսորվում է, իսկ հետո փախչում աքսորավայրից: Ստեփան Շահումյանի հանձնարարությամբ ընդհատակյա

աշխատանք է տանում Բորչալվի կուսակցական կազմակերպությունում, հանդիսանում Ստեփանավանի շրջանի Լեջան գյուղի կուսակցական կոնֆերանսի նախաձեռնողներից մեկը, ապա՝ դարձյալ պրոպագանդիստ, ագիտատոր, կազմակերպիչ Ալավերդու գործարանում:

1919—1920 թվականներին Սիմոն Էվոյանը Թիֆլիսում ընդհատակյա կուսակցական շրջանային կոմիտեի անդամ է, դարձյալ պրոպագանդիստ և կազմակերպիչ, ապա Լոռվա ապստամբության և պարտիզանական խմբակների կազմակերպիչներից մեկը, Լոռվա շրջանի ռազմա-հեղափոխական կոմիտեի անդամ, Ալավերդու շրջանի հեղկոմի նախագահ:

Սովետական կարգերի ամրապնդումից հետո նա վարել է մի շարք պատասխանատու պաշտոններ Լոռի-Փամբակի գավառում:

Բանվոր-հեղափոխականի կյանքի ուղին շատ է ուսանելի հետագա սերունդների համար: Մարքսիզմին, սոցիալիզմին նա հարել է «կյանքի համալսարանն» ավարտելու շնորհիվ: Նա անցել է կյանքի դժվարին ուղի, զգացել սոցիալական ճնշումն ու շահագործումը և, ապա, տեսածի ու զգացածի մասին կարողացել ժամանակի հեղափոխական գրականության մեջ: Շնորհիվ այս ամենի, Ս. Էվոյանի համար ցարական ինքնակալության տապալումը և սոցիալիստական հասարակարգի ստեղծումը օրինաչափ երևույթ էր:

Տեսեք, թե Ս. Էվոյանն ինչպիսի իրական, կենդանի գույներով է նկարագրում գյուղացիության ծանր վիճակը, նրա շահագործումը 1905 թվականին և, միաժամանակ ցույց տալիս Հաղպատի, նրա շրջապատի գյուղերի քաղաքական մթնոլորտը: Բոլշևիկյան «Կայծ» թերթում Էվոյանը գրում է կալվածատիրոջ դեմ, ասելով. «Շարունակիր, պարոն Արամյան, բայց գիտցիր, որ այդ օրը, երբ ժողովուրդը պետք է դատի իր դահիճներին, սպասում է և քեզ... Պատրաստվիր քո ամեն մի կատարած գազանության համար առանձին հաշիվ տալ հենց այդ գյուղացիներին...»

Իրատեսության, քաղաքական երևույթներին ռեալ մոտեցման և հեղափոխական ֆրազի բացակայության ոգով են ներշնչված Սիմոն Էվոյանի թղթակցությունները՝ տպագրված բոլշևիկյան «Բանվորի կռիվ» թերթում, 1918 թվականին:

Բերենք մի օրինակ ևս. 1918 թվականի հունվարին Ալավերդու գործարանի փակման կապակցությամբ պատվիրակություն է գնում Թիֆլիս, ներկայանում Անդրկովկասի կառավարության անդամ մենշևիկ Գեգեչկորուն: Վերջինս ոչ միայն ձեռնունայն ետ է դարձնում պատվիրակությանը, այլև կոպիտ արարք է թույլ տալիս նրա նկատմամբ: Ռեալ գույներով ներկայացնելով այդ բոլորը՝ Սիմոն Էվոյանը գրում է. «Գործարանի ներկայացուցչությունն ու բանվորությունը բարի վերաբերմունք չտեսան այդ կառավարությունից, որն իրեն լրբաբար հեղափոխական է անվանում»: Ապա. «Գեգեչկորիների պատճառով ոչ միայն հազարավոր բանվորներ մնացին անօթևան և անգործ, այլ նաև տուժեց երկրի տնտեսական կյանքը»:

Մարքսիստ-լենինյանը միշտ էլ համակված է հեղափոխական լավատեսությամբ: Այդ լավատեսության հիմքը հասարակական զարգացման գիտական ընկալումն է, պատմական, մատերիալիստական ըմբռնումը:

1905—1906 թվականների ռուսական հեղափոխության տարիներին շատ կոփված բոլշևիկների հետ միասին Սիմոն Էվոյանն էլ պատվով դուրս եկավ այդ քննությունից և մնաց անդրդվելի, հետևողական լենինյան հեղափոխական: Այդ նույն հետևողական հեղափոխականությունը Սիմոն Էվոյանը դրսևորեց իր պրակտիկ գործունեության ընթացքում՝ սովետական շրջանում: Հենց դրանով է բացահայտվում այն հանգամանքը, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունն իր առաջին համագումարում Սիմոն Էվոյանին ընտրեց Կենտրոնական կոմիտեի անդամ, իսկ երկրորդ համագումարից սկսած ընդհուպ մինչև իր կենսաթոշակին անցնելը, գրեթե տասնհինգ տարի, նա ընտրվել է Հայաստանի կոմունիստական կուսակցության վերստուգիչ հանձնաժողովի անդամ:

Սիմոն Էվոյանի հոգեկան կերպարի մի այլ հմայիչ կողմը նրա ինտերնացիոնալիզմն է, ժողովուրդների համերաշխության, բարեկամության ջատագով լինելը: Իհարկե, նա սիրում էր իր ժողովրդին, ուներ ազգային արժանապատվության զգացում, որը նրա մոտ զուգորդվում էր ժողովուրդների բարեկամության և եղբայրության զգացումին: Եվ պատահական չէ, որ նրա մտերիմ և մարտական ընկերներն են եղել տարբեր ազգերի ներկայացուցիչներ՝ Ալի Թաղի-զադեն, Ցեռխարի Գարգալաշեր, Իլյա Խաչիեր, Լադո Սուխիշվիլին, Պանարոտ Ջավախաշվիլին և մյուսները:

Սիմոն Էվոյանի անմիջական ղեկավարներն ու ընկերներն էին՝ Ստեփան Շահումյանը, Մելիք Մելիքյանը, Սերգո Խանոյանը, Սարգիս Կասյանը, պրոլետարական բանաստեղծ Հակոբ Հակոբյանը, Ռուբեն Քաքանյանը, Աշխանազ Մռավյանը, Աստուր Կախոյանը և ուրիշներ:

***

Կոմունիստ Սիմոն Էվոյանի անսահման նըվիրվածությունը կուսակցությանը, սոցիալիստական հասարակարգի ստեղծման ու ամրապնդման գործին, միշտ դրսևորվել են նրա բազմամյա կուսակցական և հասարակական գործունեության մեջ: Նա պրոպագանդիստ էր ընդհատակյա պայմաններում: Ցարական ոստիկանությունը նրան ձերբակալում է, նետում Մետեխի ամրոցը, այնուհետև աքսորում: Բայց այս ամենը չի վհատեցնում և իր նվիրական գործից չի հեռացնում Սիմոն Էվոյանին: Ընդհատակի դժնդակ պայմաններում նա նոր ավյունով կրկին նետվում է հեղափոխական շարժման հորձանուտը, անձնվիրաբար կատարում կուսակցության հանձնարարությունները:

1919 թվականի գարնանը նա ակտիվ պայքարում է Հայաստանում սովետների իշխանության հաստատման համար: Իսկ 1920 թվականին Սիմոն Էվոյանին տեսնում ենք Լոռվա ապստամբությունների ակտիվ մասնակիցների և ղեկավարների շարքերում:

Կուսակցությունը ազնիվ լենինյան Սիմոն Էվոյանին վստահեց 1921 թ. կուսակցության շարքերի զտումն անցկացնել հանրապետության մի քանի շրջաններում:

Բացահայտելով Սիմոն Էվոյանի, որպես հեղափոխականի և որպես մարդու՝ հոգեկան կերպարը, որը դարձել էր մասսաների հարգանքի և սիրո առարկան, պետք է նշենք նաև նրա պատկանելիությունը բանվոր դասակարգին, պրոլետարիատին: Նա բանվոր էր:

Հայտնի է, որ ժամանակին մեր քաղաքական հակառակորդները զրպարտում էին մեր կուսակցությանը և «սրախոսում», թե Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունը դա կուսակցություն է առանց բանվորների, կուսակցություն սոսկ ինտելիգենտների: Վ. Ի. Լենինը մերկացրեց այդ զրպարտությունը, օրինակ բերելով բանվոր Իվան Վասիլևիչ Բաբուշկինին և ուրիշ շատ առաջավոր բանվորների, որոնց շնորհիվ էր ստեղծվել բանվորական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը, և որոնք անդուլ, հերոսական աշխատանք են կատարել աշխատավորական մասսաների շրջանում: Լենինն այդ առաջավոր բանվորներին որակեց որպես «ժողովրդական հերոսներ»: «Դրանք այն մարդիկ են,— նշում է Լենինը,— որոնք... իրենց ամբողջովին նվիրել են բանվոր դասակարգի ազատագրության համար մղվող պայքարին: Դրանք այն մարդիկ են, որոնք իրենց ուժերը չեն վատնել միայնակների անօգուտ տեռորիստական ձեռնարկումների վրա, այլ համառորեն, անշեղորեն գործել են պրոլետարական մասսաներում, օգնելով նրանց գիտակցության, նրանց կազմակերպության, նրանց հեղափոխական ինքնագործունեության զարգացմանը: Դրանք այն մարդիկ են, որոնք գլխավորեցին ցարական ինքնակալության դեմ մղվող մասսայական զինված պայքարը, և վրա հասավ եգնաժամը, և բռնկվեց հեղափոխությունը» (հ. 16, էջ 476):

Սիմոն Էվոյանը տեսավ իր գաղափարների իրականացումը: Սակայն նա աշխարհից հեռացավ 1943 թվականին՝ 67 տարեկան հասակում, երբ մեր սոցիալիստական հայրենիքի և ամբողջ մարդկության վրա դեռ կախված էր ֆաշիզմի վտանգը: Նա չտեսավ մեծ հաղթանակը: Նա չտեսավ հետպատերազմյան շրջանի մեծ կառուցումները, այդ թվում և իր հայրենիքի՝ գեղատեսիլ Լոռու և Ալավերդու վերակառուցումներն ու ծաղկումը:

Ամեն մի աճող սերունդ բարձրանում է պատմական թատերաբեմ, հենվելով հին հեղափոխական սերնդի ուսերի վրա՝ բազմապատկելով ժառանգած արժանիքները: Այդ արժանիքների թվին է պատկանում մեր ավագ սերնդի ներկայացուցիչների, այդ թվում և Սիմոն Էվոյանի բարոյա-քաղաքական կերպարը, որը հմայիչ և օրինակելի է նոր սերնդի համար:

ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Մ.

# Գիտությունը և կյանքը

ՍԱՐԳՍՅԱՆ Ս. Մ.

## ՄՈԼԵԿՈՒԼՅԱՐ ԿԵՆՍԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԿՅԱՆՔԻ ՊՐՈԲԼԵՄԸ

Կյանքի էության բացահայտումը և կենդանության հիմքում ընկած գործողությունների նուրբ օրինաչափությունների հայտնաբերումը հնարավորություն կընձեռեն նպատակասլաց ղեկավարելու գոյություն ունեցող կենսաձևերի զարգացումը և ստեղծելու մարդու ապրելակերպի գիտականորեն հիմնավորված ռեժիմ։ Այդ է պատճառը, որ դարեր շարունակ կյանքի պրոբլեմը գտնվել է գիտության ուշադրության կենտրոնում, և այն հարցը, թե ի՞նչ է կյանքը, մինչև օրս սպասում է պատասխանին։ Գիտության զարգացման արդի մակարդակի պայմաններում կյանքի բազմաթիվ բնորոշումներից ամենասկզբունքայինը էնգելսյանն է։ Մոտ 100 տարի սրանից առաջ, հենվելով օրգանական աշխարհի զարգացման բնագավառի և կենսաբանության զանազան ճյուղերի կուտակած փորձնական տվյալների վրա և ամփոփելով դրանք՝ Էնգելսը բնորոշել է կյանքը, իբրև «սպիտակուցային մարմինների գոյության եղանակ» (*Анти-Дюринг,* 1948, стр. 72)։ Ընդ որում, «սպիտակուցային մարմին» ասելով Էնգելսը նկատի է ունեցել ոչ թե սպիտակուցային միացությունները՝ ժամանակակից հասկացողությամբ, այլ կենդանի մարմիններ կազմող նյութը՝ պրոտոպլազման, որի միայն մի մասն է սպիտակուցը։

«Մեզ հայտնի ամենաստորին կենդանի էակները,— նշում է Ֆ. Էնգելսը,— իրենցից ներկայացնում են սպիտակուցի սովորական կընձիկներ» (*Анти-Дюринг,* 1948, стр. 77), կամ՝ «Բոլոր օրգանական մարմինները, բացառությամբ ամենաստորինների, կազմված են բջիջներից, փոքր... բջջակորիզ ունեցող սպիտակուցային կնձիկներից»[1] (*Диалектика природы,* 1932, стр. 53)։

Էնգելսը գտնում է, որ «սպիտակուցային մարմին» անվանումն անհաջող է, քանի որ սովորական սպիտակուցն իրեն ազգակից նյութերի թվում հանդես է գալիս ամենանվազագույն կենդանությամբ[2]։ (*Анти-Дюринг,* 1948, стр, 77)։ Այստեղ կարևոր է նշել նաև, որ «սպիտակուցային մարմին» ասելով Էնգելսը նկատի է ունեցել նաև բջջակորիզը, որի գոյացումը նա դիտում է իբրև պրոտոպլազմայի («սպիտակուցային մարմնի») բեկոացման արդյունք (*Диалектика природы,* 1932, стр. 35)։

---

[1] Ֆ. Էնգելսի Անտի-Դյուրինգ աշխատությունը հայերեն թարգմանելիս հեղինակի այդ մտքի շարադրանքում թույլ է տրվել սխալ՝ «комочки» բառը թարգմանված է գնդիկներ՝ կնձիկներ բառի փոխարեն. այդպիսով աղավաղվել է հեղինակի արտահայտության կենսաբանական իմաստի ճշտությունը։

[2] Մինչև այժմ, հաճախ նույնիսկ դասագրքերում, էնգելսյան «սպիտակուցային մարմին» անվանումը մեկնաբանում են որպես «սպիտակուցային միացություն», աղավաղելով այդ բառի բուն իմաստը (Ա. Դ. Բրաուն և ուրիշներ, Ընդհանուր կենսաբանություն, Երևան, 1967 թ., А. А. Феодоров—*Нукленновые кислоты и рак,* Москва, 1966, Троцин А. М.—Жизнь, журнал «Природа», № 10, 1964, Кедров Б, М.—*Взаимодействие наук и некоторые философские вопросы биологии* в сб. Актуальные вопросы современной генетики, 1966 г.)։



XIX դարի վերջին տասնամյակում և մեր դարի առաջին կեսում գիտության բազմաթիվ ճյուղերի ու տեխնիկայի արագ զարգացումը բարենպաստ պայմաններ ստեղծեցին կենդանի մարմինների ու, մասնավորապես, բջջի կառուցվածքի և ֆիզիկո-քիմիական կազմության բազմակողմանի, մանրակրկիտ ուսումնասիրության համար։ Լուսային մանրադիտակի կատարելագործումը, այնուհետև առավել հզոր՝ բևեռացուցիչ, ուլտրամանուշակագույն և էլեկտրոնային միկրոսկոպի հայտնագործումը հնարավորություն ընձեռեցին՝ բացահայտելու բջջի ու բջջակորիզի նուրբ կառուցվածքը և դրանց գոյացումների դերը կյանքի էության բացահայտման գործում։ Այս ասպարեզում առավել մեծ ու նույնիսկ պատմական նշանակություն ունեցավ բջջակորիզում քրոմոսոմների ու դրանց վարմունքի հայտնաբերումը, բջիջների կիսվելու (բջիջների բազմացման) ու սեռական բջիջների գոյացման պրոցեսում։ Քրոմոսոմների ձևի, թվի ու զանգվածի կայուն պահպանումը և, վերջապես, այդ գոյացումների տեսակային սպեցիֆիզմը հիմք հանդիսացան մտածելու, որ կապ կա բջջակորիզի, քրոմոսոմային գոյացումների և կյանքի հարաբերական անընդհատության միջև։

Մեր դարի առաջին կիսամյակում հայտնաբերվեց, որ սեռական բջիջների գոյացման պրոցեսում (մեյոզում) կապ կա քրոմոսոմների վարմունքի և այդ ժամանակաշրջանում հայտնաբերված ժառանգման մենդելյան օրինաչափությունների միջև։ Այդ բնագավառի նվաճումների հիման վրա սահմանվեց կյանքի էական կողմը՝ ժառանգականության քրոմոսոմային տեսությունը, որը ո՛չ միայն մատերիալիստական հիմքերի վրա դրեց ուսմունքը ժառանգականության մասին—գենետիկան, այլև գիտության ուշադրությունը կենտրոնացրեց քրոմոսոմների՝ իբրև կենսական կարևորություն ունեցող գոյացումների, բազմակողմանի ուսումնասիրության վրա։ Ուշագրավ էր այն հայտնագործությունը, որ քրոմոսոմների բաղադրության մեջ մտնող հիմնական միացությունները կենդանի նյութին բնորոշ՝ նուկլեինաթթուների ու սպիտակուցների կոմպլեքսային միացություններ են, սակայն դեռևս անհայտ է, թե ինչ դեր է խաղում այդ միացություններից յուրաքանչյուրը կամ դրանց կոմպլեքսը կյանքի, ժառանգականության ու ժառանգման երևույթներում։ Միայն վերջին երկու-երեք տասնամյակում ստույգ տեղեկություններ ստացվեցին, որ օրգանիզմների որոշ տեսակների մոտ մի այլատեսակության անհատներից արտազատված քիմիական կոմպոնենտ նուկլեինաթթուն տեղափոխվելով (կլանվելով) մի ուրիշ այլատեսակության անհատի կողմից՝ հանգեցնում է համապատասխան ժառանգականության փոխանցմանը վերջինիս։

Այսպիսով, փորձնական ճանապարհով անվերապահ ապացուցվեց նուկլեինաթթվային մոլեկուլի գենետիկական ակտիվությունը, այսինքն՝ որ նուկլեինաթթուն օժտված է ժառանգականություն փոխանցելու ունակությամբ։ Այդ հայտնագործությունը դարձավ կենսաբանության մի նոր ճյուղի՝ մոլեկուլային կենսաբանության ստեղծման հիմնաքարը։ Դրա կարևորությունը բացահայտելու համար պարզաբանենք, թե ինչ դեր է խաղում ժառանգականությունը կյանքում։ Խոսելով նյութի գոյության կենդանի եղանակի մասին, Ֆ. Էնգելսը նշել է, որ գոյության այդ եղանակն ըստ էության մարմինների քիմիական բաղկացուցիչ մասերի մշտապես ինքնավերանորումն է[1] (*Анти-Дюринг,* 1948, стр. 77)։ Իսկ մի այլ տեղ, անդրադառնալով այդ հարցին, այսինքն՝ կյանքի բնորոշ կողմին, նա գրում է. «Ամեն մի կենդանի էակ յուրաքանչյուր տվյալ ակնթարթում մնում է նույնը և միևնույն ժամանակ՝ ոչ-նույնը։ Ամեն մի ակնթարթում նա վերամշակում է արտաքինից ընդունված նյութը և իրենից արտազատում այլ նյութ, նրա օրգանիզմի որոշ բջիջներ անկենդանանում են, ուրիշները ծնունդ առնում, այնպես որ որոշակի ժամանակամիջոցից հետո տվյալ օրգանիզմի նյութը լրիվ վերանորվում է»։ (*Развитие социализма от утопии к науке,* 1932, стр. 41)։

Վերոհիշյալ մեջբերումներից պարզվում է, որ Ֆ. Էնգելսը կյանքի էական կողմը համարում է ինքնավերանորումը, ընդ որում, ինքնավերանորումը լայն իմաստով՝ թե՛ քիմիական բաղկացուցիչ մասերի և թե (որը կարևոր է կյանքի պահպանման համար) կառուցվածքային միավորների՝ բջիջների վերանորման իմաստով։ Ուստի և էնգելսյան «ինքնավերանորման» հասկացողությունը կարելի է համանիշ համարել ժամանակակից «ինքնավերարտադրման» հասկացողությանը, քանի որ ինքնավերարտադրությունը կամ բազմացումը հանգում են կենդանի մարմնի ինքնավերանորմանը, նրա գոյության մոլեկուլային, բջջային և թե օրգանիզմային մակարդակներում։

Բոլոր կենդանի մարմինները, թե՛ պարզագույն միաբջիջ էակները և թե բարձրակարգ

---

[1] Էնգելսի Անտի-Դյուրինգ աշխատության հայերեն թարգմանության մեջ (Երևան, 1967 թ., էջ 106) հեղինակի այդ միտքը ճիշտ չի թարգմանված։ Էնգելսի «семообновление» արտահայտությունը ռուսերենից թարգմանված է՝ «ինքնավերականգնում»՝ ինքնավերանորում բառի փոխարեն։ Այդ բառերը կենսաբանորեն այլ իմաստ ունեն և չեն կարող փոխարինել միմյանց։

օրգանիզմները, ինքնավերարտադրման պրոցեսում ստեղծում են իրենց նմանը, այսինքն՝ ամենուրեք նորաստեղծն օժտված է ստեղծողի հատկանիշներով։ Միաժամանակ, իր նմանի ստեղծումը պայմանավորված է կենդանի մարմնի ժառանգականության հատկությամբ։ Հետևապես, կյանքի երևույթի էությունը կազմող ինքնավերարտադրման հիմքում ընկած է ժառանգականությունը։ Ահա թե ինչու ժառանգականության նյութական կրողի՝ նուկլեինաթթվային մոլեկուլի հայտնաբերումը վճռական նշանակություն ունեցավ կյանքի էական կողմերի բացահայտման համար։

Մոլեկուլային կենսաբանության կողմից ինքնավերանորման կամ ինքնավերարտադրության մոլեկուլային հիմունքների բացահայտումը խորացրեց ու փորձնականորեն հիմնավորվեց կյանքի էության էնգելսյան բնորոշումը։

Այդ ամենի հետ մեկտեղ պարզվեց, որ կենդանության բնորոշ բոլոր երևույթները, ինչպես և նուկլեինաթթուների սինթեզն ու ինքնավերարտադրումը կենդանի մարմնում տեղի են ունենում միայն սպիտակուցային մոլեկուլի անմիջական մասնակցությամբ։ Սպիտակուցները, որ կազմում են կենդանի մարմնի չոր նյութի մոտ 80 տոկոսը, նույնպես հետերոպոլիմերային միացություններ են և կենդանի նյութի գոյության պրոցեսում դրսևորվում են մի շարք ֆունկցիաներով։

Սպիտակուցն ապահովում է կենդանի մարմնի շարժունակություն (կծկողական ֆունկցիա) և կառուցվածքային (հենարանային) առանձնահատկությունները, նա սննդանյութ է մատակարարում կենդանի մարմնի մասնիկներին (փոխադրական), օրգանիզմը պաշտպանում վնասակար տարրերից (պաշտպանողական) և, վերջապես, որը շատ կարևոր է, ապահովում է կենդանի մարմնում տեղի ունեցող բոլոր կենսապրոցեսների ընթացքն ու ուղղությունը (էնզիմատիկ). Նշված ֆունկցիաների բազմազանությունից ու բարդությունից ակներև է, թե որքան սպեցիֆիկ պետք է լինեն սպիտակուցների մոլեկուլները, ապահովելու համար տարբեր բնույթի կենսապրոցեսների ընթացքն ու ուղղությունը։ Եվ, իրոք, ոչ լրիվ տեղեկություններով մարդու օրգանիզմում որպես ֆերմենտներ հայտնաբերված են 1000-ից ավելի տարբեր սպիտակուցներ։

Եթե օրգանիզմին բնորոշ ժառանգականության ծրագրակիրները նուկլեինաթթուներն են, իսկ դրանց դրսևորման, գործողությունների անփոխարինելի մասնակիցները՝ սպիտակուցները, պետք է, ուրեմն, որոշակի կապ լինի այդ երկու՝ կենդանի նյութին բնորոշ կենսապոլիմերների միջև։

Այդպիսի կապի առկայությունն էին վկայում դեռևս շատ ավելի վաղ հայտնաբերված այն փաստերը, որ օրգանիզմների զարգացման պրոցեսում ժառանգական նախադրյալների՝ գեների ազդեցությունն իրականանում է սպեցիֆիկ ֆերմենտների միջոցով։ Ու, քանի որ բոլոր ֆերմենտներն սպիտակուցներ են, ուստի, լիովին ապացուցված էր այդ տվյալների հիման վրա սահմանված «մեկ գենը. մեկ ֆերմենտ» դրույթը, որը նշանակում է՝ ամեն մի գեն, այսինքն՝ ամեն մի ժառանգական նախադրյալ կենդանի մարմնի զարգացման պրոցեսում իր ազդեցությունն իրականացնում է մեկ սպեցիֆիկ սպիտակուց ֆերմենտի միջոցով։ Այդ կարևոր կենսաբանա-քիմիական դրույթի համոզիչ ապացույցն էր կենդանի մարմնում (բջջում) սպիտակուցների կենսասինթեզի և նուկլեինաթթվի մոլեկուլային կառուցվածքի միջև կապի հայտնաբերումը, որը հանդիսացավ մոլեկուլային կենսաբանության հաջորդ կարևոր նվաճումը։

Պարզվել է, որ նուկլեինաթթվի և, մասնավորապես, դեզօքսիռիբոնուկլեինաթթվի (ԴՆԹ) մոլեկուլի պոլիմերային կառուցվածքում կարգագրված է սպիտակուցային մոլեկուլում ամինոթթուների տեղադրման ծրագիր, այնպես, ինչպես մագնիտոֆոնի ժապավենի վրա «ձայնագրված են» որոշակի մեղեդի կազմող հնչյունները։ Կենդանի բջջում ընթացող կենսասինթեզի ժամանակ կորիզում եղած ժառանգականության նախադրյալները, որոնք իրենցից ներկայացնում են ԴՆԹ-ի մոլեկուլի որոշակի հատվածները, հսկում են սպիտակուցի մոլեկուլում ամինոթթուների ճիշտ տեղադրմանը, դրանով իսկ ապահովելով նրանց սպեցիֆիկ բազմազանությունը։

Պարզվել է, որ ռիբոսոմների և կորիզային ՌՆԹ-ի կոմպլեքսը այն գոյացումն է, որտեղ տեղի է ունենում սպիտակուցի կենսասինթեզը։ Ընդ որում, սինթեզման ծրագիրը (ամինոթթուների ճիշտ տեղադրումը) ապահովում է կորիզային (քրոմոսոմային) ՌՆԹ-ն, որի համար այն կոչվում է հաղորդագրական ռիբոնուկլեինաթթու (ՀՌՆԹ)։ Նկատի ունենալով, որ նրա միջոցով սպիտակուցի կենսասինթեզի կարգադրությունը կորիզային ԴՆԹ-ից հաղորդվում է ցիտոպլազմայում եղած կենսասինթեզի «խոհանոցին»՝ ռիբոսոմներին։ Սպիտակուցների կազմության մեջ մտնող բոլոր՝ միմյանցից տարբեր 20 ամինոթթուներն ունեն իրենց հատուկ ՓՌՆԹ-ն, որն ընդունակ է փոխադրելու միայն իրեն։

ՓՌՆԹ-ները բեռնավորված իրենց ամինոթթուներով մոտենում են ռիբոսոմների ու ՀՌՆԹ-ի կոմպլեքսին (պոլիսոմին) ու, «ճանաչելով» իրենց տեղը, ՀՌՆԹ-ի մոլեկուլի «եռյակների» միջոցով սպիտակուցի մոլեկուլում ճիշտ տեղադրում են իրենց ամինոթթուն։



Ռիբոսոմները, հավանաբար, այն դերն ունեն, որ ֆերմենտների օգնությամբ «ծանոթացնում են» ՓՌՆԹ-ներին ՀՌՆԹ-ի հետ, որը և շատ կարևոր է, քիմիական կապ ստեղծում իրար հետևից որոշակի հաջորդականությամբ տեղադրվող ամինոթթուների միջև։

Ինչպես նկատեցինք, սպիտակուցի կենսասինթեզի գործողության ժամանակ, ամինոթթուների որոշակի հերթականությունն ապահովվում էր ՀՌՆԹ-ի մոլեկուլի կառուցվածքում եղած կարգադրությամբ։

Հետաքրքրական է, որ սինթեզի՝ միայն կենդանի նյութին բնորոշ այս եղանակն անհամեմատ ավելի ռացիոնալ է ու արդյունավետ, քան ներկայիս լաբորատորիաներում մշակված որևէ այլ եղանակ։ Բավական է նշել, որ սպիտակուցային կառուցվածք ունեցող ինսուլին հորմոնի մոլեկուլը լաբորատոր մեթոդով սինթեզելու համար աշխատել են 10 մարդ և այդ աշխատանքն ավարտվել է 3 տարում։ Մինչդեռ բջջում դրոշմասինթեզի եղանակով ինսուլինը սինթեզվում է 2—3 վայրկյանում։

Կյանքին բնորոշ բոլոր գործողությունները, բոլոր տեսակի նուկլեինաթթուների սինթեզը, սպիտակուցի սինթեզի փուլերը (ամինոթթուների տեղափոխությունը, դրանց միացումը միմյանց և այլն) և առհասարակ, բջջում, հետևապես, կենդանի մարմնում տեղի ունեցող բոլոր գործողությունների ընթացքն ու ուղղությունն ապահովում են սպեցիֆիկ ֆերմենտ-սպիտակուցները։

Վերջին հաշվով, ի հայտ է գալիս երկու կենսապոլիմերների՝ նուկլեինաթթուների ու սպիտակուցների փոխադարձ կապի ու ներգործության մի փակ ու խիստ կարգագրված սիստեմ, որով պայմանավորված է կյանքի գոյությունը։ Ուստի և անհիմն է թվում այն հարցադրումը, թե քիմիական ո՞ր միացություններին (նյութերին) պետք է վերագրել կյանքը մեր մոլորակում— նուկլեինաթթուների՞ն, սպիտակուցների՞ն, նրանց կոմպլեքսային գոյությա՞նը, թե՞ մի այլ կոմպլեքսի։

Անշուշտ չի բացառվում կյանքի էնգելսյան բնորոշման վերանայման հնարավորությունը՝ նրա խորացման, զարգացման կամ նույնիսկ հերքման իմաստով, եթե դրանք հիմնավորված են գիտության ստույգ տվյալներով։ Ուսումնասիրությունները տվյալ դեպքում ցույց են տալիս, որ նշված երկու կենսապոլիմերների՝ նուկլեինաթթուների և սպիտակուցների կոմպլեքսային գոյությունն օժտված է կենսածին ունակությամբ, սակայն կյանքի կենդանության դրսևորման համար պահանջվում է նաև ներքին «միջավայրի» այլ պայմանների առկայություն։ Մինչդեռ այդ միջավայրն ստեղծում են հենց այն բաղադրյալները, որոնց միասնությունը կենսապոլիմերների հետ էնգելսն անվանում էր «սպիտակուցային մարմիններ» կամ պրոտոպլազմա։

Շարադրվածի հիման վրա կարելի է գալ այն եզրակացության, որ վերջին հարյուրամյակում կուտակված գիտական տվյալները խորացնում ու հաստատում են կյանքի էնգելսյան բնորոշման սկզբունքային կողմը։ Կյանքը նյութի գոյության եղանակն է, որին բնորոշ է ինքնավերանորումը (ինքնավերարտադրումը) կառուցվածքային բոլոր մակարդակներում։ Կենդանի նյութի կազմության ճանաչման ասպարեզում ձեռք բերված նվաճումներից պարզվեց էնգելսյան «սպիտակուցային մարմին» անվանվող նյութի բաղադրությունը։ Կենդանի նյութը կազմված է կենսածին պոլիմերներից՝ նուկլեինաթթուներից ու սպիտակուցներից և կենդանության դրսևորման համար անհրաժեշտ քիմիական այլ բաղադրիչներից։

Այն փաստի գիտակցումը, թե կյանքի հիմքում ընկած է ժառանգականությունը, որը պայմանավորված է նուկլեինաթթվային մոլեկուլի կառուցվածքով ու ինքնավերարտադրման ունակությամբ և, վերջապես, որ ժառանգականությունն իրականանում է սպիտակուցների մոլեկուլային սպեցիֆիկության հսկողությամբ, թելադրում է արմատապես նոր մոտեցում՝ կյանքի երևույթները բացատրելիս և դրանց կառավարման մեթոդները մշակելիս։

Կարճ ժամանակամիջոցում մոլեկուլային կենսաբանության մեթոդներն ու հայտնագործությունները լայն ճանաչում գտան կիրառական գիտությունների՝ բժշկության և գյուղատնտեսության մեջ։ Մոլեկուլային կենսաբանության նվաճումների լույսի տակ հետազոտելով մարդու օրգանիզմում երևան եկող հիվանդագին երևույթները, արդեն հայտնաբերվել և արագ տեմպերով շարունակում են հայտնաբերվել հարյուրավոր նոր փաստեր, որոնք վկայում են, թե բազմաթիվ հիվանդությունների հիմքում ընկած են ժառանգականության հաղորդագրությունը կրող նյութի՝ նուկլեինաթթուների մոլեկուլային խախտումները և, այդ պատճառով, առողջ կենսակերպի դրսևորման համար անհրաժեշտ սպիտակուցների մոլեկուլային ու ֆունկցիոնալ խախտումները։

Ահա մի օրինակ, որը ցույց կտա, թե ինչպիսի հետևանք կարող են ունենալ սպիտակուցների մոլեկուլում եղած հարյուրավոր ամինոթթուներից թեկուզ և մեկի «սխալ» տեղադրումը։

Աֆրիկյան ժողովուրդների մոտ միլիոնավոր դեպքեր են արձանագրված մարդկանց արյան մեջ մանգաղանման էրիտրոցիտների (կարմիր գնդիկների) հայտնաբերման մասին։ Պարզվել է, որ այդպիսի էրիտրոցիտներ ունեցող անձինք

տառապում են թթվածնաքաղցով, որի համար հիվանդությունն անվանվեց մանգաղանման բջջային անեմիա։

Տոհմագրական հետազոտությունները պարզել են, որ նշված հիվանդությունը ժառանգվում է ծնողներից և հետևանք է այն բանի, որ մանգաղանման էրիտրոցիտներում եղած հեմոգլոբին սպիտակուցը բավարար չափով չի կատարում օդից թթվածին կլանելու, այն օրգանիզմի հյուսվածքներին մատակարարելու իր ֆունկցիան։ Պարզվել է նաև, որ այդ հիվանդությամբ տառապող անձանց ամուսնությունից ծնվող երեխաների մի մասը (մոտ $^{1}/_{4}$-ը) մահանում է սուր արտահայտված թթվածնաքաղցից։ Վերջապես, մանրակրկիտ ուսումնասիրություններից պարզվել է, որ հիվանդության անմիջական պատճառը հեմոգլոբին սպիտակուցի մոլեկուլում եղած 600 ամինոթթուներից միայն մեկ ամինոթթվի «սխալ» տեղադրումն է։ Մինչև անգամ հաջողվել է հայտնաբերել այն «սխալը», որի արդյունքն է այդ ողբերգական երևույթը։ Առողջ (A) և հիվանդ (S) հեմոգլոբինները, ինչպես այդ երևում է նրանց մոլեկուլային հատվածներից մեկի ամինոթթվային կազմից, միմյանցից տարբերվում են նրանով, որ նորմալ մոլեկուլում առկա գլուտամինոթթու ամինոթթվի փոխարեն «հիվանդ» հեմոգլոբինի այդ կետում «սխալմամբ» տեղադրված է վալին ամինոթթուն. այսպես՝

Հեմոգլոբին A Հիս-Վալ-Լեյ-Լեյ-Տրե-Պրո-Գլու-Գլու-Լիզ

Հեմոգլոբին S Հիս-Վալ-Լեյ-Լեյ-Տրե-Պրո-Վալ-Գլու-Լիզ

Մինչդեռ հեմոգլոբինի սպիտակուցային մոլեկուլի այս չնչին թվացող խախտումը զրկել է նրան բնորոշ կոնֆորմացիայի (տարածական ձևադասավորման) ունակությունից, որով պայմանավորված է մոլեկուլի «ներշնչման» ու «արտաշնչման» ֆունկցիան։

Ներկայումս հայտնաբերված են բազմաթիվ հիվանդություններ, որոնց պատճառը ամինոթթուների «սխալ» տեղադրումն է այս կամ այն կենսապրոցեսին մասնակցող սպիտակուցային մոլեկուլում։ Այդպիսի մոլեկուլային հիվանդությունները ժառանգական են, փոխանցվում են սերնդից-սերունդ, քանի որ դրանց դրսևորման պատճառը ժառանգական նյութի՝ ԴՆԹ-ի մոլեկուլային փոփոխություններն են. մոլեկուլ, որն իր նմանի վերանորման ունակության շնորհիվ սերնդից-սերունդ կատարում է ո՛չ միայն ժառանգական ճիշտ հաղորդատվություն, այլև արտաքին ու ներքին պատճառներով փոխանցում տեղի ունեցած մոլեկուլային սխալները։ Այդ հիվանդությունների մոլեկուլային ծագման հայտնաբերմամբ հնարավոր է դարձել մշակել պրոֆիլակտիկ միջոցառումներ, կանխելու համար դրանց տկարաբերությունը կամ մահաբերությունը։ Ներկայումս գիտնականներին անսահման մտահոգում է այդ խնդիրը, և նրանք ուսումնասիրում, որոնում են նուկլեինաթթվային մոլեկուլում տեղի ունեցող «սխալների» շտկման մեթոդներ։

Եթե նուկլեինաթթվային մոլեկուլում տեղի ունեցող «սխալները» և դրանց հետևանքով սպիտակուցի մոլեկուլային «սխալները» մարդու մոտ, իբրև կանոն, հանգեցնում են հիվանդագին հետևանքի, ապա գյուղատնտեսության (անասնապահության, բուսաբուծության) և արդյունաբերական միկրոբիոլոգիայի համար ժառանգականության փոփոխություններն օգտագործվում են նոր, արժեքավոր ձևեր ստանալու, դրանք սելեկցիոն նպատակներով օգտագործելու համար։ Քիմիական կամ ֆիզիկական գործոնների ազդեցությամբ նուկլեինաթթվի՝ ԴՆԹ-ի մոլեկուլային կառուցվածքը ենթարկվում է զանազան փոփոխությունների, որոնք, չնայած շատ ավելի հաճախ բացասական ազդեցություն են թողնում օրգանիզմի ու նրա սերնդի վրա, սակայն այդպիսի փոփոխությունների մեջ հաջողվում է բացահայտել նաև օգտակար ձևեր, և օգտագործել դրանք բարձրարժեք սորտեր ու ռասաներ ստեղծելու համար։

Մոլեկուլային կենսաբանությունը, մանավանդ նրա ճյուղերից մեկը՝ ռադիացիոն գենետիկան, ներկայումս որոնում է ժառանգականությունը փոփոխող քիմիական ու ֆիզիկական այնպիսի գործոններ (մուտագեններ), որոնց ազդեցությամբ հնարավոր լիներ առաջացնել ցանկացած ժառանգական փոփոխություններ (մուտացիաներ)։

Մոլեկուլային կենսաբանության նվաճումները կենդանի նյութի ճանաչման բնագավառում հնարավորություն ընձեռեցին ո՛չ միայն բացատրելու կենդանաբանության մինչ այդ գաղտնի բազում երևույթներ, այլև համարձակ փորձեր կատարելու արհեստական կյանքի ստեղծման բնագավառում։

Ավելի քան տասը տարի առաջ հաջողվել է լաբորատոր պայմաններում անօրգանական նյութերից սինթեզել նուկլեինաթթվային մոլեկուլի բաղկացուցիչ նուկլեոտիդների և նույնիսկ ԴՆԹ-ի և ՌՆԹ-ի պոլիմերներ, որոնց հսկողության տակ որոշակի միջավայրում սինթեզվեցին նաև սպիտակուցային մոլեկուլներ։ Սակայն նուկլեինաթթվային և սպիտակուցային այդ մոլեկուլներն ունակ չէին ինքնավերարտադրման, քանի որ չունեին նշված կենսապոլիմերների այն կոմպլեքսը, որի առկայությունն անհրաժեշտ է կենդանի մարմնում տեղի ունեցող բազմաթիվ կենսագործունեություններն ապահովելու համար։

Միայն մի քանի ամիս սրանից առաջ, ամսագրերի ու լրագրերի էջերում հրապարակվեց բիոքիմիկոսներ Արթուր Կոռնբերգի և Միհրան Գուլիյանի հրաշալի հայտնագործությունը։ Գիտնականները լաբորատոր պայմաններում սինթեզված նուկլեոտիդներ պարունակող միջավայրին ավելացրել են բնական ԴՆԹ-ի «մերան» (դրոշմ մոլեկուլը), որը դրոշմասինթեզի ճանապարհով ծնունդ է տվել մի արհեստական ԴՆԹ-ի մոլեկուլի։ Հետագա փորձարկումները ցույց են տվել, որ «արհեստականորեն» սինթեզված ԴՆԹ-ի մոլեկուլն ընդունակ է ինքնավերարտադրվելու այնպես, ինչպես մինչ այդ բնական վիրուսային մասնիկներից ստացված «մերան» ԴՆԹ-ն էր ինքնավերարտադրվում։ Ըստ էության մարդու կամքով սինթեզված է առաջին կենսածին քիմիական միացությունը։

Իրականանում է Ֆ. Էնգելսի գիտական երազանքը. «Եթե երբևէ հաջողվի քիմիական եղանակով կազմել սպիտակուցային մարմիններ, ապա նրանք անշուշտ կհայտնաբերեն կյանքի երևույթ» (Диалектика природы, 1932, стр. 25—29)։

Էնգելսը համոզված էր, որ այն, ինչ տեղի է ունեցել բնական ճանապարհով — անօրգանական բաղադրիչներից քիմիական եղանակով սինթեզվել է պրոտոպլազման, կարող է տեղի ունենալ նաև արհեստական պայմաններում, մարդու ձեռքով։ Զարմանալին այն է, որ հաշվի առնելով կենդանի նյութի սինթեզի ասպարեզում անցյալի անհաջող փորձերը և այդ նյութի քիմիական կազմության մասին անհրաժեշտ տեղեկությունների ստացման դժվարությունները, անցյալ դարի 60—70-ական թվականներին Ֆ. Էնգելսը կանխատեսել է, որ այդ հետամնացությունը կպահպանվի, հավանաբար, մոտակա հարյուր տարիներում ևս։ Եվ ահա, ճիշտ հարյուր տարի է անցել այդ պահից, և կենդանի նյութի կառուցվածքի խոր ճանաչումից հետո հնարավոր դարձավ առաջին քայլերն անել կենդանի նյութի արհեստական սինթեզման ու արհեստական կյանքի ստեղծման բնագավառում։

Ժամանակակից մոլեկուլային կենսաբանությունը լայն հետազոտություններ է ծավալել կյանքի պրոբլեմի բազմակողմանի ճանաչման ասպարեզում։ Օրակարգում է օրգանիզմի զարգացման պրոցեսում տեղի ունեցող դիֆերենցման գաղտնիքը, որի հաղթահարումը բացի բազմաթիվ արժեքավոր կիրառումներից լուրջ քայլ կհանդիսանա մարդու ակտիվ երկարակեցության գիտականորեն հիմնավորված ուղիների ստեղծման, ինչպես և ժամանակակից մարդկության կյանքի չարիքի՝ չարորակ ուռուցքների առաջացման, մոլեկուլային և օրգանիզմի ու բջիջների այլ այլասերությունների (ծերացման) պատճառների հայտնաբերման ճանապարհին։ Մոլեկուլային կենսաբանության հետագա նվաճումները կհանգեցնեն կենդանի նյութի հիմքում ընկած երևույթների այնպիսի խոր ճանաչման, որ հնարավոր կդառնա հայտնաբերված օրինաչափությունների օգտագործմամբ արհեստական պայմաններում ստանալ կենդանի նյութ ու ծառայեցնել այն մարդու պահանջմունքներին։

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՄԱՏԸ ՎԵՐՔԻՆ Է ԴՐՎԱԾ

Վերջերս հրապարակի վրա դրվեց արևմտահայության եղեռնի ողբերգական հետևանքները վերագնահատող մի աշխատություն ևս[1], ուր ի մի են հավաքվել մեծ թվով ուշագրավ և անհերքելի փաստեր ու հուշեր, որոնք, անշուշտ, նոր լույս են սփռում դաշնակցության վարած խոցելի քաղաքական կուրսի վրա։

Հանրահայտ է, որ մեր ժողովրդի այդ օրհասական պահին, ինչպես սպասվում էր, լուրջ փորձեր չարվեցին քիչ թե շատ կազմակերպված դիմադրավելու աղետաբեր հարվածին։ Ճիշտ է, որ Շապին-Գարահիսարում, Ուրֆայում և այլուր՝ հուսակտուր ինքնապաշտպանության հերոսական ճիգեր գործադրվեցին, սակայն միայն Վանում և Մուսա լեռան վրա հայերին հաջողվեց փրկվել ստույգ մահից։ Քաջակորով մշեցին ու սասունցին չկարողացան հաջող ինքնապաշտպանություն կազմակերպել և, ինչպես Հարազատ պատմություն Տարոնի գրքի առաջաբանում ասում է Աղան Տարոնեցին, «ամենքն ալ ջարդվեցան ոչխարի պես» (էջ 2)։

Վանն ինքնապաշտպանվեց մոտ մեկ ամիս, Շատախն ու Մուսա լեռը՝ ավելի քան քառասուն օր, սակայն հոծ հայ բնակչություն ունեցող Մշո դաշտն ու Սասունը մեկ օր էլ չկարողացան ինքնապաշտպանվել։ Այս դառն իրողությունը Աղան Տարոնեցուն հարկադրել է տալ Տարոնի եղեռնի պատասխանատուների անունները և հուշագրողների վկայությունների համադրությամբ, քննական ուսումնասիրությամբ ապացուցել, որ Տարոնի, Մշո դաշտի, (Մշո և Սասունի) ինքնապաշտպանությունը հաջող չկազմակերպելու պատասխանատվությունը ծանրանում է միայն և միայն դաշնակցության վրա։ Ինքնապաշտպանվելու տեսակետից գտնվելով Վանից շատ ավելի նպաստավոր դրության մեջ, Տարոնը հեշտությամբ սպանդանոց դարձավ սոսկ այն պատճառով, որ այնտեղ մենատիրում էր պոռոտախոսության մեջ մեծ, գործում անկարող դաշնակցական կազմակերպությունը։

Սա այնպիսի և այնքա՜ն դառն ճշմարտություն է, որ երբ վերքը դեռ շատ էր թարմ, երբ դեռ չէր ծնվել եղեռնը չապրած և եղեռնի մանրամասնություններին անիրազեկ նոր սերունդ, երբ որբանոցներում, գաղթի ու պանդխտության երկար ու ձիգ ճանապարհներին սահմռկել էին եղեռնից հրաշքով ազատվածները՝ դաշնակցության դավաճանական անճարակության կենդանի վկաները, դաշնակցության առանձին գործիչներ հարկադրաբար խոստովանում էին իրենց կուսակցության մեղավորությունը։ Նախքան այդ խոստովա-

1 Աղան Տարոնեցի, Պատասխանատուները Տարոնի եղեռնի, Սան-Ֆրանցիսկո, 1966, 530 էջ։



նություններին անցնելը բացատրենք, թե ինչու Տարոնի վիճակն ինքնապաշտպանության տեսակետից ավելի բարենպաստ էր, քան Վանինը։

1913 թվականին, երբ պետական իշխանությունը վերստին զավթեցին երիտթուրքերը, և բացահայտ դարձավ սպասվող ու նախապատրաստվող մեծ պատերազմում Թուրքիայի անցումը գերմանական զինակցության կողմը, Անտանտի պետությունները ի հակակշիռ գերմանական գերուժության, պրովոկացիոն նկատառումներով նորից հրապարակ հանեցին հայկական բարենորոգումների հարցը։ Թուրքերն այդ ժամանակ զբաղված էին Բալկանյան երկրորդ պատերազմով։ Նրանք նպատակահարմար գտան քրդական ապստամբություն հրահրելով ցույց տալ, որ հայկական բարենորոգումների ընդգրկած տերիտորիայում ապրում են մեծ թվով մուսուլման քրդեր, որոնք ռազմական տեսակետից շատ ավելի զորեղ են հայերից։ 1913 թ. վերջերից մինչև 1914 թ. մայիս ամիսը Սայիդ Ալիի և Շահեբեդդինի գլխավորությամբ քրդական մեծ ապստամբություն ծավալվեց Բիթլիսի վիլայեթում (որի մեջ մտնում էին Մուշն ու Սասունը)։ Ապստամբության ղեկավարները կարողացան ազգային-ազատագրական բնույթ տալ այդ շարժմանը և հայից խլված մեկ հավը մեկ ոչխարով հատուցելու կոչով ապահովել հայ-քրդական բարեկամություն շարժման ամբողջ ընթացքում։ Նրանց հաջողվեց գրավել վիլայեթի մայրաքաղաք Բիթլիսը։

Դաշնակցության տեղական կազմակերպության, այսպես կոչված, Դուրան-բարձրավանդակի կոմիտեի վարքագծի ու գործունեության մասին ոչինչ հայտնի չէ մեզ։ Սակայն Թուրք կառավարությունը Բիթլիսը գրաված քրդերի մոտ որպես պաշտոնական բանագնաց ուղարկեց դաշնակցության Վանի կազմակերպության Կենտրոնական կոմիտեի նախագահ, դաշնակցության Արևմտյան բյուրոյի անդամ, Թուրքական պառլամենտի պատգամավոր՝ Վռամյանին։ Թուրքի առաջ փակ քաղաքը դաշնակցական բանագնաց ուղարկելու փաստն ինքնին շատ պերճախոս է։ Այդ առաքելությունից հետո թուրքերը Սեբաստիայից մեծ զորք բերին և արյան մեջ խեղդելով քրդական ազատագրական շարժումը, 1914 թ. մայիսին վերագրավեցին Բիթլիսը, որտեղ կախաղան բարձրացրին շարժման ղեկավարներին։ Մայիսից մինչև օգոստոս ամիսը Թուրքերը այդ վիլայեթում կախաղան բարձրացրին 13 քուրդ ցեղապետի, ավերեցին քրդական շատ գյուղեր՝ սրի ու հրի ճարակ դարձնելով քուրդ բնակիչներին։

1914 թ. օգոստոսից հետո վերաբերմունքը քրդերի նկատմամբ փոխվեց։ Նոյեմբերին Թուրքիան կրոնական սրբազան պատերազմ հայտարարելով նեռումն խոստացավ այն բոլոր քուրդ ցեղապետներին ու շեյխերին, որոնք իրենց զորքով կռվի կելնեին անհավատ ռուսների դեմ։ Բիթլիսի վիլայեթի ոչ մի քուրդ ցեղապետ ու շեյխ չարձագանքեց թուրքերի կոչին։ Բացառություն կազմեց միայն Բըշարե Չաթոն (տասնհինգ տարի առաջ հայ հայդուկների ձեռքով սպանված ու գլխատված Բըշարե Խալիլի որդին), որը, սակայն, պայման դրեց՝ թույլ տալ իրեն ռազմաճակատ մեկնելուց առաջ հայերից լուծել իր հոր վրեժը։ Նրա պայմանը սիրով հարգվեց և Բըշարե Չաթոյին հաջողվեց 600 հոգի հավաքել իր շուրջը և ռազմաճակատ գնալիս ճանապարհին կոտորել ու կողոպտել Ախլաթի, Ալջևազի ,Արճեշի հայ գյուղացիներին։

Ինչպես հայտնի է, եղեռնի հրամանը տրվել է 1915 թ. ապրիլի 11/24-ին։ Տարոնի հայության կոտորածն սկսվել է հունիսի 28/հուլիսի 10-ին, այսինքն՝ եղեռնի հրամանից երկու և կես ամիս հետո։ Ինչո՞ւ այսպիսի ուշացումով։

Բանն այն է, որ Բիթլիսի վիլայեթում թուրք բնակչության թիվը չէր անցնում 40 հազարից: Առանց քրդերի ակտիվ մասնակցության հնարավոր չէր կոտորել վիլայեթի 180 հազար հայերին, իսկ քրդերը Բիթլիսի դառն դասից հետո չէին ուզում գործակցել թուրքերի հետ: Թուրքերը հարկադրված եղան հայտնի Գյուլիզարի գործով մոտ քառորդ դար առաջ Տարոնից արտաքսված Մուսա բեկին ետ բերել Տարոն, պատվիրելով քրդական հրոսակախմբեր հավաքագրել՝ հայկական համատարած կոտորածի համար: Մինչև Մուսա բեկը ետ կգար և հրոսակախմբեր կկազմեր, մինչև Տարոն կհասնեին Վանից փախած թուրքերը, անցնում է ավելի քան երկու և կես ամիս: Այդ ընթացքում, ինչպես ականատեսների վկայությամբ և հուշագրություններով ցույց է տալիս Աղան Տարոնեցին, եթե դաշնակցության գործիչ Ռուբենը ցույց տար ժողովրդավար ղեկավարի գործիմացություն, եթե Վահան Փափազյանը դասալքության ճամփան բռնելով չհետևեր Ռուբենին, եթե լսելի դառնար տեղական փորձված հայդուկների, ինչպես օրինակ, Կոտոյի Հաջի Հակոբի ձայնը, ապա Տարոնում կհաջողվեր դիմադրություն կազմակերպել և ժողովուրդը փրկել կոտորածից:

Այդ երկու և կես ամսվա շիկացած մթնոլորտում, փաշա հորջորջված Ռուբենը (Մինաս Տեր-Մինասյան) Մշո դաշտի զինված ուժերի մեծ մասը, հակառակ Կոտոյի Հաջի Հակոբի բողոքին, հավաքում-տանում է Սասուն, հայտարարելով, թե թուրքերը նախ պիտի գրոհեն Սասունի, ապա Մշո դաշտի և Մուշ քաղաքի վրա: Մշո գավառապետ Սերվեթ բեյը՝ քրդական հրոսակախմբերի, Վանից նահանջած թուրքերի, ոստիկանության, սակավաթիվ զորքի և մուհաջիր-չերքեզների գլուխն անցած, հունիսի 28-ին (հուլիսի 10-ին) գրոհում է անպաշտպան մնացած Մշո Դաշտի հայկական գյուղերի վրա և մեկ օրում կոտորում ավելի քան 80 հազար հայ: Ռուբենը զինված ուժերը տարել էր Սասուն, Դաշտի գյուղերում չէր մնացել կռվի փորձ ունեցող ոչ մի ղեկավար, անգամ հայդուկ. չկար հեղինակավոր մեկը, որ կարողանար իր շուրջը հավաքել զենք ունեցողներին և դիմադրություն կազմակերպել: Մեկօրյա դիմադրություն եղավ միայն Ալիջան գյուղում, ուր կոտորածից փրկվեցին տղամարդիկ միայն: Հաջորդ օրը՝ հունիսի 29-ին (հուլիսի 11-ին), Սերվեթ բեյն այդ նույն ուժերով գրոհում է Մուշ քաղաքի հայկական թաղերի վրա. քաղաքի 18 հազար բնակչությունից 6—7 հազարն էին հայ: Քաղաքում էր մնացել Ռուբենի գծի հակառակորդ Կոտոյի Հաջի Հակոբը. նրան հաջողվում է ետ մղել թուրքերի առաջին գրոհը, սակայն անհավասար կռվում զոհվում է, խորհուրդ տալով ապավինել Քան անտառապատ լեռը, որը բոլոր հնարավորությունները ուներ հաջող ինքնապաշտպանության համար: Ինչպես ապացուցում է Աղան Տարոնեցին, դաշնակցության անվանի պարագլուխներին չի հաջողվում ինքնապաշտպանություն կազմակերպել: «Փաշա» Ռուբենն իր հետևորդներով մի ակնթարթ հայտնվում ու նորից անհետանում է, «բժիշկ» ու կոմս» Վ. Փափազյանը չի կարողանում ընդհանուր ղեկավարությունն ապահովել: 20 հազար հոգին Քան լեռան վրա մնում են իրարից բաժանված, առանձին խմբեր: Թուրքերն ամենից առաջ հարձակվում են բողոքականների խմբի վրա, որոնք պարոն Գրիգորի ղեկավարությամբ թույլ դիմադրությունից հետո պարտվում են ու կոտորվում: Վահան Փափազյանը տեսնում է այդ ամենը, սակայն բողոքականներին օգնության հասնելու փորձ չի անում: Թշնամին հաջորդաբար հարձակվում է մեկ աջ, մեկ ձախ խմբերի վրա, ոչ մի խումբ օգնության չի հասնում մյուսին, և այդպես մենակ մնալով բոլորն էլ կոտորվում են, փրկվում են Վ. Փափազյանի շուրջը հավաքված մի քանի տասնյակ մարդ և անտառապատ լեռան բարձունքներն ապաստանած մի քանի տասնյակ երիտասարդ:



Մշո Դաշտում հաջող ինքնապաշտպանություն են կազմակերպում միայն գյուղական հասարակ գրագիր Հասրաթը և անանուն խմբապետ Մարտիրոսը: Վարդենիս, Արտոնք և Խարս գյուղերի բնակիչներին նրանք տանում են Ջխուրի շամբերը և ուղիներն ամուր փակելով, ետ են մղում քրդերի ու թուրքերի գրոհները: Սնունդ որոնելու համար շամբերից դուրս եկած երիտասարդները նկատում են ռուս հետախույզների: Հասրաթն ու Մարտիրոսը Վ. Փափազյանի նման չեն սպասում, որ ռուսական բանակը հասնի իրենց, այլ անմիջապես շամբերից դուրս են բերում գյուղացիներին և գնում դեպի ռուսական զորքի դասավորության շրջանը: Նահանջող ռուս զորքի հետ նրանք Անդրկովկաս են հասցնում մոտ 5—6 հազար հայ:

Սասունի վրա թուրքերը կանոնավոր զորքով ու թնդանոթով գրոհում են հուլիսի 17-ին: Առանձին կետերում հերոսաբար կռվում են Գոմսա Իսոն (Կորյունը), Պոլեյան եղբայրները, առնչեցի Սահակը, որոնք բոլորն էլ զոհվում են: Կորյունի զոհվելուց հետո Ռուբենը նահանջի հրաման է տալիս: Իրադարձություններին ականատես և կռիվների մասնակից Եղիշե քահանա Տեր-Պարսամյանը, նկարագրելով Սասնո անհաջող և շատ կարճատև (ընդամենը եռօրյա) ինքնապաշտպանությունն ու խուճապահար նահանջը, գրում է, որ Ռուբենն ու Սասունցի Մուշեղը գաղտնի խորհրդակցում և ինչ-որ բան են ծրագրում ու

> «...ճանկարծ մեջտեղեն կանճայտանան Ռուբենը, Մուշեղը, Փերարա Մանուկը իր տասն-
> յակով, Իշխանօրա Հաղեները և ուրիշ քանի մը հոգի ու կերթան պանվրտելու քարայրը...
> Եվ այդպես, Ռուբենն եղավ առաջին անգամ լքողը ժողովուրդը ու իր գլուխը միայն
> մտածողը... ճշմարիտ հեղափոխականի մը պես, թողլով ընել ով ինչ որ կամենա»
> (Ա. Տարոնեցի. Տարոնը ինքնապաշտպանության ու ջարդը, էջ 83):

Բիթլիսի վիլայեթում ապրում էին 180 հազար հայ, որոնցից 98 հազարը՝ Մշո Դաշտում: Ռուսական բանակին ավելի մոտ լինելու շնորհիվ կոտորածից զերծ մնացին վիլայեթի հյուսիս-արևելյան գավառների հայերը—միայն Ջխուրի շամբերում ինքնապաշտպանությամբ կոտորածից 6 հազար հոգի, Մոտկանի քուրդ գավառապետ ծերունի փրկվեցին մոտ 5—6 հազար հոգի: Մոտկանի քուրդ գավառապետ ծերունի Սաֆարը Մոտկանը զերծ պահեց կոտորածից. նրա օրինակին հետևեցին Խույթ-Բռնաշենի և Սպարկերտի քուրդ ցեղապետները: Սասունի Շեկո Բըշարե Սաֆարը մի քանի հարյուր սասունցիների: Քաքրդերը պահեցին իրենց ապավինած մի քանի հարյուր սասունցիների: Քարայրներում ու անտառներում թաքնվելով՝ փրկվեցին ընդամենը հազար տղամարդ:

Ամբողջ քառորդ դար Տարոնը՝ Մուշն ու Սասունը դիտվել ու երգվել էին որպես հայ ազատագրական շարժման առաջին հենակետը: Հնչակյաններն այնտեղ էին բարձրացրել հայ ազատագրական շարժման դրոշը. երբ այդ դրոշը վար պիտի ընկներ նրանց հոգնած ու դողդոջ ձեռքերից, դաշնակցականներն այն անմիջապես բարձրացրին և Տարոնը դարձրին հայդուկային կռվի թատերաբեմ, հայդուկային կադրերի անման դպրոց ու փորձադաշտ: Բայց ահա ընդամենը մի քանի օրում կոտորվեցին ավելի քան 150 հազար մշեցի ու սասունցի: Փուլ էր գալիս ու խորտակվում էր այն դղյակը, որ նրանց կարծիքով օդային չէր, այլ հաստատ կառուցվել էր Սասնո անառիկ լեռների կատարին:

Նրա անունով տպագրվել է Հայ հեղափոխականի մը հիշատակները գիրքը յոթ հատորով: Հինգերորդ հատորում Իշխանի բերանով Վ. Փափազյանին ավանսով «խլեստակով» հռչակելով, յոթերորդ հատորում, ուրանալով իր խաղացած բացասական դերը, նա լռում և խոսքը տալիս է Սասունցի Մուշեղին: Այս խմբապետը պնդում է, որ Տարոնի ինքնապաշտպանությունը տևել է յոթ ամիս: Բոլոր հուշագրողները միաբերան ասում են ,որ ամբողջ Տարոնում (բացի Վարդենիսից) ինքնապաշտպանությունը և ոչ մի տեղ մեկ օր անգամ չի տևել, սակայն ըստ Մուշեղի՝ Տարոնի ինքնապաշտպանությունը տևել է յոթ ամիս և Սասունն էլ շարժվել է՝ օգնության հասնելու քաղաքին: Գոհ լինենք, որ չի ասել նաև՝ Դաշտին:

Դժվար չէ նկատել, որ դաշնակցության տակտիկական նահանջներն ու խաղերը կատարվել ու կատարվում են գերազանցապես Սովետական Հայաստանի աննախընթաց, անուրանալի նվաճումների ճնշման տակ: Եվ այդ այն դեպքում, երբ սփյուռքահայությունը մեկընդմիշտ դիմադարձ եղավ վերածնված հայրենիքին: Դաշնակցության քաղաքական գալարումներն արդյունք են այն բանի, որ նա կորցրեց ու շարունակում է կորցնել իր սոցիալական հողը:

Աղան Տարոնեցին բոլոր աղբյուրների մանրազնին ուսումնասիրությամբ ապացուցում է խմբապետ Մուշեղի և նրան կրկնող դաշնակցական այլ գրիչների սուտ հերյուրանքները: Այս տեսակետից հետաքրքրական են գրքի Յոթամսվա առասպելը, «Արշավանք» կրձախողի, Սասունցի Մուշեղ՝ Ռուբեն կղրկե Մուշ քաղաքի «օգնության», Կարո Սասունիի պատումը, Քննություն Կարո Սասունիի պատումին, Կուրտիկի բարձունքներեն կհսկեն եղեր քաղաքին վրա գլուխները:

Հիսնական թվականներին եղեռնին անհաղորդ հայ սերունդներին խաբելու համար ձայնապնակը պետք էր փոխել: Այն փոխում է նաև 1930 թ. Ապրիլյան եղեռնը քննական հայացքով գրքույկի հեղինակ Կարո Սասունին՝ լույս ընծայելով Պատմություն Տարոնի աշխարհի մեծածավալ, սակայն ճամարտակություններով ու հերյուրանքներով լի գիրքը:

Ռուբենին և Փափազյանին արդարացնելու համար նա գրում է.

> «Ճգնաժամի այդ օրերուն Ռուբեն նուաճուած և նլքն անորոշ կովի մը վարիչը չէր կրնար ըլլալ... կրներ այնքան, որքան իր ուժերը կներեին» (Պատմություն Տարոնի աշխարհի, Պեյրութ, 1956, էջ 834):
>
> «Վտանգը բաց աչքով տեսնելեն ետքն ալ, այն օրերուն ազգային կյանքի ղեկավարները կհուսային, կամ կուզեին ինքզինքնին համոզել, թե աչքի ընկած մարդիկ թերևս, կոտորվին, բայց ժողովուրդը կինով ու երեխաներով բնաջնջվելու ըմբռնումը չունեին» (Նույն տեղը, էջ 835):

Վարդենիսի գյուղական հասարակ գրագիրն ու անանուն գործիչը՝ Հասրաթն ու Մարտիրոսը՝ այդ «ըմբռնումն» ունեին, իսկ դաշնակցության զինված ուժերի պետ Ռուբեն փաշան և թուրքական պառլամենտի պատգամավոր Վահան Փափազյանը՝ «չունեին»: Կարո Սասունին, թերևս, մոռացել է 1930 թ. իր գրածը՝

> «Պոլսեն մինչև Վան դաշնակցության ղեկավար ընկերները աներևակայելի կհրաճանգեին և կկրկնեին, թե վտանգի առջև ենք, ամեն աշխատանք ըրեք... որպեսզի հայ ժողովուրդի գլուխեն այս փորձանքն անցնի»:

Մի՞թե թուրքական պառլամենտի պատգամավոր Վ. Փափազյանին և Ռուբենին անհայտ կարող էր լինել Արևմտյան բյուրոյի ղեկավար Հարություն Շահրիկյանի բողոքի բաց նամակը երիտթուրքերի գլխավոր գաղափարախոս



Ջելալ Նուրիին (տպագրված 1912 թ. «Ազատամարտում»), որով նա բողոքում էր օսմանյան միատարրություն ստեղծելու նպատակով Ջելալ Նուրիի պաշտպանած հայկական համատարած կոտորած կազմակերպելու տեսության դեմ:

Այս բանը կարող էին չիմանալ միայն եղեռնին անհաղորդ սերունդները:

Աղան Տարոնեցին, Կ. Սասունու հերյուրանքները հերքելու համար, հավաքում է դաշնակցությունից հեռացած Միսակ Բդեյանի ու նրա հարազատների հուշերը և լույս ընծայում առանձին գրքով—Հարազատ պատմություն Տարոնի, որի առաջաբանում կարդում ենք.

> «Հայ հեղափոխական շարժումներու պատմության մեջ չէ եղած ուրիշ գավառ մը, ուր այդ արկածախնդրական խիստ ձախորդ փորձերը ներկայացված ըլլան այնքան խեղաթյուրված ձևով և այլակերպված տարազով, որքան եղած է Տարոնի և Սասնո հեղափոխական շրջանի պատմությունը» (էջ 1—2):

Պատասխանատուները Տարոնի եղեռնին գրքի հիմնական թերություններից մեկն այն է, որ իր իսկ կազմած առաջին գրքի առաջաբանում նշելով վերոհիշյալ իրողությունը, հեղինակը չի նշում, որ Տարոնի ինքնապաշտպանության անհաջողությունը հետևանք էր հենց այդ «արկածախնդրական ձախորդ փորձերի»: Եվրոպայի ուշադրությունը հայկական հարցի վրա հրավիրելու մարմաջով դաշնակցությունը Սասունը դարձրել էր քավության նոխազ: Գրքի մյուս թերությունն այն է, որ նա չի նշում, թե 1914—1915 թթ. դաշնակցության Տարոնի ղեկավարները շարունակում էին հայ ժողովրդին մենակության դատապարտելու սխալ կուրսը: Բիթլիսի քրդական ապստամբությունն օգտագործելով՝ նրանք պետք է հատուկ ուշադրություն նվիրեին հայ-քրդական բարեկամություն կռելուն:

Հայ ազատագրական շարժման նախակարապետներից Արսեն Թոխմախյանը, որն ամենից լավ էր ճանաչում Արևմտահայաստանը և այնտեղ բնակվող բոլոր ժողովուրդներին, դեռևս 80-ական թվականներին հայ-քրդական հարաբերությունների մասին ասել է. «Շատ անգամ քուրդ ցեղերը քուրդ ցեղերի դեմ արյունահեղ կռիվներ են տալիս իրենց պաշտպանած հայերի համար» (Տանկահայաստանի մասին, էջ 74): Վանի վիլայեթում Մոկսի գավառապետ Մուրթուլա բեկը հայ-քրդական խառն աշխարհազոր կազմած, 1915 թ. ո՛չ միայն կոտորած թույլ չտվեց Մոկսում, այլև ապաստան տվեց Կարկառից, Կարճկանից, Ոզմից և այլ գավառներից Մոկս ապավինած հայ գյուղացիներին: Ավելին, նա համոզելով ետ դարձրեց թուրքերի հրամանով Մոսուլից Շատախի վրա շարժվող Բարզանիին: Շատախի քառասունօրյա հերոսական ինքնապաշտպանության գործում մեծ բաժին ունի նստակյաց դարձած քրդերի Հարևան Սոքյանց գյուղը: Վանի վիլայեթում Աղաբայի դաշտի տեր հայտարանցի քրդերը պահեցին իրենց քիրվա հայերին:

Այս ամենը վկայում են, որ այնտեղ, ուր հայ-քրդական բարեկամությունը կռելու ուղղությամբ ամենափոքր աշխատանք է կատարվել, 1915 թ. քրդերը գործիք չեն դարձել թուրքերի ձեռքին: Այդ ուղղությամբ ոչ մի աշխատանք չէր կատարվել Բիթլիսի վիլայեթում, այլապես Մուսա բեկին, Բըշարե Չաթոյին և այլոց չէր հաջողվի հրոսակախմբեր կազմել այնտեղ, ուր քրդերը մեկ տարի առաջ ազգային-ազատագրական պայքարի դրոշ էին բարձրացրել թուրքերի դեմ և այնքա՞ն տուժել թուրքերի կողմից:

Գրախոսվող գրքի հիմնական թերությունն այն ոչ-պատմագիտական մոտեցումն է, որը հեղինակին թույլ չի տալիս ըմբռնելու, թե ինչու 20-ական թվականներին դաշնակցական հուշագրողները դադարել էին հոխորտալուց և

իրենց հուշերում վերապահումներով մեկ-մեկ խոսում էին նաև իրենց առանձին ընկերների «վրիպումների», երբեմն էլ իրենց կազմակերպության «անվճռականության» մասին, իսկ այսօր, իմպերիալիստական պետությունների հակահետախուզական բաժինների հետնաքակերում, նյութապես ապահովելով իրենց նողկալի գոյությունը, պարծենում են իրենց չակերտավոր հաղթանակներով և տոնում իրենց «աղետաբեր արկածախնդրության»... ամյակները:

Շատ փաստերը ճիշտ արձանագրելով, սակայն, պատճառական կապը լրիվ չըմբռնելու հետևանքով, Տարոնեցին միամտաբար նամակագրություն է սկսում 20-ական թթ. իր հուշերում մի քանի անկեղծ խոստովանություններ արած Վահան Փափազյանի հետ, հուսալով, որ ծերունազարդ նախկին պարագլուխն իր սպասած սպառիչ պատասխանը կտա և ամբողջովին կընդունի հակաժողովրդական, աղետաբեր վարքագիծ վարող իրենց կուսակցության ձախողումը ահեղ ճգնաժամի օրերին:

Տրամաբանությունն ասում է, որ հիսնամյա հասակում այդքան «անկեղծություն» ցուցաբերած Վ. Փափազյանը, 90-ամյա տարիքում պետք է շատ ավելի անկեղծ լիներ: Աղան Տարոնեցին հուսախաբվել է: Վ. Փափազյանը նրան գրած նամակներում չի ընդունում, որ իրենք Քան լեռն ապաստանած ժողովրդին խաբելով, ահ տալով, անգամ կրակելով ցանկացել են հեռացնել իրենցից, որ մենակ մնան ընտրելիները ու կարողանան փրկել միայն իրենց անձը. սակայն իր երրորդ նամակում պարզ ու մեկին ասում է. «Եթե պիտի մեղադրվինք պատմության առջև, «Իմ հուշեր»-ում մեջ՝ ավելի քան մեղադրություն ես ինքս բրած եմ ղեկավարության և իմ մասին» (Պատասխանատուներ Տարոնի եղեռնին, էջ 27):

Նույն հոդվածում արդեն բերված ղեկավարության և իր մասին Վահան Փափազյանի մեղադրության խոսքերը «եթե»-ի տեղ չեն թողնում:

Քաջակորով Տարոնի՝ տկարությամբ սպանդանոց դառնալու մեղքը ծանրանում է միմիայն դաշնակցության վրա: Ինչևէ, Աղան Տարոնեցին մատը դրել է վերքի վրա:

ԹՈՒՐՇՅԱՆ Հ. Գ.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.: Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 15/VIII 1968 թ.:

ՎՖ 05850 Պատվեր 1748 Տիրաժ 11,800 Գինը 25 կոպ.:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան Երևան, Թումանյան փ. № 51:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Մարքսը և արդիականությունը: Մ., Քաղհրատ., 1968, 591 էջ:

Կ. Մարքսի ծննդյան 150-ամյակին նվիրված այս ժողովածուում զետեղված են Կապիտալի 100-ամյակի առթիվ կայացած ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի, հասարակական գիտությունների ակադեմիայի, բարձրագույն կուսակցական դպրոցի և ՍՍՀՄ ԳԱ հումանիտար գիտ. ինստիտուտների միացյալ նստաշրջանի (Մոսկվայում) և Գերմ. սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմի Բեռլինում հրավիրված միջազգային գիտական կոնֆերանսի նյութերը:

ԻԼՅԻՆԱ ԵԼԵՆԱ.—Անխոնջ ուղևորը: Կարլ Մարքսի մանկությունը, պատանեկությունը և երիտասարդական տարիները: Վավերագրական պատմվածք: Մ., 1968, 384 էջ:

ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ.—Լենինը պատմաբան: Եր., «Հայաստան» հրատ., 1968, 136 էջ:

Վ. Ի. Լենինի աշխատությունների ուսումնասիրության հիման վրա հեղինակը բացահայտել է պատմագիտական այն մեթոդը, որ կիրառել է Լենինը հեղափոխության պրակտիկ խնդիրների պատմական վերլուծության, իրադարձությունների գնահատման ժամանակ:

ԻՈՖՖԵ Ա. Ե.—Սովետական Միության արտաքին քաղաքականությունը (1928—1932 թթ.), Մ., «Наука» հրատ., 1968, 487 էջ:

Ներկա մենագրության մեջ հեղինակը շարադրել է խաղաղության և անվտանգության համար ՍՍՀՄ վարած արտաքին քաղաքականությունը առաջին հնգամյակում:

ՍՍՀՄ փիլիսոփայության պատմություն: Հինգ հատորով: Հատոր առաջին: Մ., «Наука» հրատ., 1968, 579 էջ:

Այս հատորն արտացոլում է ՍՍՀՄ ժողովուրդների փիլիսոփայության պատմությունը՝ ավատականության շրջանից սկսած (V դարից) մինչև XVIII դարի երրորդ քառորդը:

ՎՈԼԼԵՆՍԿԻ Մ. Ս.—ԱՄՆ-ի և Գերմանիայի գաղտնի կապերը: Իմպերիալիստական բլոկը ընդդեմ Հոկտեմբերի: 1917—1919: Մ., «Наука» հրատ., 1968, 331 էջ:

ԲՐՈՒՏՅԱՆ Գ. Ա.—Մաթեմատիկական տրամաբանության փիլիսոփայական ներածություն: Եր., ԳԱ հրատ., 1968, 250 էջ:

Այս աշխատության մեջ բազմակողմանի մեկնաբանված են մաթեմատիկական տրամաբանության մի քանի հիմնական, ամենաանհրաժեշտ հասկացողությունները, բացահայտված են մաթեմատիկական տրամաբանության առարկայի բնույթը և նրա տեղը բազմատրամաբանության համակարգում և այլ խնդիրներ:

Լեզուն և հասարակությունը: Մ., «Наука» հրատ., 1968, 255 էջ:

ՍՍՀՄ ԳԱ Լեզվագիտության ինստիտուտի հրատարակած ներկա ժողովածուում շարադրված է ՍՍՀՄ ազգային լեզուների զարգացման ընթացքը:

ԳՈԼԵՆԻՇՉԵՎ-ԿՈՒՏՈՒԶՈՎ Ի. Ն.—Դանթե: Մ,. «Молодая гвардия» հրատ., 1968, 288 էջ:

«Նշանավոր մարդկանց կյանքը» սերիային պատկանող այս գրքում արտացոլված են Դանթեի կյանքն ու գրական գործունեությունը:

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒԼՏՐԱՄԱՆԻՇԱԿԱԳՈՒՅՆ ՃԱՆՃՈՐՍԻՉ

Վերջերս ԳԴՀ-ում ստեղծվել և վաճառվում է ուլտրամանիշակագույն առաջին ճանճորսիչը։ Այն ներուլտրամանիշակագույն ճառագայթներով հրապուրում է ճանճերին։ Այդպիսի ճանճորսիչի մոտով չի կարող թռչել ոչ մի ճանճ. ճանճերի համար այդ ճառագայթներն ավելի հրապուրիչ են, քան ամենահամեղ սնունդը։ Հենց որ նրանք մոտենում են ճառագայթների աղբյուրին, նրանց պարկի մեջ է քաշում օդափոխիչի ստեղծած օդի շիթը։

## ԿՈՒՅՐ ՆԵՏԱՁԻԳՆԵՐԸ

Անգլիայի և Ավստրալիայի կույրերի ինստիտուտները համատեղ մշակել են էլեկտրոնային ապարատուրա, որը հնարավորություն է տալիս կույրերին՝ մասնակցելու նետաձիգների մրցումներին։ Հատուկ սաղավարտի մեջ տեղադրված է էլեկտրոնային ակուստիկական սարքավորում։ Քանի դեռ զենքը նշանակետին չի ուղղված, ականջակալներում տարբեր հաճախականության ազդանշաններ են լսվում։ Միայն ճշգրիտ նշանառության դեպքում են լսվում համապատասխան հնչյունները։

## ԻՆՉԻ՞ ՄԱՍԻՆ ԷՐ ԱՂՄԿՈՒՄ ԵՂԵԳՆԸ

Սովորական գետնաեղեգնը աղտոտված ջուրը նստվածքային և թունավոր նյութերից մաքրելու իր «կարողությամբ» գերազանցում է մի քանի միկրոօրգանիզմների։ Կ. Զայդելը (ԳՖՀ) հայտնագործել է, որ եղեգնը ջրից արտազատում է մեծ քանակությամբ ոչ միայն նիտրիտներ, ֆոսֆատներ և այլ օրգանական նյութեր, այլև առաջացնում է ֆենոլ, որի առկայությամբ եղեգնը ավելի արագ է աճում, քան սովորական ջրում։ Բացի դրանից, եղեգնը աղտոտ ջրի մեջ անջատում է թթվածին, որի հոսանքից է կախված բիոլոգիական մաքրման արդյունավետությունը։

## ԿԱՐԳԱԴՐՈՂ ՌՈԲՈՏՆԵՐ

Մինչ բուդապեշտցի ֆիզիկայի ուսուցիչ Իշտվան Խորաստիին ռադիոազդանշանները կարթնացնեին, 10 րոպե առաջ ավտոմատ կերպով միացվում է սրճամանը, լվացվելու համար սկսում է տաքանալ ջուրը։ Նրա բնակարանում տասնյակ ավտոմատներ ու ռոբոտներ կան, որոնք պատրաստել է ինքը՝ սեփական ձեռքերով։ Դրանցից մեկը որսում է տիրոջ սիրելի մեղեդիները ռադիոյով և գրանցում մագնիտաֆոնի վրա։ Դռներն ու պատուհանները նույնպես բացում են անտեսանելի ճառագայթներով կառավարվող մեխանիզմները։ Դրանք կարող են տիրոջն զգուշացնել հյուրերի գալու մասին, իսկ հարկ եղած դեպքում քաղաքավարի բացատրել, թե երբ տերը տուն կգա։ Ռոբոտ փոշեծծիչն ինքն է վազում հատակով, իսկ նրա եղբայրը հետևում է սենյակների կայուն ջերմության, լուսավորվածության աստիճանին։ Բոլոր ռոբոտները օրվա հրամաններն ստանում են մի պուլտից։

## ՌԱԴԻՈԱԿՏԻՎ ԿՈԲԱԼՏ ԸՆԴԴԵՄ ԿԱՅԾԱԿԻ

Վերջերս նախագծվել է շանթարգել, որը պարունակում է որոշ չափով ռադիոակտիվ կոբալտ։ Կոբալտի գամմաճառագայթման ազդեցության տակ սարքավորման շուրջը օդը իոնացվում է, և էլեկտրական լիցքերը հեշտությամբ հոսում են հողի մեջ։ Շանթարգելը կայծակը «հավաքում է» 200 մետր շառավիղով (Ֆրանսիա)։

## ՄՈԼԻԲԴԵՆԸ ԵՎ ԲԵՐՔԸ

Եգիպտացորենը մոլիբդենով մշակելու անհաջող փորձից հետո բուլղարական գիտնականները այդ միկրոէլեմենտի ազդեցությունը փորձեցին այլ կուլտուրաների վրա։ Արդյունքները գերազանցեցին բոլոր սպասելիքները։ 100 գրամ մոլիբդենը մեկ հեկտարի վրա ապահովում է այնքան բերք, որքան ստացվում է 480 կգ ամիակային սելիտրա օգտագործելով։ Օրինակ, սովորական սեահողում լոբու բերքը ավելացել է 28 տոկոսով։